

*Կարգաւորութիւն Հասարակաց աղօթից երեկոյի ժամուն ։ Որ կատարի ի դէմս Որդւոյն Աստուծոյ. որ էջ ի խաչէն և պատեալ պատանակաւ՝ եդաւ ի գերեզմանի ։*

---

Օրհնեալ Տէր մեր Յիսուս Քրիստոս. ամէն ։

Հայր մեր որ յերկինս ես՚՚ ։

Ես առ Աստուած կարդացի, և նա լուաւ ինձ յերեկոյս՝ ի վաղորդայն՝ և ի հասարակ աւուր ։

Սպասէի Աստուծոյ իմոյ, և ակն ունէի կենարարին. որ փրկէ զծառայս իւր և կեցուցանէ ։

Փառք Հօր և Որդւոյ և Հոգւոյն Սրբոյ ։

Այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից. ամէն ։

Եւ ես խաղաղութեան զտէր աղաչեսցուք. ընկալ կեցո և ողորմեա ։

Օրհնութիւն և փառք Հօր և Որդւոյ և Հոգւոյն սրբոյ. այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից. ամէն ։

Խաղաղութիւն ամենեցուն ։

Սաղմոս Ձե ։

Խոնարհեցո Տէր զունկն քո և լուր ինձ. զի աղքատ և տնանկ եմ ես ։

Պահեա զանձն իմ սուրբ տէր. և փրկեա զծառայս քո Աստուած իմ որ ի քեզ յուսացայ։

Ողորմեա ինձ տէր զի առ քեզ աղաղակեցի զօրհանապազ, ուրախ արա զանձն ծառայի քո, զի առ քեզ տէր համբարձի զանձն իմ։

Զի դու տէր քաղցր և ուղիղ ես բազումողորմ առ ամենեսեան որք կարդան առ քեզ։

Ունկնդիր տէր աղօթից իմոց, և նայեա ի ձայն խնդրուածաց իմոց։

Յաւուր նեղութեան իմոյ կարդացի առ քեզ, և լուար ինձ։

Ոչ ոք է նման քեզ յԱստուածս տէր, և ոչ ոք է որպէս զգործս քո։

Զամենայն ազգս զոր արարեր՝ եկեսցեն և երկիրպագցեն առաջի քո, և փառաւոր արասցեն զանուն քո յաւիտեան։

Մեծ ես դու տէր և առնես սքանչելիս, և դու միայն ես Աստուած։

Առաջնորդեա ինձ ի ճանապարհի քում, և գնացից ի ճշմարտութեան քում, և ուրախ եղիցի սիրտ իմ՝ երկնչել յանուանէ քումմէ։

Խոստովան եղէց առ քեզ տէր Աստուած իմ բոլորով սրտիւ իմով. փառաւոր արարից զանուն քո յաւիտեան։

Մեծ եղև ի վերայ իմ ողորմութիւն քո տէր, և փրկեցեր զանձն իմ ի դժոխոց ներքնոց։

Աստուած՝ անօրէնք յարեան ի վերայ իմ, և ժողովք հզօրաց խնդրեցին զանձն իմ, և ոչ համարեցան զքեզ Աստուած առաջի իւրեանց ։

Այլ դու տէր Աստուած իմ՝ գթած ես և ողորմած, երկայնամիտ բազումողորմ և ճշմարիտ, նայեա առ իս և ողորմեա ինձ.

Տուր զօրութիւն ծառայի քո, կեցո զորդի աղախնոյ քոյ, և արա առ իս նշան բարութեան ։

Տեսցեն ատելիք իմ և ամաչեսցեն, զի դու տէր օգնեցեր ինձ և մխիթարեցեր զիս ։

Փառք Հօր և Որդւոյ և Հոգւոյն Սրբոյ ։

Այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից. ամէն ։

## ՄԱՂԹԱՆՔ

Փառք քեզ Աստուած՝ փառք քեզ. յաղագս ամենայնի տէր փառք քեզ ։

*Եւ ևս խաղաղութեան զՏէր աղաչեսցուք, ընկալ կեցո և ողորմեա ։*

Օրհնութիւն և փառք Հօր և Որդւոյ և Հոգւոյն Սրբոյ. այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից. ամէն ։

*Խաղաղութիւն ամենեցուն ։*

*Սաղմոս ՃԼԹ ։*

Ապրեցո զիս տէր ի մարդոյ չարէ, յառնէ անիրաւէ փրկեա զիս ։

Խորհեցան զանօրէնութիւն ի սիրտս իւրեանց, զօր

ամենայն պատրաստեցան ի պատերազմ։

Սրեցին զլեզուս իւրեանց որպէս զօձի, և թոյնք իժից ի ներքոյ շրթանց նոցա։

Պահեա զիս Տէր ի ձեռաց մեղաւորի, և ի մարդոյ չարէ փրկեա զիս։

Խորհեցան խափանել զգնացս իմ, թագուցին ամբարտաւանք որոգայթ ինձ։

Լարս ձգեցին որոգայթ ոտից իմոց, շուրջ զշաւղօք իմովք եդին ինձ գայթակղութիւն։

Ասացի Տէր Աստուած իմ ես դու, ունկն դիր Տէր ձայնի աղօթից իմոց։

Տէր Տէր զօրութիւն փրկութեան իմոյ, հովանի զգլխոյ իմոյ յաւուր պատերազմի։

Մի՛ մատներ զիս Տէր ի ցանկութիւն մեղաւորաց, ոյք խորհեցան վասն իմ՝ մի՛ ընդ վայր հարկաներ զիս։

Զի մի՛ երբէք բարձրասցին, և խորհուրդք նոցա մի՛ կատարեսցին. վախճան կատարածի նոցա վաստակ շրթանց իւրեանց ծածկեսցէ զնոսա։

Անկցեն ի վերայ նոցա զկայծակունս հրոյ, և կործանեսցես զնոսա, ի տառապանաց մի՛ կարասցեն կեալ։

Մարդոյ լեզուանւոյ մի՛ յաջողեսցի ի վերայ երկրի. զայր մեղաւոր չարիք իւր որսասցեն ի կորուստ։

Ծանեայ զի առնես Տէր դատաստան աղքատի, և իրաւունս տնանկի։

Արդարք գոհասցին զանուանէ քումմէ, և բնակեսցին ուղիղք առաջի երեսաց քոց։

Տէր կարդացի առ քեզ և լուր ինձ, նայեաց ի ձայն աղօթից իմոց ի կարդալ իմում առ քեզ։

Ուղիղ եղիցին աղօթք իմ, որպէս խունկ առաջի քո Տէր. համբարձումն ձեռաց իմոց, պատարագ երեկոյի։

Դիր Տէր պահապան բերանոյ իմոյ. և դուռն ամուր շրթանց իմոց, զի մի խոտորեսցի սիրտ իմ բանիւ չարութեան։

Ի պատճառել պատճառս մեղաց ընդ մարդս՝ որք գործեն զանօրէնութիւն. և ոչ եղէց կցորդ ընտրելոց նոցա։

Խրատեսցէ զիս արդարն ողորմութեամբ և յանդիմանեսցէ. իւղ մեղաւորի մի օծցէ զգլուխ իմ, այլ աղօթք իմ ի կամս նոցա։

Արգելան մերձ առ վիմին դատաւորք նոցա. լուիցեն բանից իմոց և քաղցրասցին։

Որպէս թանձրութիւն հողոյ՝ զի պատառեալ է ի վերայ երկրի. ցրուեսցին ոսկերք նոցա մերձ ի դժոխս։

Առ քեզ Տէր Տէր են աչք իմ, ի քեզ յուսացայ՝ մի հաներ զհոգի յինէն։

Պահեա զիս յորոգայթէ որ թագուցաւ ինձ, ի գայթակղութենէ գործողին զանօրէնութիւն։

Անկցին ի ցանցս նոցա մեղաւորք, միայն եմ ես մինչև անցից։

Ձայնիւ իմով ես առ տէր կարդացի, ձայնիւ իմով զտէր աղաչեցի:

Եհեղեցից առաջի տեառն զաղօթս իմ, և զնեղութիւնս իմ առաջի նորա պատմեցից:

Ի նուաղել յինէն հոգւոյ իմոյ, դու տէր ծանեար զշաւիղս իմ, ի ճանապարհ յոր և գնայի, թագուցան ինձ որոգայթ:

Հայէի յաջմէ և տեսանէի, և ոչ ոք ճանաչէր զիս. կորեաւ յինէն փախուստ իմ. և ոչ գտաւ խնդրող անձին իմոյ:

Աղաղակեցի առ քեզ տէր և ասացի, դու ես յոյս և բաժին իմ յերկրին կենդանեաց:

Նայեա տէր յաղօթս իմ զի ես խոնարհ եղէ յոյժ. ապրեցո զիս ի հալածչաց իմոց, զի հզօրք եղեն քան զիս:

Տէր հան ի բանտէ զանձն իմ, գոհանամ զանուանէ քումմէ:

Եւ քեզ սպասեն արդարք՝ մինչև հատուսցես:

Փառք Հօր և Որդւոյ": Այժմ և միշտ և յաւի":

ԵՐԳ

Ա՜լէ՜լո՜ւիա՜. Ալէ՜լո՜ւիա՜:

Լոյս զուարթ սուրբ փառաց անմահի, Հօր երկնաւորի սրբոյ երանաւորի Յիսուս Քրիստոս:

Եկեալքս ի մտանել արեգականն, տեսաք

ը զլոյս երեկոյին։ Օրհնեմք ըզՀայր և զՈրդի և զՍուրբ Հոգին Աստուծոյ։ Եւ ամենեքեան ասեմք ամէն։ Արժանաւորեա զմեզ յամենայն ժամ, օրհնել ձայնիւ երգով զանուն փառաց ամենասուրբ Երրորդութեանդ։ Որ տայ զկենդանութիւն վասն որոյ և աշխարհս զքեզ փառաւորէ։

## ՔԱՐՈԶ

Հասեալքս ի ժամ երեկոյիս ամենեքեան համբառնալով զձեռս մեր փառաւորեմք զքեզ տէր Աստուած մեր. որ չնորհեցեր մեզ զտիւս խաղաղութեամբ անցուցանել և հասանել ի ժամ երեկոյիս։ Արժանաւորեա զմեզ տէր՝ սուրբ սրտիւ, հրեշտակային երգով՝ զոհաբանութիւն մատուցանել տեառն Աստուծոյ ամենակալին. կեցո և ողորմեա։

Ողորմեաց մեզ տէր Աստուած մեր ըստ մեծի ողորմութեան քում. ասասցուք ամենեքեան միաբանութեամբ։

Տէր ողորմեա. Տէր ողորմեա. Տէր ողորմեա։

## ՄԱՂԹԱՆՔ

Հասեալքս ի ժամ երեկոյիս ամենեքեան՝ անդադար փառաւորեմք զՀայր և զՈրդի և զՍուրբ Հոգին, այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից. ամէն։

Մեսեդիք

Օրհնեալ որ գաս յանուն տեառն, օրհնեալ որ գալոց ես :

Տէր Աստուած մեր երեւեցաւ մեզ . արարէք տօնս ուրախութեան կանխաւ, մինչև յանկիւնս սեղանոյ :

Ուղիղ եղիցին աղօթք իմ :
Որպէս խունկ առաջի քո տէր :
Համբարձումն ձեռաց իմոց :
Պատարագ երեկոյի :

ՔԱՐՈԶ

Ասասցուք ամենեքեան միաբանութեամբ . տէր ողորմեա :

Տէ՛ր ողո՛րմեա՛ :

Վասն խաղաղութեան ամենայն աշխարհի՝ և հաստատութեան սրբոյ եկեղեցւոյ . զտէր աղաչեսցուք" :

Վասն ամենայն սուրբ և ուղղափառ եպիսկոպոսաց . զտէր աղաչես" :

Վասն Հայրապետին մերոյ տեառն (այս անուն) կենաց՝ և փրկութեան հոգւոյ նորին . զտէր աղա" :

Վասն վարդապետաց՝ քահանայից՝ սարկաւագաց՝ դպրաց, և ամենայն ուխտի մանկանց եկեղեցւոյ . զտէր աղա" :

Վասն բարեպաշտ թագաւորաց և Աստուածասէր

իշխանաց՝ զօրավարաց և զօրաց նոցին . զտէր աղա”։

Վասն զի տէրն ամենակալ հնազանդեցուսցէ առաջի նոցա զամենայն պատերազմունս թշնամեաց . զտէր աղա”։

Յաղագս Հարց և եղբարցն մերոց՝ որք ի գերութեան են և ի չար ծառայութեան . զտէր աղա”։

Յաղագս ճանապարհորդաց և նաւորդաց՝ խաղաղութեամբ հասանել ի նաւահանգիստն բարութեան . զտէր աղա”։

Յաղագս հիւանդաց և ամենայն վշտացելոց՝ փութապէս առողջութեան . զտէր աղա”։

Յաղագս բարեխառնութեան օդոց՝ անձրևաց քաղցրութեան, և պտղոց առատութեան . զտէր աղա”։

Յաղագս ուխտաւորաց և պտղաբերից ի սուրբ եկեղեցի Աստուծոյ . զտէր աղա”։

Եւ յաղագս այնոցիկ, որք մատնեալք են ի ձեռս անօրինաց վասն անուանն Քրիստոսի . զտէր աղա”։

Ազատեա՛ տէ՛ր և ողորմեա՛։

Յաղագս հոգւոցն հանգուցելոց, որք ճշմարիտ և ուղիղ հաւատով ի Քրիստոս ննջեցին . զտէր աղա”։

Յիշեա՛ տէ՛ր և ողորմեա՛։

Յաղագս փրկելոյ զմեզ տեառն Աստուծոյ՝ յերևելի՝ և յաներևոյթ՝ թշնամւոյն . զտէր աղա”։

Տէ՛ր ողո՛րմեա՛։

## ՄԱՂԹԱՆՔ

Բարեխօս ունիմք սուրբ զՄարիամ զԱստուածածինն զփառաւորեալ և օրհնեալ. միշտ սուրբ կոյսն. սուրբ զՅովհաննէս Մկրտիչն. սուրբ զՍտեփաննոս նախավկայն. սուրբ զԱռաքեալսն և զՄարգարէսն. զարի և զյաղթող սուրբ զվկայսն ։ Եւ զմեծ խոստովանողն Քրիստոսի զհայրապետն մեր զսուրբն Գրիգորիոս՝ Լուսաւորիչն Հայաստանեայց աշխարհի ։

Յիշեսջիք և զամենայն սուրբս, և նոքօք զտէր աղաչեսցուք ։

Յիշեա՛ տէ՛ր և ո՛ղորմեա՛ ։

Զերեկս մերձեալ՝ և զառաջիկայ գիշերս խաղաղութեամբ անցուցանել հաւատով. ի տեառնէ խնդրեսցուք

Շնո՛րհեա՛ տէ՛ր ։

Զհրեշտակ խաղաղութեան պահապան ան ” ։
Զքաւութիւն և զթողութիւն յանցանաց ” ։
Զսրբոյ խաչին մեծ և կարող զօրութիւնն ” ։
Եւ ևս միաբան ” ։ Զանձինս ” ։ Ողորմեաց ” ։

## ԱՂՕԹՔ

Լուր ձայնից մերոց տէր Աստուած մեր. ընկալ զաղաչանս մեր, զհամբարձումն ձեռաց մերոց՝ և ըզբանս աղօթից, սրբելով զերեկոյի պատարագս մեր ի հոտ անուշից՝ ի հաճոյս քեզ պատրաստել ։ Յաւել

ի մեզ տէր ամենակալ՝ զհաւատ, զյոյս, զսէր, և զամենայն գործս առաքինութեան. որպէս զի ըստ կամաց քոց բարեսիրաց՝ միշտ կրօնաւորեալք բարեպաշտութեամբ ի տուէ և ի գիշերի. և արժանաւորք եղիցուք յաղագս անձանց մերոց փրկութեան, և վասն հոգևոր կենացդ աղաչել զքեզ տէր. և գտանել ի քէն զշնորհս և զողորմութիւն. և գոհանալով փառաւորեսցուք զՀայր և զՈրդի և զՍուրբ Հոգիդ. այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից. ամէն:

Խաղաղութիւն ամենեցուն
Աստուծոյ երկրպագեսցուք

Քեզ երկիրպագանելով տէր Աստուած մեր՝ գոհանամք զքէն յաղագս խաղաղութեամբ անցուցանելոյ ի մէնջ զերկարութիւն տունջեանս: Տուր մեզ տէր աղաչեմք զքեզ՝ զերեկս և զառաջակայ գիշերս առանց մեղաց, և առանց գայթակղութեան անցուցանել. հաստատուն կալ և մնալ ի հաւատ՝ ի յոյս՝ ի սէր՝ և ի պատուիրանապահութեան քոյ: Խնդրելով զխաղաղութիւն ամենայն աշխարհի, և եկեղեցւոյ քում սրբոյ զհաստատութիւն, և անձանց մերոց ըզփրկութիւն: Որպէս զի՝ ընդունելով ի քէն զհայցուածս մեր՝ և զմեծ վայելչական փառաբանութիւն միշտ ի բարձունս առաքեսցուք ամենազօր տէրութեանդ Քրիստոս Աստուած մեր. այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից. ամէն:

Եւ ասա ասէ՝ Սուրբ Աստուած։

Սուրբ Աստուած. սուրբ և հզօր. սուրբ և անմահ. որ եկիր և գալոց ես. ողորմեա մեզ։

Երիցս կրկնեա։ Եւ ընդ նմին զՓառաւորեալն՝ գտցես ի Երես. 65։

## ՄԱՂԹԱՆՔ

Փրկեա՛ զմեզ ի փորձութենէ և յամենայն վտանգից մերոց։

## ՔԱՐՈԶ

Եւ ևս խաղաղութեան զտէր աղաչեսցուք։

Վասն ընկալ լինելոյ առաջի Աստուծոյ ձայնի աղաչանաց մերոց՝ բարեխօսութեամբ սուրբ Աստուածածնին։ Եւ իջանելոյ ի վերայ մեր ողորմութեան և գթութեան առաջի Աստուծոյ։ Ամենակալ տէր Աստուած մեր. կեցո և ողորմեա։

Օրհնութիւն և փառք Հօր և Որդւոյ և Հոգւոյն Սրբոյ. այժմ և միշտ և յաւիտեանս յաւի.” ։

Խաղաղութիւն ամենեցուն։

Համբարձի զաչս իմ ի լերինս, ուստի եկեսցէ ինձ օգնութիւն։

Օգնութիւն ինձ ի տեառնէ եկեսցէ, որ արար զերկինս և զերկիր։

Մի՛ տար ի սասանութիւն զոտն քո. և մի՛ ննջես-

ցէ պահապան քո ։

Տէր պահեսցէ զքեզ, և տէր ընկալցի աջոյ ձեռամբըն իւրով ։

Արեգակն ի տուէ քեզ մի՛ մեղիցէ, և մի՛ լուսին ի գիշերի ։

Տէր պահեսցէ զքեզ յամենայն չարէ. պահեսցէ տէր զանձն քո ։

Տէր պահեսցէ զմուտ և զել քո՝ յայսմհետէ մինչև յաւիտեան ։

Փառք Հօր և Որդւոյ" ։ Այժմ և միշտ և յաւի" ։

*Եւ զգեցցին միաբան Քահանայքն՝ և ելանեն յառաջեան Խաչիւ և Աւետարանաւ, խնկօք և մոմեղինօք և ամենայն զարդուք ։ Եւ ասեն Համբարձի, յորոյ ի սկսանելն՝ բաշխեն զվարագոյրն, և բանան զխորանն ։*

*Համբարձի ԱՁ ։*

Որ վերօրհնիս յաթոռս քերովբէից, ի վերայ նըստիլ յաւանակի հանեցար. բարեբանեալ որ եկիր ըդ ի կեցուցանել ։ Ուստի և մեք զյաղթական օրհնութեանցն ըզձայն մատուցանեմք քեզ Թագաւոր փառաց ընդ տղայոց օրհնաբանելով. բար" ։ Ովսաննայ ի բարձունս ալէլուիա. բարեբանեալ եկեալ անուամբ տեառն ալէլուիա. և օրհնութիւն որ գալոցդ ես անուամբ տեառն ալէլուիա ։

Այսօ՛ր զանըսկի՛զբըն բա՜նն որ յաւէ՛տ. փառաց ընդ Հօր՝ յեր՛կրի երե՛ւեալ տեսաք. քրո՛վբէակա՛ն ձայնիւն օ՛րհնե՜սցուք. օրհնեա՛լ եկեալ ա՛նուամբ տեա՜ռն։ Փառք Հօր եւ"։ յսօր յաւանա՛կ քերո՛վբէ՛, և տղա՛յքն Եբրա՛յեցւոց բա՛րեբանեն. օրհնութի՛ւն որդւո՛յ Դաւթի օրհ"։ Այժմ եւ միշտ"։ Այսօր զուա՛րճացան տիե՛զերըք գալստեա՛մբ Աստուածո՛րդւոյն յԵ՛րուսաղէմ. և գոչէի՛ն հընչմա՛մբ երգով. օրհ"։

Զինք ժողով. Խնդրեսցուք. Կեցո Տէր՝ չոյնիս.

ԱՂՕԹՔ

Թագաւոր խաղաղութեան ձգնական և փրկիչ անձանց մերոց Քրիստոս Աստուած մեր. պարսպեալ պահեա զժողովուրդս քո ընդ հովանեաւ սուրբ և պատուական խաչի քոյ ի խաղաղութեան։ Փրկեա յերեւելի և յաներեւոյթ թշնամոյն. արժանաւորեա գոհութեամբ փառաւորել զքեզ ընդ Հօր և ընդ Սրբոյ Հոգւոյդ. այժմ և միշտ և յաւի"։

Եւ արձակին։

---

Ցես այսօրէկ. Գիշերայէն ժամերգութիւնն ցվերջ կանոնաչլիցն, տես է սկիզբն գրոցս. և այս զաւուր պատշաճին կատարես ըստ հետեւեալ կարգացն։



Կանոն զատկականն Քրիստոսի Աստուծոյ մերոյ յարութեան-կան յԵրուսաղէմ։

# ԾԱՂԿԱԶԱՐԴ
## ԿԻՒՐԱԿԷ



Ի գիշերին հոլովմն է, եւ զերեսն շարականին ի վերայ Բաղմոյին։

## ՀԱՆԳՍՏԵԱՆ ՇԱՐԱԿԱՆ

ԱԿ

Ձեռքը քո արարին և ստեղծին զիս ի հողոյ. ի յօրհնել զքեզ Աստուած յաւիտեան։ Իսկ պատրանօք բանսարկուին խափանեցայ յանմահ լուսոյն, և դարձայ անդրէն ի հող յորմէ ստեղծայ։ Մխիթարիչ Սուրբ Հոգի լուսաւորեա զմեր ննջեցեալս, և հանգո զհոգիս նոցա ընդ սուրբս քո։

Հայր անոխակալ և բարերար. մաղթելով հայցեմք ի քէն վասըն մեր ննջեցելոցն արժանաւորել հանգստեան օթեւանին սրբոցն"։ Ան-

Սաղմոս ասացէք տեառն սուրբք նորա, և խոստովան եղերուք յիշատակի սրբութեան նորա։

Սրտմտութիւն է ի բարկութեան նորա, և կեանք են ի կամա՛ց նորա՛։

Ընդ երեկոյս հանգիցեն լալիք, առաւօտու եղիցի ուրախութիւն։

Ես ասացի ի բարեկենդանութեան իմում, թէ ոչ սասանեցայց յա՛ւիտեա՛ն։

Տէր ի կամս քո ետուր գեղոյ իմոյ զօրութիւն, դարձուցեր զերեսս քո յինէն՝ և ես եղէ խռովեալ։

Առ քեզ տէր կարդացի, և առ Աստուած իմ աղաղակեցի. զի՞նչ օգուտ է քեզ յարենէ իմմէ, թէ իջանեմ ես յապակա՛նութի՛ւն։

Մի թէ հո՞ղ խոստովան առնիցի առ քեզ. կամ պատմեսցէ զճշմարտութիւնս քո։

Լուաւ ինձ տէր, և ողորմեցաւ. և տէր եղեւ ինձ օ՛գնակա՛ն։

Դարձոյց զսուգ իմ յուրախութիւն, էզերծ յինէն ըզքուրձ, և ինձ զգեցոյց զուրախութիւն.

Որպէս սաղմոս ասասցեն քեզ փառք իմ. և այլ մի՛ ևս զղջացայց, տէր Աստուած իմ յաւիտեան խոստովան ե՛ղէց քե՛զ։

Ալէլուիա Օ՛րթէ

Խաղաղութիւն ամենեցուն

Եւ ընդ հոգւոյդ քում. Երկիւղածութեամբ լուարուք։

Սրբոյ Աւետարանիս Յիսուսի Քրիստոսի որ ըստ Ղուկասու

գլ. 21 համ 5.

Փառք քեզ Տէր Աստուած մեր. Պաշտօնեայն. ասէ Աստուած։

Առ Տէրն մեր Յիսուս Քրիստոս։

Եւ յասել ոմանց զտաճարէն, թէ գեղեցիկ վիմօք և աշտարակօք զարդարեալ է. ասէ. Զայդ ամենայն զոր տեսանէք, եկեսցեն աւուրք յորս ոչ թողցի այդր քար ի քարի վերայ, որ ոչ քակտեսցի։ Հարցին զնա և ասեն. վարդապետ՝ երբ լինիցի այդ, և զի՞նչ նշան իցէ՝ յորժամ այդ լինելոց իցէ։ Եւ նա ասէ, զգո՛յշ կացէք, մի՛ խաբիցիք. զի բազումք գայցեն յանուն իմ և ասիցեն՝ թէ ես եմ. և մերձեցաւ ժամանակ, մի՛ երթայցէք զկնի նոցա։ Եւ յորժամ լսիցէք պատերազմունս և խռովութիւնս՝ մի՛ զարհուրիցիք. զի պարտ է նախ այնմ լինել. այլ ոչ առժամայն կատարած։ Յայնժամ ասէ ցնոսա. յարիցէ ազգ յազգի վերայ, և թագաւորութիւն ի թագաւորութեան վերայ։ Եւ շարժմունք մեծամեծք. և ի տեղիս տեղիս սովք և սրածութիւնք, եղիցին արհաւիրք և նշանք մեծամեծք յերկնից։ Բայց յառաջ քան զայս ամենայն, մխեսցեն զձեռս իւրեանց ի ձեզ՝ և հալածեսցեն. մատնեսցեն ի ժողովուրդս և ի բանտս, և տանիցին առաջի դատաւորաց և թագաւորաց վասն անուան իմոյ. և լինիցի ձեզ այն ի վկայութիւն։ Արդ՝ դիք ի սիրտս ձեր՝ մի՛ յառաջագոյն կրթել տա-

լոյ պատասխանի ։ Զի ես տաց ձեզ բերան և իմաստութիւն, որում ոչ կարիցեն կալ հակառակ՝ կամ տալ պատասխանի ամենայն հակառակորդքն ձեր ։ Մատնեսջիք և ի ծնողաց և յեղբարց և յազգականաց և ի բարեկամաց, և սպանանիցեն ի ձէնջ. և եղիջիք ատեցեալք յամենեցունց վասն անուան իմոյ. և մազ մի ի գլխոյ ձերմէ ոչ կորիցէ. և համբերութեամբ ձերով ստասջիք զոգիս ձեր ։ Այլ յորժամ տեսանիցէք շուրջ պատեալ զօրօք զԵրուսաղէմ, յայնժամ գիտասջիք թէ մերձ է աւեր նորա ։ Յայնժամ որ ի Հրէաստանի իցեն՝ փախիցեն ի լերինս, և որ ի միջի նորա իցեն՝ խուսեսցեն, և որ ի գաւառսն իցեն՝ մի՛ մտցեն ի նա. զի աւուրք վրէժխնդրութեան են այնոքիկ՝ առ ի կատարելոյ ամենայն գրելոց ։ Բայց վա՛յ իցէ յղեաց և ստնդուաց յաւուրսն յայնոսիկ. զի եղիցի տագնապ մեծ ի վերայ երկրի, և բարկութիւն ժողովրդեանն այնմիկ ։ Եւ անկցին ի սուր սուսերի, և գերեսցին յամենայն հեթանոսս. և Երուսաղէմ եղիցի կոխան յազգաց՝ մինչև կատարեսցին ժամանակք հեթանոսաց, Եւ եղիցին նշանք յարեգական և ի լուսին և յաստեղս. յերկրի տագնապ հեթանոսաց՝ յահեղ բարբառոյ իբրև ծովու և խռովութեան, յելանելոյ ոգւոց մարդկան յերկիւղէ և ի կարծեաց եկելոց ի վերայ տիեզերաց. զի զօրութիւնք երկնից շարժեսցին ։ Եւ յայնժամ տեսցեն զորդի մարդոյ եկեալ՝ ամպովք զօրութեամբ և փառօք բազմօք ։ Եւ յորժամ սկսանիցի

այս լինել , ամբարձջիք և բարձրացուսջիք զգլուխս ձեր․ զի մերձ է փրկութիւն ձեր ։ Եւ ասաց առակ մի նոցա . տեսէ՛ք զթզենին և զամենայն ծառս . յորժամ ցուցանիցեն զպտուղս իւրեանց , տեսանէք՝ և ի նոցանէ ճանաչէք եթէ մերձ է ամառն ։ Նոյնպէս և դուք՝ յորժամ տեսանիցէք զայս ամենայն եղեալ՝ գիտասջիք թէ մերձ է արքայութիւնն Աստուծոյ ։ Ամէն ասեմ ձեզ․ թէ ո՛չ անցցէ ազգս այս , մինչև այս ամենայն լինիցի ։ Երկինք և երկիր անցցեն , և բանք իմ ո՛չ անցանիցեն ։ Զգո՛յշ լերուք անձանց , գուցէ ծանրանայցեն սիրտք ձեր շուայտութեամբ և արբեցութեամբ և հոգովք աշխարհականօք , և յանկարծակի հասանիցէ ի վերայ ձեր օրն այն․ զի իբրև զորոգայթ հասանիցէ ի վերայ ամենեցուն , որ բնակեալ են ընդ ամենայն երեսս երկրի ։ Արթո՛ւն կացէք այսուհետև , յամենայն ժամ աղօ՛թս արարէք․ զի արժանի լինիջիք զերծանել յայնմ յամենայնէ որ լինելոց է , և կալ առաջի Որդւոյ մարդոյ ։ Եւ ի տուէ ի տաճարին ուսուցանէր , և զգիշերս ելեալ ագանէր ի լերինն՝ որ կոչէր ձիթենեաց ։ Եւ ամենայն ժողովուրդն կանխէր ընդ առաւօտս առ նա ի տաճարն լսել ի նմանէ ։

Երգ Տեառն Ներսէսի ասացեալ վասն առ ի Քրիստոս
ննջեցելոց

ԱԿ․ ԴԿ

Ծա՛նապա՛րհ մոլո՛րե՛լոց և ճա՛ռա՛գայթ խաւա-

րեկո՛ց . հրաւիրեցեր զո՛րդի՛ս լուսո՛յ ի յերկնային հարսա՛նիս քո՛ . ընդ զուարճալի՛ց անդ ժո՛ղո՛վո՛ց . արժանացո՛ ըզ սա դասո՛ւց . լի՛ լապտերօք մոյծ յա՛ռագա՛ստ ընդ ի՛մաստուն սուրբ կո՛ւսանացն ։

Մե՛րով բնութեա՛մբ զոր ը՛զգե՛ցա՛ր ի փայտ խաչին բե՛ւեռեցար . լուծանելով զմեզ ի՛ մեղաց ի նախահօրըն կապանա՛ց . լո՛յծ և ըզսա ի յանցա՛նաց վասըն քո՛ սուրբ չարչարանա՛ց . լի՛ լապ ” ։

Ցե՛°տ կամաւո՛ր մահու խա՛չի ե՛դար ի նո՛ր գերեզմա՛նի . երեքօրեայ թաղմա՛մբ յերկրի նոր ը՛ստե՛ղծեր զմե՛զ կենդանի . զի՛ջեալս ընդ քե՛զ ի հող մա՛հո՛ւ վերա՛կո՛չեա ձայնիւ փողո՛յ . լի՛ լապ ” ։

Նը°ստեալ կանա՛նցն իւղա՛բե՛րից և ողբա՛յի՛ն արտասուալից . իբր ըզմեռեալ անյո՛ւսալից ը՛զ կենդանիդ յաւի՛տենից . վա՛սը՛ն նոցի՛ն սուրբ արտա՛սուա՛ց մաքրեա՛ ըզսա՛ ի՛ յանցանա՛ց . լի՛ լապ ” ։

Շա°րժեալ հիմա՛նցըն դը՛ժո՛խո՛ց ի տեսա՛նե՛լ ըզքեզ նեղքնոց . հաներ զհոգիսն ո՛ր ի բանտին կա՛պեա՛լ զիշխանըն մահածին . ը՛նդ հանգուցեալ հոգիս սը՛րբո՛ց հանգո զհո՛գիս նըննջեցելո՛յս . լի՛ լապ ” ։

Ո°ւրախութեա՛մբ զօրք ե՛րկնա՛յին յե՛րկնի՛ց յերկի՛ր իջանէ՛ին . յորժամ յարեա՛ր ի մեռելոց լո՛յս ծա-

գե՛ցար արարածո՛ց · սո՛ւրբ յարութեամբ քո կենա-րա՛ր յարոյ ը՛զսա՛ ի կեանս անմահ · մի լապտերօք մոյծ յա՛ռագա՛ստ ընդ ի՛մաստուն սուրբ կո՛ւսանացն ։

Զը՛հանդուրժեա՛լ պահա՛պա՛նացն ի յե՛րկիւղէ՛ երկ-նաւորա՛ցն · որք առեալս տա՛յի՛ն կանանց թէ՝ մա՛հ լուծաւ մա՛հկանացուաց . սա՛ որ մահու քո տընկա՛-կից միցի կե՛նա՛ցդ հաղորդակի՛ց · մի լապ” ։

Գա՛րակցեա՛լ անմա՛րմնակա՛նքն առ կենսա՛տո՛ւ սուրբ գերեզմանն . տան զաւետիս ա՛զգի՛ մարդկան վա՛սը՛ն կենա՛ցն յա՛ւէժական · դա՛սաւորեա պարո՛ւց նո՛ցին ըզնընջե՛ցեա՛լս յօրքն վերջին · մի լապ” ։

Զա՛հաւորեա՛լ նըշան խա՛չի՛ն յարեւե՛լի՛ց փայլեալ ծագին , հաւատացեալքն ի քեզ բերկրին եւ ո՛ւրա՛-ցողքըն կոծեացին · զե՛րկըրպագօ՛ւս սըրբոյ խաչի՛ն պայ-ծառացո լո՛ւսով նորին · մի լապ” ։

ԵՐԳ

Թագաւո՛ր փառա՛ց Քրի՛ստոս · որ ժամանե՛-նեա՛լ գա՛ս ի՛ յերկնի՛ց · ի վե՛րա՛յ թեո՛ց հող-մո՛ց քո՛ հա՛յրե՛նի՛ կե՛րպա՛րանօ՛ք . եւ ա՛ռնե՛ս հրաւի՛րձութեամբ ըզքըննո՛ւթի՛ւն ո՛րդւո՛ց մարդկա՛ն · ո՛ղորմա՛ծ տէ՛ր ո՛ղորմեա հոգւոցը՛ն մե՛ր նը՛նջե՛ցե՛լոց ։

## ՄԱՂԹԱՆՔ

*Հոգւոյն հանգուցելոց. Եւ ևս խաղաղ. Քրիստոս Որդի: (Տես ի Թիւն. 36 :)*

---

**Օրհնեալ Տէր մեր Յիսուս Քրիստոս ամէն: Հայր մեր որ յերկինս ես":**

---

## ՄԱՂԹԱՆՔ

**Տէր Յիսուս Քրիստոս. Հրաշափառ Գալստեանդ չնորհիւ":**

*Հետևակ Շարական. ԴՁ:*

**Թագաւոր գոլով քո յաշխարհ մըտեր ի քաղաքն Երուսաղէմ. նըստեալ ի վերայ հողեղէն նոր յաւանակի, կոչել զհեթանոսս յերկըրպագութիւն: Ծերքն ոստովք ձիթենեօք, և տղայքն ոստովք արմաւենեօք. և երամ երամ դասուքն աղաղակէին. ովսաննա օրհնեալ եկեալ ի յանուն տեառն: Ցընծացաւ սուրբ Սիոն. բերկրեցան սուրբ եկեղեցիք. և խընդութեամբ բազմաւ ելին ընդ առաջ, օրհնէին զգալուստ քո փըրկիչ յաշխարհ: Յորժամ եկն Յիսուս յԵրուսաղէմ ի քաղաքն, ընդ առաջ ելին ծերքն ոստովք ձիթենեօք, և զԱստուածորդին**

փառաւո՛րէի՜ն ։ Ի լե՛ռնէն ձի՞թենեաց տա՛րածա-
նէին մանկո՛ւնքն զհա՛նդերձս իւրեա՜նց . և՛ ոստս
ի ծառո՛ց բերեալ մատո՛ւցանէ՛ի՜ն Աստուա՞ծոր-
դւո՜յն սուրբ Թագա՛ւորի՜ն ։ Ո՛ստովք և տե՛րեւ-
եալ ձի՞թենեօք Ե՛բրայեցւոց մանկո՛ւնքն օրհնէի՜ն .
ուրախ լե՛ր Երուսա՛ղէմ քա՛ղաք , և ցնծա՞ Սի՛-
ո՜վն մայր եկեղեցի՜ ։ Զգալուստ քո Քրիստո՛ս այ-
սօր յԵ՛րու՛սաղէմ նո՛ր եկեղեցի՜ սուրբ , յաղթակա՛ն
երգով բա՛րեբանեմք . օրհնեալ եկեալ ա՛նուա՜ մբ
տեա՜ռն ։ Որ փա՛սըն մերո՛յ փըրկութեա՜ն յաւա-
նակի՛ նըստի՛լ յանձն ա՛ռեր , ընդ մանկո՛ւնսըն բա՛-
րեբանե՛մք . օրհ ” ։ Թագաւոր ե՞րկնաւոր զե՛կե-
ղեցի քո անշա՞րժ պա՜հեա , և զերկրպագո՛ւս ան-
տա՛նըդ քում պա՛հեա՜ ի խա՛ղաղութեա՜ն ։ Ի՛
յարութեա՜ն յաւո՛ւր գալը՛ստեան Փըրկչին տարա-
ծանէի՛ն մանկո՛ւնքն ըզհա՞նդերձս , և անդադա՜ր
ձայնիւ օրհնէի՛ն օրհնեա՛լ եկեալ ա՛նուա՜ մբ տեա՜ռն ։
Ո՛ստս ի ծառո՜ց բերեալ մատո՛ւցանէին Աստուա՛ծ-
որդւո՞յն առ ճա՛նապարհաւն , և անդա՛ ” ։ Ի ծե-
րո՜ց բըղխեա՛լ օրհնութիւն և՛ ի տղայո՜ց փառա՛-
բանութիւն , և անդա ” ։

## ՔԱՐՈԶ

Եւ ևս խաղաղութեան զՏէր աղաչեսցուք ընկալ ” ։

Օրհնութիւն և փառք Հօր։ Այժմ և միշտ և յաւէ ”։

Օրհնութիւն. Ա.Զ

Յարեանն տաղ։

Օրհնեսցուք զՏէր զի փառօք է փառաւորեալ։

Որ վերօրհնիս յաթոռս քերովբէից, ի վերայ նըստիլ յաւանակի հանեցար. բարեբանեալ որ եկիր դու ի կեցուցանել։ Ուստի և մեք պյաղ-թական օրհնութեանց ըզձայն մատուցանեմք քեզ Թագաւոր փառաց ընդ տղայոն օրհնաբանելով. բարեբ ”։ Ովսաննայ ի բարձունս ալէլու-իա. բարեբանեալ եկեալ անուամբ տեառն ալէ-լուիա. և օրհնութիւն որ գալոցդ ես անուամբ տեառն ալէլուիա։ Այսօր զանըսկիզբըն բանն որ յաթոռ փառաց ընդ Հօր՝ յերկրի երեւեալ տեսաք. քըռովբէական ձայնիւն օրհնեսցուք. օրհնեալ եկեալ անուամբ տեառն։

Այսօր գոլով ի Բեթանիա քո ամենազօր հրամանաւըդ ձայնեցեր Ղազարու, և դողացաւ մահ. դըժոխք պարտեցաւ, ապականութիւն լուծաւ. կենդանարար Քրիստոս կեցո ըզմեզ։ Այսօր գոլով ի Բեթանիա զքո զաշխարհակեցոյց սուրբ ըզ-յարութիւնդ յառաջագոյն ծանուցեր անապա-

կանաքար կոչմամբ զչորեքօրեայն ի թաղմանէ կենդա ”։ Այսօր գոլով ի Բեթանիա Եբրայեցւոց մանկունքն աքանչացեալ ասէին. զՄարիամու զեղբայրն ի թաղմանէ յարուցեալ որդւոյն Մարիամու. կենդա ”։

Կենդանութեանց բաշխող Քրիստոս ի Բեթանիա եկաւորեալ այսօր, բարեկամին Ղազարու պարգևէ զկենդանութիւն։ Տընօրինաբար արտասուելով ընդ Մարթայի և ընդ Մարիամու որբակցէր. և որպէս մարդ հարցանէր ուր եդիք զՂազարոս։ Եւ որպէս զԱստուած բարբառով յարուցանէ ի մեռելոց զչորեքօրեայն. և զուգընթաց ձայնին մեռեալն եկն արտաքս անապական։

Որ ի լերինն այլակերպեալ ցուցեր զԱստուածային քո զօրութիւնդ. զքեզ փառաւորեմք իմանալի լոյս։ Որ ըղձառուագայթ փառաւոր քոց ցուցեր արեգակնակերպ փայլմամբ զարարածքս լուսաւորեցեր. զքեզ փառաւորեմք իմանալի ”։ Որ ահագին տեսլեամբ զարհուրեցուցեր զքո զաշակերտսն, ի թըմրութիւն հրաշիցն ի սէր Աստուածային փառաց քոց. զքեզ փառս ”։

Զփառաւորեալըն յամենայն արարածոց, և ի ծագաց մինչ ի ծագս երկրի գերկրպագեալըն. ընդ-մարմնացեալ բանն ի կուսէն, ձայնիւ երգով օրհ-նեսցուք։ Որ դիմեալ գայ յերդումն բարձրացեալ փողով. յարուցեալ ի պատերազմ ընկըղմեաց զաներեւոյթն ամաղէկ. զիջեալ բանն ի դըժոխս ձայնիւ եր"։ Ծագումն ի Հօրէ փառակից Սուրբ Հոգւոյն, կենդանութիւն ազգի մարդկան, որ յա-րեաւն այսօր ի մեռելոց. ընդհամբարձեալ բանն ի յերկինս ձայնիւ եր"։

Հոգ. Որ ի քերովբէական կառաըդ հանգչիս, այսօր իջեր յերկնից ի դաս առաքելոցն Սուրբ Հոգի. օրհնեալ ես Թագաւոր անմահ։ Որ գընաս ի վերայ Թեւոց հողմոց. այսօր ի հրեղէն լեզուս բաժանեալ հանգեար յառաքեալսըն Սուրբ Հոգի. օրհ"։ Որ խնամես տեսչութեամբ զքո զարարա-ծըս, այսօր եկիր ի հաստատել զեկեղեցի քո Սուրբ Հոգի. օրհ"։

Զայն արկեալ կենարարին Աստուածային բար-բառովն, ասէ եկայք օրհնեալք Հօր իմոյ ժառան-գեցէք պատրաստեալ ձեզ զկեանսն ի հանդերձեալ երկրին։ Ընդ առաջ ելանել քեզ հաւատով ի յօդս

[illegible], Աստուածածնայ լուսով պայծառա-ցեալ ի դաս անմարմնոցն. ի լեռնէ ընծայն երա-նաւէտ կոչմանն։ Ընդ աջմէ քումմէ կացո ընդ իմաստուն սուրբ կուսանսն, ի լուսեղէն առա-գաստին պայծառացեալ ի դաս անմարմնոցն, ի ժողովս անդրանկաց գրելոց ի յերկինս։

Մարմնացեալդ ի կուսէն նախայաւիտեան բանդ, այսօր ի տաճարին երկիր կատարել փո-րձն, փառքն փրկութեան հեթանոսաց։ Որ յանարատ աթոռ նստիս բարերանեալդ ի հը-րեշտակաց. այսօր ի Սիմէօնի բառնալով ի գի-րկս. որ ընծայեցես զմեզ ի կեանսդ յաւիտե-նից։ Որ [illegible] կառքեալ [illegible] ամենեցուն, այսօր հայցմամբ ծերունւոյն ար-ձակեա եւ զիս զբազմամեղս ի կապանաց մահու՝ ի կեանսդ յաւիտենից։

Ի խորանի քում սրբութեան զոր բնակեցեր զա-[illegible] Քրիստոս, ի սմա միաձայնեալ ղա-ղաչեմք զքեզ լուր ձայնի աղաչանաց մերոց ըն-կալ եւ կեցո զմեզ։ Աստուածային լուսով քո պայծառ քան զարեգակն լուսաւորեցեր զքո սուրբ զեկեղեցի. ի սմա»։ Այսօր եւ հրեշտակք ուրա-խանան ընդ պայծառութիւն քո սուրբ եկեղեցւոյ.

ի սմա՛ միաձայնեա՜լ աղա՛չեմք ըզքեզ լո՛ւր ձայնի՛ աղաչանա՛ց մերոց ընկա՜լ և կե՛ցո՞ ըզմեզ։

Փառք Հօ՜ր եւ Որդւո՜յ եւ Հոգւոյն Սրբոյ.

Այսօր յաւանա՛կ քերո՛վբէ՜, և տղա՛յքն Եբրա՛յեցւոց բա՛րբառնեն. օրհնութի՛ւն որդւոյ Դաւթի օրհնեա՛լ եկեալ ա՛նուա՜մբ տեա՜ռն։

Այժմ եւ մի՜շտ եւ յաւիտեանս յաւիտենից. ամէն:

Այսօր զուարճա՛ցան տիե՛զերք գալստեա՛մբ Աստուածո՛րդւոյն յԵ՛րուսաղէմ. և գոչէի՛ն հընչմա՛մբ երգով. օրհնեա՛լ եկեալ ա՛նուա՜մբ տեա՜ռն։

## ՄԱՂԹԱՆՔ

Փառք հրաշափառ գալստեան։ (Տես ի թիւն. 42:)

## ՔԱՐՈԶ

Վասն ուղղելոյ զգնացս մեր ի ճանապարհս խաղաղութեան՝ զՏէր աղաչեսցուք։

Տէ՜ր ողո՛րմեա՜։

Վասն ցրելոյ ի մէնջ զամենայն խորհուրդս չարին՝ զՏէր աղա"։

Վասն պարգեւելոյ մեզ առողջ խորհուրդս և առաքինի վարս՝ զՏէր աղա"։

Վասն պահելոյ զմեզ ընդ հովանեաւ ամենազօր աջոյն իւրոյ՝ զՏէր աղա"։

Վասն խորտակելոյ զհակառակորդն փառաբանեմք Ը․Դ․ ոտիւք մերովք՝ զՏէր ապա՚՚ ։

Վասն հոգւոյն ։ Եւ ևս միաբան ։ Զանձինս մեր ։

Ողորմեաց մեզ ։

ԱՂՕԹՔ

Տէր երկնի և երկրի՝ արարիչ ամենայն արարածոց երևելեաց և աներևութից ։ Առ քեզ կարդամք յամենայն ժամ, զի ընդ ամենայն տեղիս է տէրութիւն քո, և արքայութիւն քո ամենեցուն տիրէ ։ Շնորհեա մեզ երկիւղիւ ի պաշտօն քո կանխել հանապազ, սիրել զքեզ ի բոլոր սրտէ և ի բովանդակ մտաց, և յամենայն զօրութենէ մերմէ պահել զպատուիրանս քո ։ Համբառնալ առ քեզ զձեռս մեր ի սրբութիւն առանց բարկութեան և երկմտութեան․ և գտանել ի քէն զշնորհս և զողորմութիւն, և զառաքինասէր գործոցն յաջողութիւն ։ Վասն զի դու ես Տէր կենաց և Աստուած ողորմութեանց, և քեզ վայելէ փառք իշխանութիւն և պատիւ, այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից․ ամէն ։

Խաղաղութիւն ամենեցուն

Աստուծոյ երկրպագեսցուք

Քում ամենազօր և յաղթող Տէրութեանդ կրկնի ամենայն ծունր յերկրպագութիւն․ և փառաւորի յամենեցունց թագաւորութիւն քո ։ Նայեաց յերկրպագութիւնս մեր, և տուր մեզ առնել զարդարութիւն ճշմարտութեան ։ Վասն զի դու ես Աստուած խա-

դարդութեան, որ բարձեր զթշնամութիւն ի միջոյ, և արարեր զխաղաղութիւն յերկինս և յերկրի. հեռաւորաց և մերձաւորաց աւետարանեցեր զնոր պարգևս քոյին բարեացդ: Որում և զմեզ մեծի շնորհացդ արժանաւորս արասցես, դասելով ընդ ճշմարիտ երկրպագուս քո, Աստուած մեր և Տէր մեր և Փրկիչ Յիսուս Քրիստոս: Որ ես օրհնեալ ընդ Հօր և ընդ Սուրբ Հոգւոյդ, այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից. ամէն.

Ալէ՛լուիա. ալէ՛լուիա. ալէ՞լուիա.

Տէ՜ր Աստուած մեր երեւեցաւ մեզ. արարէք տօնս ուրախութեան կանխաւ, մինչեւ յանկիւնս սե՞ղանոյ: Աստուա՜ծ իմ ես դու, և խոստովան եղէց քեզ. Աստուած իմ ես դու՝ և բարձր արարի՞ց զքե՜զ:

Ալէ. Կեցջի՜ք ցնծասցէք առաջի Տեառն՛, զի գալ և հասանել է Տէր ի դատե՞լ զերկիր: Դատե՛ զաշխարհս արդարութեամբ. և զժողովուրդս իւր ուղղութեա՜մբ:

Փա՜ռք և ձր». Ա՛յժմ և միշտ և:

Ալէլուիա. ալէ՛լուիա. ալէլո՛ւիա՜»:

ՄԱՂԹԱՆՔ

Յերգս օրհնութեան և ի ձայն պաշտամանց անդադար փառաւորեմք զՀայր և զՈրդի և զՍուրբ Հոգիդ, այժմ և միշտ և":

ցա՜ր ակնա՛ծնա երգով. ը՛նդգե՜զ բա՛ բերանե՛մք :

Գ. Ըզոտէր օրհնեցէ՛ք բարձր ա՛րարէք ը՛զնա՛ յա-ւիտեա՜ն : Ա՜յսօ՜ր ըզգալո՛ւստ Փըրկչին մեծըրոյ ցընծութեամբ՛ տօնէ նո՛ր Սիոնա՜՛դէ՜մ. ժո՛ղո-վո՛ւրդք որք ի՛ հեթանոսա՛ց բարձր " :

Փառք Հօ՛ր եւ Որդւոյ եւ Հոգւո՜յն Սրբոյ :

Ա՜յսօ՜ր ընդ մանկա՛նց Եբրայեցւոց գհին տո՛ւր-ցըն եկեա՛լ նոր արքա՛յ ի Սի՜՛օ՜՜վն . մա՛նկո՜ւնք սո՛ւրբ եկեղեցւո՛յ բարձր " :

Այժմ եւ մի՛շտ եւ յաւիտեանս յաւիտենից , ամէ՛ն :

Ա՜յսօ՜ր ընդ ծերո՛ցն օրհնաբանեից ուրախութեա՛մբ բարեբանեցէ՛ք զանմա՛հ Թագաւորն ե՜՛կեա՜լ. քա՛հանա՜յք հո՛գեւոր երգո՛վ բարձր " :

ՔԱՐՈԶ

Եկեալքս ամենեքեան ի սուրբ (Տես ի Երկն. 52 :)

Մեծացուցէ ԱՁ

Ո՛ւրախ լեր յո՛յժ Դո՛ւստր Սի՜ո՛վնի. պա՛յ-ծառացի՛ր Երուսաղէ՜մ, զարդարեա՛ ըզդըրո՛ւնըս քո՜ քա՜ղա՛քդ Ա՛ստուծոյ : Քանզի Քրիստոս ո՛ր է՜նն ի՛ յաթո՛ռ փա՛ռաց, ա՛յսօր մըտանէ՜ ի՛ քե՛զ նըս-տեա՛լ ի վերայ յա՜ւանա՛կի՛ նորո՜յ :

Փառք Հօր եւ. Այժմ եւ միշտ:

Ծե՛րք և՛ տղա՛յք ո՛ստո՛վք ձիթե՛նեօ՛ք միաբանո՛ւթեա՛մբ ե՛րգէին. օրհնութի՛ւն որդւոյ Դաւթի, օ՛րհնեալ եկեալ ա՛նուա՛մբ Տեա՛ռն:

### ՔԱՐՈԶ

Եւ ևս խաղաղութեան զՏէր աղաչեսցուք:
Տէ՛ր ողո՛րմեա՛:

Վասն սուրբ տեղւոյս շինութեան, և բարեկարգութեան. զՏէր աղա":

Վասն ժողովրդեանս՝ որք մտանեն ընդ դրունս սրբոյ եկեղեցւոյ. զՏէր աղա":

Վասն ընդունելոյ զպաղատանս սոցա ըստ մեծի ողորմութեան իւրում. զՏէր աղա":

Եւ ևս միա: Զանձինս մեր: Ողորմեաց մեզ:

### ԱՂՕԹՔ

Դու ես թագաւոր յաւիտեանս յաւիտենից Քրիստոս Աստուած մեր: Եւ քեզ ընդ Հօր և Հոգւոյդ սրբոյ վայելէ փառք իշխանութիւն և պատիւ. այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից. ամէն:

Երգ իւղաբերից Աւետարանին:

Եղիցի ա՛նունն Տեա՛ռն օ՛րհնեալ. ի յա՛յսմ հետէ, մի՛նչեւ ի յաւի՛տեա՛ն:

Օրհնեցէ՛ք մանկունք զՏէր. և օրհնեցէ՛ք զանուն Տեառն։ Եղիցի անուն Տեառն օրհնեալ յայսմ հետէ մինչև ի յաւիտեան. Յարևելից մինչ ի մուտս արևու օրհնեալ է անուն Տեառն. ի յայսմ հետէ մին"։

Փառք և երկրպագութիւն Հօր և Որդւոյ և Սուրբ Հոգւոյն. և այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից ամէն. ի յայսմ հետէ մինչև ի յաւիտեան։

Արի Տէր օգնեա մեզ, և փրկեա զմեզ. վասն անուան քոյ։

Արի և մի մերժեր ըզ մեզ ի սպառ. վասն անուն"։

Թագաւորեսցէ Տէր յաւիտեան. Աստուած քո Սիոն յազգէ յազգ։ Օրհնեա անձն իմ ըզ Տէր օրհնեցից ըզ Տէր ի կենդանութեան իմոյ։

Օրհնի

Խաղաղութիւն ամենեցուն

Եւ ընդ հոգւոյդ քում. Երկիրպագութեամբ լուարուք.

Սրբոյ Աւետարանիս Յիսուսի Քրիստոսի որ ըստ Ղուկասու։

Փառք քեզ Տէր Աստուած մեր։ Զօրասցուք։ ասէ Աստուած։

Վասն Թագման Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի։

Եւ ահա այր մի անուն Յովսէփ, որ էր նախա-

լոր՝ այր բարեգործ և արդար. սա չէր միաբանեալ ընդ խորհուրդս և ընդ գործս նոցա. յԱրիմաթեայ քաղաքէ Հրէից, որ և ինքն իսկ ակնունէր արքայութեան Աստուծոյ։ Սա մատուցեալ առ Պիղատոս՝ խնդրեաց զՄարմինն Յիսուսի. և իջուցեալ զնա՝ պատեաց Պատանաւակալաւ, և եդ ի կռածոյ գերեզմանին. ուր չէր բնաւ զոք եդեալ։ Եւ օրն էր ուրբաթ, և շաբաթ լուսանայր։ Եւ երթային զհետ նորա կանայք՝ որք եկեալ էին ընդ նմա ի Գալիլէէ. տեսին զգերեզմանն, և որպէս եդաւ մարմին Նորա։ Դարձան և պատրաստեցին խունկս և իւղս. և ի շաբաթուն հանգստացին վասն պատուիրանին։

ԵՐԳ

Զամենա՛յն աւուրս կենաց իմոց, ես ոչ դադարեցայց օրհնել զքեզ Քրիստոս Փրկի՛չդ ա՛շխարհի՛։

Երկեցս հրչնեա.և չյեւկնն բարձր սաս։

Ի գիշերի համբարձէք զձեռս ձեր ի սրբութիւն. և օրհնեցէք զՏէր։
Աստ օրհնեցէք ամենայն ծառայք Տեառն զՏէր ի սրբութիւն. և օրհնեցէք զՏէր։

ԽՐԳ

Դուք լուսեղէ՛ն զո՛ւարթնոցն սպասէին մեծի՛

գալըստեանն Տեառն ։

Ծ՛ւ երգէին երգ նո՞ր օրհնեալ է քո սուրբ գա՞լո՞ւստդ ։

*Փառք՝ զկնի Աւետարանէն․ և երգոցն ։*

Զուարճացեալքս մեծաւ ուրախութեամբ աւետեօք յարութեան Տեառն մերոյ և Փրկչին Յիսուսի Քրիստոսի ։ Որ եղև պտուղ և անդրանիկ ամենայն ննջեցելոց․ խորտակեաց զդրունս դժոխոց․ և եբարձ զբռնութիւն մահու․ և ետ յոյս հաստատութեան վերստին նորոգման կենդանութեան ամենայն մարդկան ։ Խնդրեսցուք հաւատով ի Փրկչէն մերմէ Յիսուսէ Քրիստոսէ․ զի զմեզ արժանի արասցէ յարութեան իւրոյ․ կերպարանակից առնել զմարմին խոնարհութեան մերոյ ըստ նմանութեան մարմնոյ փառաց իւրոց ։ Վասն զի զայս խոստացաւ․ զմեծ և զանճառելի շնորհս պարգևել սիրելեաց իւրոց ճշմարիտն Աստուած․ Յիսուս Քրիստոս Տէր մեր․ կեցո և ողորմեա ։

## ԱՂՕԹՔ

Ամենակեցոյց ճշմարիտ՝ Սուրբ մեծի գալստեանն Քրիստոսի Աստուծոյ մերոյ, վայելէ՛ փառք իշխանութիւն և պատիւ․ այժմ և միշտ և յաւիտեանս յաւի”։

Ողորմեա ԲԿ

Ո՛ւրա՞խ լե՛ր Եկե՛ղեցի՞ Սուրբ ի՛ գա՞լ՛ստեա՞ն

սուրբ Միածնին. ուրախ լեր և ցնծա հանդերձ ամենայն սրբովք: Խնդա յոյժ դուստր վերին Սիովնի. ահա Թագաւոր քո գայ նստեալ ի յաւանակի նորոյ. արդար և Փրկիչ փրկէ և կեցուցանէ:

Փառք Հօր եւ Որդւոյ: Այժմ եւ միշտ եւ յա:

Զուարճացիր և բերկրեա ժողովուրդ Աստուծոյ. մատո զսաղմոս ծաղկեալս հաւատով և ասա. օրհնեալ որ եկիրդ Թագաւոր տիեզերաց:

ՔԱՐՈԶ

Երկրպագեմք քեզ Տէր: (Տես ի Թիւն. 58 :)

Տէր յերկնից Բկ:

Զքրիստոս Թագաւորն որ էն ի յաթոռ փառաց. տեսաք ի յերկրի նստեալ ի նոր յաւանակի: Ընդ առաջ ելեալ Արքային դասք Եբրայեցւոց. ծերքն ոստովք ձիթենեօք և տղայքն արմաւենեօք:

Փառք Հօր եւ Որդւոյ: Այժմ եւ միշտ եւ յա:

Միաբանեալ կան ձայնիւ գոչէին երգ նոր. բարեբանելով զանեղծ Թագաւորն:

Փառք ի բարձունս (Տես ի Թիւն. 61 :)

Առաւօտու երգ.

Այսօր մտանէ Թագաւորըն մեր Քրիստոս ի յԵրուսաղէմ նոր քաղաք Դաւթի :

Ընդ առաջ եկի՛ն ծերքն ուստիք ձիթենեօք. և զԱստուածորդին փառաւորէ՛ին :

ՔԱՐՈԶ

Սասասցուք (Տես ի Թիւն. 108 :)

ԱՂՕԹՔ

Պոհանունք դքէն (Տես ի Թիւն. 64 :)

Եւ զկնի սոյ Սուրբ Աստուած :

Սուրբ Աստուած. սուրբ և հզօր. սուրբ և անմահ. որ եկիր և գալոց ես. ողորմեա մեզ :

Երկիցս կրկնեա : Եւ զկնի զՓառաւորեալն :

Զմաղթանք և զՔարոզ: (Տես ի Թիւն. 65 :)

Եւ զգեցցին միաբան Քահանայքն՝ և ելցեն ի Թափօր Խաչիւ և Աւետարանաւ, խնկօք և մոմեղինօք և ամենայն զարդուք. սաղմոսելով Շարականս. ԱՁ

Որ զերրորդենիս յաթոռս քերովբէից, ի վերայ նըստիլ յաւանակի հանեցար. բարեբանեալ որ եկիրդ ի կեցուցանել: Ուստի և մեք զյաղթականն օրհնութեանցն ըզձայն մատուցանեմք քեզ Թագաւոր փառաց ընդ տղայսն օրհնաբանելով. բարե՛’’ : Ովսաննայ ի բարձունս այլ և աւ-

իա. Բարեբանեա՛լ եկեալ ա՛նուա՞մբ Տեառն ա՛լէ-լուիա. Ե՛ւ օրհնութի՞ւն որ գալո՛ցդ ես անուա՞մբ Տեառն ա՛լէ՛լու՛իա՞։

Սաղմոս. ՂԷ.

Լերինք ցնծասցեն առաջի Տեառն զի գայ. զի հասեալ է Տէր ի դատել զերկիր։

Ընթերցուած յԵրգոց Երգոյն Սողոմոնի։
Գլ՝ 2. համ 8.

Ձայն եղբօրորդւոյ իմոյ. ահաւասիկ սա եկն վազելով ի վերայ լերանց՝ խայտալով ի վերայ բլրոց։ Նման է եղբօրորդին իմ այծեման, կամ որթուց եղանց ի վերայ լերանց Բեթելայ։ Արի եկ՝ մերձաւոր իմ, գեղեցիկ իմ, աղաւնի իմ. վասն զի ահա ձմեռն էանց. անձրեւք անցին, և գնացեալ մեկնեցան։ Ծաղիկք երևեցան յերկրի, և ժամանակ յատանելոյ եհաս։ Ձայն տատրակի լսելի եղև յերկրի մերում. թզենի ընձիւղեաց զբողբոջ իւր. այգիք մեր ծաղկեցան՝ և ետուն զհոտս իւրեանց։ Արի՛, ե՛կ՝ մերձաւոր իմ, գեղեցիկ իմ, աղաւնի իմ. ե՛կ ընդ հովանեաւ վիմին, մերձ առ նախապարիսպն։ Ցո՛յց զդէմս քո. և լսելի՛ արա ինձ զբարբառ քո. վասն զի դէմք քո գեղեցիկ են, և բարբառ քո քաղցր. կալարո՛ւք մեզ աղուեսուկս փոքունս՝ զապականիչս այգեաց, և այգիք մեր ծաղկեսցին։ Եղբօրորդին իմ

րնձ, և ես նմա. որ հովուէն ի մէջ շուշանաց: Իջ-ցէ եղբօրորդին իմ ի պարտէզ իւր. և կերիցէ զպը-տուղ ծառոց իւրոց: Տեսին զնա դստերք՝ և երա-նեցին նմա. Թագուհիք և հարճք գովեցին զնա: Ո՞վ է սա՝ որ երևեալս է իբրև զառաւօտ, գեղեցիկ որ-պէս լուսին, ընտիր իբրև զարեգակն. իբրև զհիա-ցումն կարգեալ. ի պարտէզս ընկուզաց իջի հայիլ ի յարմտիս ուղխից. տեսանել թէ ծաղկեա՞լ իցէ որ-թըն, ծաղկեա՞լ իցէ նշենին, և փթթեա՞լ իցէ նռնե-նին. անդ տաց զստինս իմ քեզ:

Ընթերցուած Եսայեայ Մարգարէին:
Գլ՝ 62. համ 11:

Ասացէք դստեր Սիոնի. ահաւասիկ Փրկիչ քո հասեալ գայ՝ և ունի զվարձս իւր ընդ իւր. և գործ իւր առաջի երեսաց իւրոց: Եւ կոչեսցէ զնա ժողո-վուրդ սուրբ՝ փրկեալ ի Տեառնէ. և դու կոչեսցիս խնդրեալ քաղաք՝ և ոչ լքեալ:

Պօղոսի Առաքելոյն յԵբրայեցւոց Թղթոյն է
Ընթերցուածս:
Գլ՝ 1. համ 3:

Օրհնեալ է Աստուած, և Հայր Տեառն մերոյ Յի-սուսի Քրիստոսի: Որ օրհնեաց զմեզ ամենայն հոգե-ւոր օրհնութեամբ յերկնաւորս ի Քրիստոս: Որպէս ընտրեաց զմեզ նովաւ յառաջ քան զլինելն աշխար-հի, լինել մեզ սուրբս և անարատս առաջի նորա սի-րով: Յառաջագոյն սահմանեաց զմեզ յորդեգրու-

թիւն ի ձեռն Յիսուսի Քրիստոսի ի նոյն ըստ հաճութեան կամաց իւրոց։ Ի գովեստ փառաց շնորհաց իւրոց. որով զուարճացոյց զմեզ սիրելեաւն։ Որով ունիմք զփրկութիւն ի ձեռն արեան նորա, զթողութիւն մեղաց՝ ըստ մեծութեան շնորհաց իւրոց։ Որ առաւելաւ ի մեզ ամենայն իմաստութեամբ և գիտութեամբ։ Ցոյց մեզ զխորհուրդս կամաց իւրոց՝ ըստ հաճութեան իւրում, զոր յառաջագոյն եդ նովաւ։ Ի տնտեսութեան լրման ժամանակաց. բովանդակել զամենայն Քրիստոսիւ. որ ինչ յերկինս՝ և որ ինչ յերկրի, ի նոյն։

Ալէ՜լուիա ալէ՜լուիա

Օրհնեալ եկեալ անուամբ Տեառն օրհնեալ որ գա՜լոց ես։

Ալէ՜լուիա օ՜րթէ

Սրբոյ Աւետարանիս Յիսուսի Քրիստոսի որ ըստ Մարկոսի։

Գլ՝ 10. համր 46։

Ընդ Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի

Եւ գան յԵրիքով. և ընդ ելանելն նորա յԵրիքովէ աշակերտօքն և բազում ժողովրդով, որդի Տիմէի Բարտիմէոս կոյր՝ նստէր մուրացիկ յանցս ճանապարհի։ Իբրև լուաւ թէ Յիսուս Նազօրեցի է՝ սկսաւ աղաղակել և ասել. որդի Դաւթի Յիսուս, ողորմեա ինձ։ Եւ սաստէին նմա բազումք՝ զի լռեսցէ. և նա

առաւել եւս աղաղակէր. Որդի Դաւթի, ողորմեա ինձ։ Զտեղի կալաւ Յիսուս, և հրամայեաց կոչել ըզնա. կոչեն զկոյրն՝ և ասեն ցնա. քաջալերեա՛, արի՛, կոչէ զքեզ։ Եւ նորա ընկեցեալ զձորձս իւր, յարեաւ և եկն առ Յիսուս։ Պատասխանի ետ նմա Յիսուս, և ասէ զի՞նչ կամիս՝ թէ արարից քեզ. ասէ ցնա կոյրն. Րաբբունի, զի բացայց։ Եւ Յիսուս ասէ ցնա. Երթ Հաւատք քո կեցուցին զքեզ. և վաղվաղակի բացաւ. և երթայր զհետ նորա ի ճանապարհին։ Եւ յորժամ մերձ եղեն յԵրուսաղէմ, ի Բեթփագէ և ի Բեթանիայ մօտ ի լեառն Ձիթենեաց, առաքէ երկուս յաշակերտաց անտի։ Եւ ասէ ցնոսա. երթայք դուք ի գեօղդ՝ որ ընդդէմ ձեր կայ. և նոյն ժամայն իբրև մտանիցէք ի նա, գտանիցէք յաւանակ մի կապեալ. յորոյ վերայ ոչ ոք ի մարդկանէ նստաւ. լուծէք զնա՝ և ածէք։ Եւ եթէ ոք ասասցէ ցձեզ՝ եթէ զի՞ լուծանէք զյաւանակդ, ասասջիք եթէ Տեառն իւրում պիտոյ է. և վաղվաղակի առաքեսցէ զնա այսր։ Չոգան, և գտին զյաւանակն կապեալ առ դուրս արտաքոյ ի փողոցի անդ. և լուծին զնա. Եւ ոմանք յորոց անդն կային՝ ասեն ցնոսա. զի՞ գործէք, զի՞ լուծանէք զյաւանակդ։ Եւ նոքա ասեն ցնոսա՝ որպէս ասաց Յիսուս, և թոյլ ետուն նոցա։ Ածին զյաւանակն առ Յիսուս և արկանեն ի վերայ նորա հանդերձս. և նստաւ ի վերայ նորա։ Եւ բազումք զհանդերձս իւրեանց տարածա-

նէին ի վերայ ճանապարհին. և այլք ոստս ի ծառոց հատանէին՝ և արկանէին զճանապարհաւն: Եւ որք առաջի և զկնի երթային, աղաղակէին, և ասէին. ովսաննա բարձրելոյն: Օրհնեալ որ գաս յանուն Տեառն. օրհնեալ թագաւորութիւնդ Հօր մերում Դաւթի. խաղաղութիւն յերկինս՝ և փառք ի բարձունս: Եւ եմուտ Յիսուս յԵրուսաղէմ ի տաճարըն. և հայեցաւ շուրջ զամենեքումբք. և զի էր յերեկոյացեալ ժամն. ել ի Բեթանիա երկոտասանիւքըն հանդերձ:

Քարոզ յորժամ ի Թափօր ելանեն:

Եւ ես խաղաղութեա՛ն զտէ՛ր աղաչեսցո՜՛ւք:
Տէ՛՛ր ո՛ղորմեա՛:

Վասն ի վերո՛ւստ խաղաղութեան և փրկո՛ւթեան անձանց մերոց. զտէ՛ր աղաչե՛սցո՜՛ւք:
Տէ՛՛ր ո՛ղորմեա՛:

Ողորմեա՛ց մեզ Տէր Աստուած մե՛ր, ըստ մեծի ողորմութեան քում. ասասցուք ամենեքեան միաբանո՛ւթեա՛մբ:
Տէր ողորմեա՛. տէ՛ր ողորմեա. տէ՛ր ո՛ղո՛րմեա՛:

Օրհնութիւն և փա՛ռք Հօր և Որդւոյ և Հոգւոյն Սրբո՛յ. Այժմ և միշտ և յաւիտեանս յաւի՛տենից:

Ա՛մէ՛ն: Ալէլո՛ւիա՛. ալէլո՛ւիա. ալէ՛լուիա՛:

Օրհնեցէ՛ք և պահպանեցէք և նախախնամեալ պա-

հեսցի. արեւելեան կողմն աշխարհիս. և Հայրապե-տութիւն Հայոց. ա՜յս նշանա՜ւ սուրբ Խաչիս և սուրբ Աւետարանաւս, և աւուրս շնորհիւ. անուամբ Հօ՜ր և Որդւոյ և Հոգւոյն Սրբո՜յ. Այժմ և միշտ"։

Եւ դարձուցանեն զերեսս յարեւմուտս։

Ա՜մէ՜ն։ Ալէլո՜ւիա՜. ալէլո՜ւիա. ալէ՜լուիա՜։

Օրհնեսցի՛ և պահպանեսցի և նախախնամեալ պա-հեսցի. արեւմտեան կողմն աշխարհիս. և թագաւորու-թիւն քրիստոնէից. ա՜յս նշանա՜ւ սուրբ Խաչիս"։

Եւ շրջելով դառնան ի հարաւ։

Ա՜մէ՜ն։ Ալէլո՜ւիա՜. ալէլո՜ւիա. ալէ՜լուիա՜։

Օրհնեսցի՛ և պահպանեսցի և նախախնամեալ պա-հեսցի. հարաւային կողմն աշխարհիս. երկիր անդաս-տանս և պտղաբերութիւն տարւոյս. ա՜յս նշանաւ"։

Եւ դառնան դէպ ի հիւսիս։

Ա՜մէ՜ն։ Ալէլո՜ւիա՜. ալէ՜լուիա. ալէ՜լուիա՜։

Օրհնեսցի՛ և պահպանեսցի և նախախնամեալ պա-հեսցի. հիւսիսային կողմն աշխարհիս. վանքս անապա-տըս քաղաքս և գիւղս. և բնակեալ ժողովուրդս ի սմա. ա՜յս նշանա՜ւ սուրբ Խաչիս"։

Ա՜մէ՜ն։

Եւ դառնան ի բեմն. և ասեն դարձեալ։

Օրհնութիւն և փա՜ռք Հօր և Որդւոյ և Հոգւոյն"։

*Քարոզ Թափօրի և խաչի ։*

Սուրբ խաչիւս աղաչեսցուք զՏէր, զի սովաւ փըրկեսցէ զմեզ ի մեղաց՝ և կեցուսցէ շնորհիւ ողորմութեան իւրոյ ։ Ամենակալ Տէր Աստուած մեր . կեցո և ողորմեա ։

## ԱՂՕԹՔ

Պահպանեա զմեզ Քրիստոս Աստուած մեր՝ ընդ հովանեաւ սուրբ և պատուական խաչիւդ քով ի խաղաղութեան . փրկեա յերևելի և յաներևոյթ թշնամւոյն ։ Արժանաւորեա գոհութեամբ փառաւորել ըզքեզ ընդ Հօր և ընդ Սրբոյ Հոգւոյդ . Այժմ և միշտ և ։

Օրհնեալ Տէր մեր Յիսուս Քրիստոս . Ամէն ։

Հայր մեր որ յերկինս ես, սուրբ եղիցի անուն քո ։

*Եւ երթայցեն ի գերեզմանն ։ Ժամամուտ ։*

Յորժամ եկեալ կենարարդ ի գերեզմանն Ղազարու . յորժամ եկեալ կենարարդ ի գերեզմանն Ղազարու . աստուածային ձայնիւդ աղաղակէիր ասելով՝ Ղա՛զարէ՝ արի եկ արտաքս ։ Իսկ մեռեալն ի գերեզմանէն յարեաւ . և նոյն ինքնդ զանմահութեան պարգևսդ ետուր սիրելւոյդ, և Աստուածային ձայնիւդ ի գերեզմանէն կոչեցեր ։ Վասն որոյ՝ և մանկունք Սբրայեցւոց սատուկք օրհնէին զանմահ թագաւորութիւն քո ։ Ընդ նոսին և մեք ասեմք, ովսաննա՝ օրհնեալ է գալուստ քո . օրհնութիւն ի բարձունս, օրհ-

Նեալ որ գալոցդ ես անուամբ Տեառն ։

Շարական . Դկ

Յիսուս միածին անմահութեանց պարգեւատուն երեւեցաւ ըմեզ . խափանեաց զզօրութիւն մահու ։ Բըղխմամբ արտասուաց Մարիամու եւ Մարթայի անկեալ առ ոտսըն տեառն, խընդրէին զնորոգումն եղբօրըն ։ Բանիւ բանըն Աստուած կենագործեաց զՂազարոս ի թաղմանէ, եւ եկեալ արտաքս անապական ։

Ի քեզ եմք ապաւինեալ Քրիստոսի մայր Աստուածոյ մերոյ ։ Որ քան զերկինս բարձրագոյն Մարիամ, պարծանք եկեղեցւոյ . Քրիս" ։ Որ քան զարեգակըն պայծառագոյն Մարիամ, մի դադարիր բարեխօսել վասըն մեր, Քրիստոսի" ։

Խաչի քո Քրիստոս երկրպագեն արարածք ամենայն որ ի փրկութիւն մեզ կանգնեցաւ . սա եղիցի մեզ պահապան յաղթող, ապրեցուցանել ըզմեզ ի պատրանաց թըշնամւոյն ։

Փառք Հօր եւ Որդւոյ եւ Հոգւոյն Սրբոյ ։

Ի սմա բարձրացար բարձրոգդ անիծից որ փառաւորեալդ ես ընդ հօր . ժողովել ըզհեռացեալըն կենսաբեր փայտիւն . տարե" ։

Այժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւիտենից. ամէն

Սովաւ լուսաւորեցան արարածք ամենայն. սմա ապաւէին արգելեալքն ի մեղաւորէր բանտին. որ ազատեաց ըզմեզ ի պատրանաց թըշնամւոյն:

Ալէլուիա ալէլուիա

Եղիցին ականջք քո ի լսել զձայն աղօթից իմոց: Ի խորոց կարդացի առ քեզ Տէր, Տէր լուր ձայնի իմում:

Ալէլուիա Որթէւ

Սրբոյ Աւետարանիս Յիսուսի Քրիստոսի որ ըստ Յովհաննու.

Վասն փառաց տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի:

Եւ էր ոմն հիւանդ Ղազարոս. (Տես ի Թիւն. 69:)

Զկնի՝ Հոգւոյն հանգուցելոց: (Տես ի Թիւն. 36:)

Եւ ապա սկսանիցեն Շարականն ԲԿ:

Այսօր ընդ հրակերպեան դասուցն օրհնաբանէին ծերքն ոստովք, և տղայքն արմաւենեօք. ովսաննա օրհնեալ եկեալ ի յանուն տեառն: Զոր սերովբէքըն ծածկաբար ընդունել ոչ բաւէին, ի վերայ յաւանակի նորոյ նըստեալ բարեբանեցաւ ի տղայոց. ովսաննա": Այսօր ընդ ծերոց և ընդ տղայոց օրհ-

նա՛բա՜նո՛ւթեա՛նցըն վե՛ր երգե՜մք, նորոյ ար-քայի՛դ եկեալ յՆրո՞ւսա՛ղէ՜մ. ո՜վսա՞նը՛նա՜ օ՛րհ-նեա՜լ ե՛կեա՜լ ի յա՛նուն տեա՜ռն ։ Օ՛րհնեա՞լ եկեա՞լ ա՛նուա՛մբ տեա՜ռն. օ՛րհնեա՛լ ո՜ր գա՛-լո՛ցդ ե՜ս.

ԵՐԳ

Նո°րաստեղծեա՜լ բանն յանէի՛ց ի սկզբանէ զեր-կի՛նս երկնից. և° զերկնայի՜ն զօրս անմարմնո՛ց իմա-նալեացըն զո՛ւարթնոց. և° զգալի՜ տարերց քառից հակառակաց միաբանից. ո°րով յաւէ՜տ փառաբանի Երրորդութիւնն անճառելի՛։

Ե°րեքսրբեա՜ն մի տէրութիւն միով բնութեամբ Աստ-ուածութիւն լո°յսն որ անե՜ղ արարչական ասաց լի-նել լոյս եղական. զո°ր և ծագեա՜ց յօրն առաջին միա-շաբաթ կիւրակէին. ո°րով յաւէտ փառս"։

ՔԱՐՈԶ

Խնդրեսցուք։

ԱՂՕԹՔ

Քում ամենազօր և հրաշալի Գալստեանդ

(Տես ի Թիւն. 75։)

Ճաշու ժամամուտ։

Ցնծա Երուսաղէմ և զարդարեա զառագաստ քո Սիոն. քանզի՝ ահա Թագաւոր քո Քրիստոս նստեալ ի յաւանակի նորոյ՝ հեզութիւն ցուցանելով գայ մտանէ յառագաստ քո։ Եւ մեք աղաղակեմք, ովսաննա օրհնեալ եկեալ ի յանուն տեառն։ որ ունի զմեծ զօրութիւն.

Սաղմոս։

Տէր թագաւորեաց՝ զվայելչութիւն զգեցաւ, զգեցաւ տէր զօրութիւն ընդ մէջ իւր էած։

Ճաշու Շարական. ԴԿ։

Անըսկի՞զբըն բա՛նըն հօր որ՞ի վե՛րա՛յ քերո՛վբէ՞ցըն հանգչի, ա՛յսօր ի՛ վերայ յաւա՛նակի նորոյ նըստեալ. օ՛րհնեա՛լ արքայ ե՛կեալ անյաղթե՛լի՞ Թագաւոր։ Յառա՛ջ քան զյաւիտեա՛նս որդին որ է վերա՛յ քառա՛կերպի՞ցըն բազմի, ա՛յսօր ի ծերոց և ի՛ տղայոց փառա՛տրեցաւ. օ՛րհ"։ Եկա՛յք նոր ժողո՛վուրդք ընդ անմարմնո՛ցըն դա՛սս քաղցրութեան, ըզսա՛ հընչմա՛մբ երգով քաղցըր ձայնիւ փառա՛տրեսցուք. օ՛րհնեա՛լ արքայ ե՛կեալ անյաղթե՛լի՞ թա"։

Սաղմոս Դկ։

Լերինք ցնծացեն առաջի տեառն զի գայ. զի հասեալ է տէր ի դատել զերկիր։

*Ընթերցուածս յԵրգոց Երգոյն Սողոմոնի ։*
Գլ՝ 1։

Համբուրեսցէ զիս ի համբուրից բերանոյ իւրոյ. վասն զի բարի են ստինք քո քան զգինի, եւ հոտ իւղոց քոց քան զամենայն խունկս ։ Իւղ թափեալ է անուն քո. վասն այնորիկ օրիորդք սիրեցին զքեզ, եւ ձգեցին զքեզ ։ Զհետ քո ի հոտ իւղոց քոց ընթասցուք՝. տարաւ զիս արքայ ի սենեակ իւր. ցնծասցուք և ուրախ լիցուք ի քեզ. սիրեսցուք զստինս քո քան զգինի. ուղղութիւն սիրեաց զքեզ ։ Սեաւ եմ ես և գեղեցիկ դստերք Երուսաղէմի. իբրև զվրանն Կեդարու. և իբրև զխորանն Սաղոմոնի ։ Ո՞ւր հովուես. ո՞ւր հանգուցանես ի միջօրէի. քանզի գեղեցկացան ծնօտք քո իբրև տատրակի. պարանոց քո իբրեւ զմանեակ ։ Նմանութիւն ոսկւոյ արասցուք ըզքեզ՝ հանդերձ կիտուածովք արծաթոյ ։ Մինչև արքայ ի գիրկս իւր ընկալցի զքեզ. իւղ թափեալ է անուն քո ։ Եղբօր որդին իմ կարմիր է և սպիտակ. իբրեւ խնծոր ի փայտս անտառի. այնպէս է եղբօր որդին իմ ի մէջ ուստերաց. ընդ հովանեաւ նորա փափաքեցի՝ և նստայ. և պտուղ նորա քաղցր է ի կոկորդի իմում ։

*Ընթերցուածս Ի Զաքարիայ Մարգարէէ*
Գլ՝ 9. համ 9։

Ուրախ լեր յոյժ դուստր Սիոնի. քարոզեա՛ դուստըր Երուսաղէմի. ահա թագաւոր քո գայ առ քեզ.

արդար՝ և փրկիչ. նոյն հեզ՝ և հեծեալ ի վերայ իշոյ՝ և յաւանակի նորոյ։ Սատակեսցէ զկառս յԵփրեմէ՝ և զերիվար յԵրուսաղէմէ. և խորտակեսցի աղեղն պատերազմողի. և բազմութիւն՝ և խաղաղութիւն յազգաց. և տիրեսցէ ջուրց ի ծովէ մինչև ի ծով. և ի գետոց մինչև ի ծագս երկրի։ Եւ դու արեամբ ուխտի քոյ արձակեցեր զկապեալս քո յանջրդի գբոյ։ Եւ նստջիք յամուրս կապեալք ժողովրդեան. և փոխանակ միոյ աւուր պանդխտութեան քոյ՝ կրկին հատուցից քեզ։ Զի լարեցի զքեզ ինձ յուդայ իբրև զաղեղն. լցի և զԵփրեմ. և զարթուցից զորդիս քո Սիօն ի վերայ որդւոցն յունաց. և շօշափեցից զքեզ իբրև զսուսեր պողովատիկ պատերազմողի։ Եւ տէր եղիցի վերակացու նոցա. և ելցէ իբրև զփայլակն նետ նորա. և տէր տէր ամենակալ փող հարցէ. և գնասցէ շարժմամբ սպառնալեաց իւրոց։ Տէր ամենակալ պաշտպանեսցէ նոցա։

Պօղոսի Առաքելոյն ի Փիլիպպեցւոց Թղթոյն է
Ընթերցուածս։
Գլ՝ 4. Համ 4։

Ուրախ լերուք ի տէր յամենայն ժամ. դարձեալ ասեմ, ուրախ լերուք։ Հեզութիւն ձեր յայտնի լիցի ամենայն մարդկան. տէր մերձ է։ Մի՛ ինչ հոգայք. այլ ամենայն աղօթիւք և խնդրուածովք, գոհութեամբ խնդրուածք ձեր յայտնի լիցին առ Աստուած։ Եւ խաղաղութիւնն Աստուծոյ՝ որ ի վեր է քան զա-

մենայն միտս, պահեսցէ զսիրտս ձեր, և զմիտս ի Քրիստոս Յիսուս։

Ալէլուիա ալէլուիա

Տէր Աստուած մեր երևեցաւ մեզ. արարէք տօնս ուրախութեան կանխաւ մինչև յանկիւնս սեղանոյ։

Սրբոյ Աւետարանիս Յիսուսի Քրիստոսի որ ըստ Մատթէոսի։

Գլ. 20. համր 29.

Ընդ. Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի

Եւ յելանել նոցա յԵրիքովէ՝ գնացին զհետ նորա ժողովուրդք բազումք։ Եւ ահա կոյրք երկու նստէին առ ճանապարհաւն. իբրև լուան թէ Յիսուս անցանէ՝ աղաղակեցին և ասեն, ողորմեա՛ց մեզ Յիսուս որդի Դաւթի։ Եւ ամբոխն սաստեաց նոցա՝ զի լռեսցեն. և նոքա ևս առաւել աղաղակէին և ասէին, տէր՝ ողորմեա՛ց մեզ որդի Դաւթի։ Զտեղի էառ Յիսուս՝ կոչեաց զնոսա և ասէ՝ զինչ կամիք՝ զի արարից ձեզ։ Ասեն ցնա. տէ՛ր՝ զի բացցին աչք մեր։ Եւ գթացեալ Յիսուս մերձեցաւ յաչս նոցա՝ և վաղվաղակի տեսին. և գնացին զհետ նորա։ Իբրև մօտ եղեն յԵրուսաղէմ. և եկին ի Բեթփագէ մերձ ի լեառն Ձիթենեաց. յայնժամ Յիսուս արձակեաց երկուս յաշակերտացն իւրոց։ Եւ ասէ ցնոսա. երթա՛յք ի գեօղ՝ որ առաջի ձեր է. և անդէն գտանէք զէշ կապեալ՝ և յաւանակ ընդ նմին. լուծէ՛ք և ածէ՛ք ինձ։ Եւ եթէ

ոք ասիցէ ինչ ձեզ, ասասջիք, եթէ տեառն իւրեանց պիտոյ են. և վաղվաղակի առաքեսցէ զնոսա: Բայց այս ամենայն եղև՝ զի լցցի բան մարգարէին՝ որ ասէ: Ասացէք դստեր Սիոնի. ահա թագաւոր քո գայ քեզ հեզ. հեծեալ յէշ և յաւանակի իշոյ: Գնացին աշակերտքն. և արարին որպէս հրամայեաց նոցա Յիսուս: Եւ ածին զէշն և զյաւանակն. և արկին ընդնոքօք ձորձս՝ և նստաւ ի վերայ նոցա: Եւ բազում ժողովուրդք տարածեցին զհանդերձս իւրեանց ի ճանապարհին. և այլք հատանէին ոստս ի ծառոց՝ և տարածանէին ի ճանապարհին: Եւ ժողովուրդքն՝ որք առաջի և զկնի երթային, աղաղակէին և ասէին. Օրհնութիւն որդւոյ Դաւթի. օրհնեալ որ գայ յանուն տեառն. օրհնութիւն ի բարձունս: Եւ ի մտանելն նորա յԵրուսաղէմ՝ դղրդեցաւ քաղաքն ամենայն. և ասէ՝ ո՞վ իցէ սա: Եւ ժողովուրդքն ասէին՝ սա է մարգարէն Յիսուս՝ որ ի Նազարեթէ Գալիլեացւոց. Եւ եմուտ Յիսուս ի տաճարն՝ և եհան արտաքս զամենեսին, որք վաճառէինն և գնէին ի տաճարի անդ. և զսեղանս հատավաճառացն կործանեաց. և զաթոռս աղաւնեվաճառացն: Եւ ասէ ցնոսա. գրեալ է՝ տուն իմ տուն աղօթից կոչեսցի. և դուք արարէք զդա այրս աւազակաց: Եւ մատեան առ նա կոյրք և կաղք ի տաճարին. և բժշկեաց զնոսա: Իբրև տեսին քահանայապետքն և դպիրք զսքանչելիսն՝ զորս արար. և զմանկտին որք աղաղակէին ի տաճարին. և ասէին, ովսաննա՝ օրհնութիւն որդւոյ Դաւթի, բար-

կացան։ Եւ ասեն ցնա. լսե՞ս, զի՞նչ ասեն դոքա. ասէ ցնոսա Յիսուս՝ այո՛. չիցէ՞ ընթերցեալ ձեր՝ թէ ի բերանոյ տղայոց և ստնդեայց կատարեցեր զօրհնութիւն։ Եւ թողեալ զնոսա՝ ել արտաքոյ քաղաքին ի Բեթանիայ, և անդ ագաւ։

Սրբասացութիւն Հրեշտակային է։



## ՑԵՐԵԿՈՅԻՆ

Ի յինն ժամուն՝ ժողովելոյն ի տունն եկեղեցւոյն։
Սաղմոս՝ ՂԼ։

Կց. Լերինք ցնծասցեն առաջի տեառն, զի գայ զի հասեալ է տէր ի դատել զերկիր։

Փխ. Օրհնեցէք զտէր յօրհնութիւն նոր, զի սքանչելիս արար։

Ընթերցուածս Յառակաց։
Գլ՝ 8. հմր 22։

Տէր ստացաւ զիս ի սկիզբն ճանապարհաց իւրոց ի գործս իւր, յառաջ քան զյաւիտեանս հաստատեաց զիս։ Ի սկզբանէ յառաջ քան զերկիր առնել, եւ նախ քան զանդունդս գործել, և յառաջ քան զբղխել աղբերաց ջուրց, եւ նախ քան զլերինս հաստատել, և յառաջ քան զամենայն բլուրս՝ ծնաւ զիս։ Տէր արար զշէնս՝ և զանշէնս և զեզերս զբնակեալս ի ներքոյ երկնից։ Յորժամ պատրաստէր զերկինս՝ ընդ նմա էի. և մինչ զատուցանէր զաթոռ իւր ի վերայ հողմոց, եւ յորժամ զօրաւոր առնէր զամպս վերինս, յորժամ անսխալ դնէր զաղբիւրս ի ներքոյ երկնից։ Ի դնել ծովու զգուշութեան նորա. զի ջուրք մի՛ անցցեն ընդ աւփն նորա. ի ժամանակի՝ յորժամ հաստատուն դնէր զհիմունս երկրի։ Ես էի առ նմա պատշաճեալ. ես էի՝ որով ուրախ լինէր տէր հանապազ. և ցնծայի առաջի նորա յամենայն ժամ։ Յորժամ զը-

ւարհացեալ էր զտիեզերս բովանդակել. և ուրախ լինէր յորդիս մարդկան։

Ընթերցուածս Երեմիայ Մարգարէէ։
Բարուք. Գլ՝ 4. հմր 36։

Հայեաց ընդ արևելս Երուսաղէմ. և տես զեկեալ ուրախութիւն քեզ յԱստուծոյ։ Ահաւադիկ գան որդիքն քո՝ զորս յուղարկեցեր. գան ժողովեալք յարևելից մինչև ի մուտս արևու բանիւ սրբոյն. խնդացեալք փառօքն Աստուծոյ։ Մերկեա Երուսաղէմ ըզհանդերձ սգոյ և լլկանաց քոց. և զգեցի՛ր զվայելչութիւն փառացն Աստուծոյ՝ ի յաւիտեան։ Եւ արկ ըզքեւ զկրկնոցն արդարութեան յԱստուծոյ. դի՛ր խոյր ի գլուխ քո՝ զփառաց յաւիտենականին։ Զի ցուցցէ Աստուած ի ներքոյ երկնից զամենայն լուսաւորութիւն քո։ Եւ կոչեսցի քեզ անուն յԱստուծոյ ի յաւիտեան. խաղաղութիւն արդարութեան՝ և փառք Աստուածպաշտութեան։

Պետրոսի Առաքելոյն ի կաթուղիկեայց Առաջին Թղթոյն է Ընթերցուածս։
Գլ՝ 1. համր 3։

Օրհնեալ է Աստուած՝ և Հայր տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի. որ ըստ բազում ողորմութեան իւրում ծնաւ զմեզ վերստին ի յոյսն կենդանի. ի ձեռն յարութեանն Յիսուսի Քրիստոսի ի մեռելոց։ Յանեղծ և յանարատ՝ յանթառամ ժառանգութիւնն՝ որ պահեալ է յերկինս ձեզ։ Որք զօրութեամբն Աստու-

ծոյ պահեալք էիք հաւատովք ի պատրաստեալ փրկու-թիւնն, յայտնիլ ի յետին ժամանակս։ Որով ուրախ լինիջիք՝ որք այժմ սակաւիկ ինչ ըստ պատշաճի խրա-ցըդ տրտմեալ էք ի պէսպէս փորձութիւնս։ Զի հան-դէս ձերոյ հաւատոցն առաւել քան զոսկի կորստա-կան պատուական է. որ հրով փորձեալ՝ գտաւ ի գո-վութիւն և ի փառս. և ի պատիւ յայտնութեանն Յի-սուսի Քրիստոսի։ Զոր ոչն տեսէք՝ և սիրեցէք. ընդ որ այժմ ոչ հայեցեալք՝ բայց հաւատացէք. և ու-րախ էք անճառ և փառաւորեալ խնդութեամբն։ Ըն-կալեալ զկատարածն հաւատոցն ձերոց զոգւոցն փըր-կութիւն։

Ալէլուիա ալէլուիա

Տէր ի տաճար սուրբ իւրում. տէր յերկինս յաթոռ իւրում։

Սրբոյ Աւետարանին Յիսուսի Քրիստոսի՝ որ ըստ Ղուկասու,

Գլ՝ 19. համր 29։

Տէրն մեր Յիսուս Քրիստոս։

Եւ եղև իբրև մերձեցաւ ի Բեթփագէ և ի Բեթա-նիա մօտ ի լեառնն, որ կոչի Ձիթենեաց. առաքեաց երկուս յաշակերտաց իւրոց։ Եւ ասէ. Երթայք ի գեօղդ՝ որ հանդէպ մեր կայ. յոր իբրև մտանէք, գը-տանէք յաւանակ կապեալ. յորում ոք ի մարդկանէ երբէք ոչ նստաւ. լուծէք զնա, և ածէք։ Եւ եթէ

որ հարցանիցէ զձեզ՝ թէ ընդէ՞ր լուծանէք . այսպէս ասասջիք ցնա . թէ տեառն իւրում պիտոյ է ։ Իբրեւ չոգան , որք առաքեցանն , գտին որպէս ասացն ցնոսա . կայր յաւանակն ։ Եւ մինչդեռ լուծանէին զյաւանակն . ասեն տեարքն նորա ցնոսա . զի՞ լուծանէք զյաւանակդ ։ Եւ նոքա ասեն , տեառն իւրում պիտոյ է ։ Եւ ածին զնա առ Յիսուս . և արկին ըզնովաւ հանդերձս , և հեծուցին զՅիսուս ։ Եւ մինչդեռ երթայր , զհանդերձս իւրեանց տարածանէին ըզճանապարհաւն ։ Եւ իբրեւ այն ինչ մերձ եղեւ ի զառ ի վայր լերինն Ձիթենեաց՝ սկսաւ ամենայն բազմութիւն աշակերտացն ուրախութեամբ օրհնել զԱստուած ի ձայն մեծ վասն ամենայն եղելոց զօրութեանցն , զորս տեսին ։ Եւ ասէին , օրհնեալ որ գայ թագաւորդ յանուն տեառն . խաղաղութիւն յերկինս . և փառք ի բարձունս ։ Եւ ոմանք ի Փարիսեցւոցն յամբոխէ անտի , ասեն ցնա . վարդապետ , սաստեա՛ աշակերտացդ քոց ։ Պատասխանի ետ , և ասէ ։ ասեմ ձեզ . զի եթէ դոքա լռեսցեն , քարինքդ աղաղակեսցեն ։ Եւ իբրեւ մերձեցաւ՝ տեսեալ զքաղաքն՝ ելաց ի վերայ նորա , և ասէ ։ Եթէ գիտէիր դու գոնէ յաւուրս յայսմիկ զխաղաղութիւն քո . բայց այժմ ծածկեցաւ յերեսաց քոց ։ Զի եկեսցեն աւուրք ի վերայ քո . և պատեսցեն զքեւ թշնամիք քո պատնէշ . և պաշարեսցեն զքեզ . և նեղեսցեն զքեզ յամենայն կողմանց ։ Եւ յատակեսցեն զքեզ . և զորդիս քո ի քեզ .

երկուս յաշակերտացն իւրոց. Եւ ասէ ցնոսա. Երթայք
դուք ի գեօղդ՝ որ ընդ պէմ ձեր կայ. եւ նոյն ժամայն
իբրեւ մտանէք ի նա, գտանիցէք յաւանակ մի կա-
պեալ. յորոյ վերայ ոչ ոք ի մարդկանէ նստաւ. լու-
ծէք զնա՝ եւ ածէք։ Եւ եթէ ոք ասասցէ ցձեզ՝ թէ
զի՞ լուծանէք զյաւանակդ, ասասջիք, եթէ Տեառն
իւրում պիտոյ է. եւ վաղվաղակի առաքեսցէ զնա այսր։
Չոգան, եւ գտին զյաւանակն կապեալ առ դուրս ար-
տաքոյ ի փողոցի անդ, եւ լուծին զնա։ Եւ ոմանք յորոց
անդ կային՝ ասեն ցնոսա. զի՞ գործէք, զի՞ լուծա-
նէք զյաւանակդ։ Եւ նոքա ասեն ցնոսա՝ որպէս ասացն
Յիսուս. եւ թոյլ ետուն նոցա։ Ածին զյաւանակն
առ Յիսուս. եւ արկանեն ի վերայ նորա զհանդերձս.
եւ նստաւ ի վերայ նորա։ Եւ բազումք զհանդերձս
իւրեանց տարածանէին ի վերայ ճանապարհին. եւ
այլք ոստս ի ծառոց հատանէին՝ եւ արկանէին ընդ ճա-
նապարհաւն։ Եւ որք առաջի եւ զկնի երթային. ա-
ղաղակէին, եւ ասէին. ովսաննա բարձրելոյն։ Օրհ-
նեալ որ գայ յանուն Տեառն. օրհնեալ Արքայու-
թիւնդ եկեալ հօր մերոյ Դաւթի. խաղաղութիւն
յերկինս՝ եւ փառք ի բարձունս։

Շարական ԴՁ ։

Յարժամանէն. (երեք տուն միայն). Տես ի թիւն. 124։

Ձայն Օ՜ջԹէ։

Սրբոյ Աւետարանին Յիսուսի Քրիստոսի որ ըստ Ղուկասու:

Գլ. 18. Համ. 31:

Տէրն մեր Յիսուս Քրիստոս:

Եւ առեալ զերկոտասանսն առանձինն՝ ասէ ցնոսա. Ահաւասիկ ելանեմք յԵրուսաղէմ. եւ կատարեսցին ամենայն գրեալքն Մարգարէիւք վասն որդւոյ մարդոյ: Զի մատնեսցի հեթանոսաց. եւ կատականեսցի՝ եւ հայհոյեսցի՝ եւ թքանեսցի: Եւ խարազանեսցեն, եւ սպանանիցեն զնա. եւ յերիր աւուր յարիցէ: Եւ նոքա ոչ ինչ իմացան յայնցանէ. այլ էր բանն ծածկեալ ի նոցանէ. եւ ոչ գիտէին զասացեալսն: Եւ եղեւ ի մօտ լինելն նորա յԵրիքով՝ կոյր մի նստէր առ ճանապարհաւն մուրացիկ: Իբրեւ լուաւ զանցանել ժողովրդեանն, հարցանէր թէ զի՞նչ իցէ այն: Եւ պատմեցին նմա, թէ Յիսուս Նազովրեցի անցանէ: Աղաղակեաց եւ ասէ. Յիսուս որդի Դաւթի, ողորմեա ինձ: Եւ որք առաջին երթային, սաստէին նմա զի լռեսցէ. եւ նա եւս առաւել աղաղակէր. որդի Դաւթի՝ ողորմեաց ինձ: Զատեալ եկաց Յիսուս. եւ հրամայեաց ածել զնա առ ինքն. եւ իբրեւ մերձ եղեւ առ նա, եհարց զնա եւ ասէ: Զի՞նչ կամիս դու՝ զի արարից քեզ. եւ նա ասէ. Տէր, զի բացցին աչք իմ, եւ տեսից: Եւ Յիսուս ասէ ցնա. Հայեաց, հաւատքդ քո կեցուցին զքեզ: Եւ առժամայն տեսանէ. երթայր զհետ նորա՝ եւ փառաւոր առնէր զԱստուած. եւ ամենայն

[illegible] Ժ.Զ.

[illegible] քո. ([illegible] միայն). [illegible] ի [illegible], [illegible]։

Ձ[illegible] Օ՛րհնի։

Սուրբ Աւետարանն Յիսուսի Քրիստոսի որ ըստ Յովհաննու։

Գլ՝ 12. համ. 12.

Վասն գալստեան Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի.

Ի վաղիւ անդր ժողովուրդ բազում, որ եկեալ էր ի տօնն, իբրև լուան թէ գայ Յիսուս յԵրուսաղէմ. Առին ոստս արմաւենեաց՝ և ելին ընդ առաջ նորա. աղաղակէին և ասէին. ովսաննա. օրհնեալ որ գալոց յանուն տեառն. Թագաւորդ Իսրայէլի։ Եւ գտեալ Յիսուսի էշ մի, նստաւ ի վերայ նորա. որպէս և գրեալ է. Մի երկնչիր դուստր Սիոնի. ահաւասիկ Թագաւոր քո գայ նստեալ ի վերայ յաւանակի իշոյ։ Եւ զայն ինչ ոչ գիտացին աշակերտքն նորա զառաջինն. այլ յորժամ փառաւորեցաւ Յիսուս՝ յայնժամ յիշեցին եթէ այն էր՝ որ գրեալն էր վասն նորա. և զայն արարին նմա։ Եւ ժողովուրդն վկայէր՝ որ էր ընդ նմա, թէ զՂազար կոչեաց և եթ ի գերեզմանէն. և յարոյց զնա ի մեռելոց։ Եւ վասն այնորիկ ընդ առաջ եղև նմա ժողովուրդն. զի լուան եթէ զայն նշանս արարեալ էր նորա։ Իսկ փարիսեցիքն ասէին ընդ միմեանս. տեսանէք՝ զի ոչինչ օգտէք. ահաւասիկ աշխարհս ամենայն զկնի նորա գնաց։ Էին

անդ ոմանք՝ և հեթանոսք յոլովք անդր, զի երկիր-պագանիցեն ի տօնին։ Նոքա մատեան առ Փիլիպպոս՝ որ ի Բեթսայիդայ Գալիլեացւոցն էր, աղաչէին զնա և ասէին. տէր, կամիմք զՅիսուս տեսանել։ Գայ Փիլիպպոս և ասէ ցԱնդրէաս. Անդրէաս և Փիլիպպոս ասեն ցՅիսուս։ Եւ Յիսուս պատասխանի ետ նոցա և ասէ. եհաս ժամ, զի փառաւորեսցի Որդի Մարդոյ։

Շարական ԻԶ։

Ի յարութեան. (երեք տուն միայն). Տես ի Թիւն, 125։

Ճաշու Սաղմոս՝ Ք։

48. Նշանեցաւ առ մեզ լոյս երեսացդ քոց. և ետուր ուրախութիւն սրտից մերոց։

Փխ. Ի կարդալ իմում լուար ինձ Աստուած արդարութեան. ի նեղութենէ ինձ անդորր արարեր. ողորմեաց ինձ և լուր աղօթից իմոց։

Ձայն Աւետարանի Օ՛րհնեա·

Սրբոյ Աւետարանին Յիսուսի Քրիստոսի որ ըստ Մատթէոսի։

Գլ՝ 24. համ. 27։

Տէրն մեր Յիսուս Քրիստոս ասէ։

Որպէս փայլատակն որ ելանէ յարևելից և երևի [illegible] մուտս, այնպէս եղիցի գալուստն Որդւոյ Մարդոյ։ Զի ուր գէշն իցէ, անդր ժողովեսցին ար-

ծուիք։ Վաղվաղակի յետ նեղութեանն աւուրցն այնոցիկ՝ արեգակն խաւարեսցի. և լուսին ոչ տացէ զլոյս իւր. և աստեղք անկցին յերկնից. և զօրութիւնք երկնից շարժեսցին։ Եւ ապա երևեսցի նշան Որդւոյ մարդոյ յերկինս. և յայնժամ կոծեսցին ամենայն ազգք երկրի. և տեսցեն զՈրդի մարդոյ եկեալ ի վերայ ամպոց երկնից զօրութեամբ և փառօք բազմօք։ Եւ առաքեսցէ զհրեշտակս իւր փողով մեծաւ. և ժողովեսցեն զընտրեալս նորա ի չորից հողմոց՝ ի ծագաց երկնից մինչև ի ծագս նոցա։ Ի թզենւոյ անտի ուսարո՛ւք զառակն. զի յորժամ նորա ոստքն կակղասցին, և տերևն ցուիցի, գիտէք թէ մերձ է ամառն։ Նոյնպէս և դուք յորժամ տեսանիցէք զայս ամենայն՝ գիտասջիք թէ մերձ է ի դուրս։ Ամէն ասեմ ձեզ՝ եթէ ոչ անցցէ ազգս այս՝ մինչև այս ամենայն եղիցի։ Երկինք և երկիր անցցեն. և բանք իմ մի՛ անցցեն։

Ապա ասէ ժողովուրդ. Եւ ես խաղաղութեան։ Կցուրդ ի վերուստ։ Եւ [illegible] [illegible],

(Տես ի երես. 145 :)

ոք հարցանիցէ զձեզ՝ թէ ընդէ՞ր լուծանէք. այսպէս ասասջիք ցնա. թէ տեառն իւրում պիտոյ է։ Իբրեւ չոգան, որք առաքեցանն, գտին որպէս ասացն ցնոսա. կայր յաւանակն։ Եւ մինչդեռ լուծանէին զյաւանակն. ասեն տեարքն նորա ցնոսա. զի՞ լուծանէք զյաւանակդ։ Եւ նոքա ասեն, տեառն իւրում պիտոյ է։ Եւ ածին զնա առ Յիսուս. և արկին ըզնովաւ հանդերձս, և հեծուցին զՅիսուս։ Եւ մինչդեռ երթայր, զհանդերձս իւրեանց տարածանէին ըզճանապարհաւն։ Եւ իբրեւ այն ինչ մերձ եղեւ ի զառ ի վայր լերինն Ձիթենեաց՝ սկսաւ ամենայն բազմութիւն աշակերտացն ուրախութեամբ օրհնել զԱստուած ի ձայն մեծ վասն ամենայն եղելոց զօրութեանցն, զորս տեսին։ Եւ ասէին, օրհնեալ որ գայ թագաւորդ յանուն տեառն. խաղաղութիւն յերկինս. և փառք ի բարձունս։ Եւ ոմանք ի Փարիսեցւոցն յամբոխէ անտի, ասեն ցնա. վա՛րդապետ, սաստեա՛ աշակերտացդ քոց։ Պատասխանի ետ, և ասէ. ասեմ ձեզ. զի եթէ դոքա լռեսցեն, քարինքդ աղաղակեսցեն։ Եւ իբրեւ մերձեցաւ՝ տեսեալ զքաղաքն՝ ելաց ի վերայ նորա, և ասէ։ Եթէ գիտէիր դու գոնէ յաւուրս յայսմիկ զխաղաղութիւն քո. բայց այժմ ծածկեցաւ յերեսաց քոց։ Զի եկեսցեն աւուրք ի վերայ քո. և պատեսցեն զքեւ թշնամիք քո պատնէշ. և պաշարեսցեն զքեզ. և նեղեսցեն զքեզ յամենայն կողմանց։ Եւ յատակեսցեն զքեզ. և զորդիս քո ի քեզ.

երկուս յաշակերտացն իւրոց. Եւ ասէ ցնոսա. Երթայք դուք ի գեօղդ՝ որ ընդ պէմ ձեր կայ. և նոյն ժամայն իբրև մտանէք ի նա, գտանիցէք յաւանակ մի կապեալ. յորոյ վերայ ոչ ոք ի մարդկանէ նստաւ. լուծէք զնա՝ և ածէք: Եւ եթէ ոք ասասցէ ցձեզ՝ թէ զի՞ լուծանէք զյաւանակդ, ասասջիք, եթէ Տեառն իւրում պիտոյ է. և վաղվաղակի առաքեսցէ զնա այսր: Չոգան, և գտին զյաւանակն կապեալ առ դուրս արտաքոյ ի փողոցի անդ, և լուծին զնա: Եւ ոմանք յորոց անդ կային՝ ասեն ցնոսա. զի՞ գործէք, զի՞ լուծանէք զյաւանակդ: Եւ նոքա ասեն ցնոսա՝ որպէս ասաց Յիսուս. և թողին նոցա: Ածին զյաւանակն առ Յիսուս. և արկանէին ի վերայ նորա զհանդերձս. և նստաւ ի վերայ նորա: Եւ բազումք զհանդերձս իւրեանց տարածանէին ի վերայ ճանապարհին. և այլք ոստս ի ծառոց հատանէին՝ և արկանէին ընդ ճանապարհաւն: Եւ որք առաջի և զկնի երթային. աղաղակէին, և ասէին. ովսաննա բարձրելոյն: Օրհնեալ որ գայ յանուն Տեառն. օրհնեալ Թագաւորութիւնդ եկեալ Հօր մերոյ Դաւթի. Խաղաղութիւն յերկինս՝ և փառք ի բարձունս:

Շարական ԴՁ:

Օրհնեալ ես. (երեք տուն միայն). Տես ի թիւն. 124:

Ձայն Օ՛ՀԹԷ:

Օրհնեալ Աւետարանիս Յիսուսի Քրիստոսի որ ըստ Ղուկասու ։

Գլ՝ 18. համր 31 ։ .

Տէրն մեր Յիսուս Քրիստոս ։

Եւ առեալ զերկոտասանսն առանձինն՝ ասէ ցնոսա. Ահաւասիկ ելանեմք յԵրուսաղէմ. և կատարեսցին ամենայն գրեալքն Մարգարէիւք վասն որդւոյ մարդոյ ։ Զի մատնեսցի հեթանոսաց. և կատակեսցի՝ և հայհոյեսցի՝ և թքանիցի ։ Եւ իբրև հարկանիցեն, և սպանանիցեն զնա. և յերրորդ աւուր յարիցէ ։ Եւ նոքա ոչ իմացան յայնցանէ. այլ էր բանն ծածկեալ ՚ի նոցանէ. և ոչ գիտէին զասացեալսն ։ Եւ եղեւ ՚ի մօտ լինելն նորա յԵրիքով՝ կոյր մի նստէր առ ճանապարհաւն մուրացիկ ։ Իբրև լուաւ զանցանել ժողովրդեանն, հարցանէր թէ զի՞նչ իցէ այն ։ Եւ պատմեցին նմա, թէ Յիսուս Նազովրեցի անցանէ ։ Աղաղակեաց և ասէ. Յիսուս որդի Դաւթի, ողորմեա ինձ ։ Եւ որք առաջին երթային, սաստէին նմա զի լռեսցէ. և նա ևս առաւել աղաղակէր. որդի Դաւթի՝ ողորմեա ինձ ։ Զատեալ էառ Յիսուս. և հրամայեաց ածել զնա առ ինքն. և իբրև մերձ եկն առ նա, եհարց զնա և ասէ ։ Զի՞նչ կամիս դու՝ զի արարից քեզ. և նա ասէ. Տէր, զի բացցին աչք իմ, և տեսից. Եւ Յիսուս ասէ ցնա. հայեաց, հաւատք քո կեցուցին զքեզ ։ Եւ առժամայն ետես. երթայր զհետ նորա՝ և փառաւոր առնէր զԱստուած. և ամենայն

Եղիշեան Դզ.

Տպարան ... (... միայն). Տփղ. ի Թիֆլիս, 1850.

Ջինէ Օ՛րԹի.

Սրբոյ Աւետարանին Յիսուսի Քրիստոսի որ ըստ Յովհաննու ։

Գլ՝ ԺԲ. համ. 12.

Վասն գալստեան Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի։

Ի վաղիւ անդր ժողովուրդ բազում, որ եկեալ էր ի տօնս, իբրեւ լուան թէ գայ Յիսուս յԵրուսաղէմ. Առին ոստս արմաւենեաց՝ և ելին ընդ առաջ նորա. աղաղակէին և ասէին. ովսաննա. օրհնեալ որ գաս յանուն տեառն. Թագաւորդ Իսրայէլի։ Եւ գտեալ Յիսուսի էշ մի, նստաւ ի վերայ նորա. որպէս և գրեալ է. Մի երկնչիր դուստր Սիոնի. ահաւադիկ Թագաւոր քո գայ նստեալ ի վերայ յաւանակի իշոյ։ Եւ զայն ինչ ոչ գիտացին աշակերտքն նորա զառաջինն. այլ յորժամ փառաւորեցաւ Յիսուս՝ յայնժամ յիշեցին եթէ այն էր՝ որ գրեալն էր վասն նորա. և զայն արարին նմա։ Եւ ժողովուրդն վկայէր՝ որ էր ընդ նմա, թէ զՂազար կոչեաց ի գերեզմանէն. և յարոյց զնա ի մեռելոց։ Եւ վասն այնորիկ ընդ առաջ եղև նմա ժողովուրդն. զի լուան եթէ զայն նշանս արարեալ էր նորա։ Նոքա փարիսեցիքն ասէին ընդ միմեանս. տեսանէք՝ զի ոչինչ օգտէք. ահաւասիկ աշխարհս ամենայն զկնի նորա գնաց։ Էին

ծուլիւ։ Վաղվաղակի յետ, նեղութեանն աւուրցն այ-նոցիկ՝ արեգակն խաւարեսցի. եւ լուսին ոչ տացէ զլոյս իւր. եւ աստեղք անկցին յերկնից. եւ զօրութիւնք երկ-նից շարժեսցին։ Եւ ապա երեւեսցի նշան Որդւոյ Մարդոյ յերկինս. եւ յայնժամ կոծեսցին ամենայն ազգք երկրի. եւ տեսցեն զՈրդի Մարդոյ եկեալ ի վե-րայ ամպոց երկնից զօրութեամբ եւ փառօք բազմօք։ Եւ առաքեսցէ զհրեշտակս իւր փողով մեծաւ. եւ ժո-ղովեսցեն զընտրեալս նորա ի չորից հողմոց՝ ի ծագաց երկնից մինչեւ ի ծագս նոցա։ Ի թզենւոյ անտի ու-սարո՛ւք զառակն. զի յորժամ նորա ոստքն կակղաս-ցին, եւ տերեւն ցուցցի, գիտէք թէ մերձ է ամառն։ Նոյնպէս եւ դուք յորժամ տեսանիցէք զայս ամենայն՝ գիտասջիք թէ մերձ է ի դուրս։ Ամէն ասեմ ձեզ՝ եթէ ոչ անցցէ ազգս այս՝ մինչեւ այս ամենայն եղի-ցի։ Երկինք եւ երկիր անցցեն. եւ բանք իմ մի՛ անցցեն։

Ապա ասէ ժողով. Եւ ես խաղաղութեան։ Վասն ի վերուստ։ Եւ [illegible] [illegible],

(Տես ի թիւ. 145:)

Եւ ապա Սաղմոսն ի գալստեան փառաւորեալ ... ըստ պատշաճի Եկեղեցւոյն ։

Եւ Եւս խաղաղութեան զՏէր աղաչեսցուք ընկալ կե"։
Օրհնութիւն և փառք Հօր։ Այժմ և միշտ և յաւ։

Սաղմոս Ձայն

Խոնարհեցո Տէր զունկն քո և լուր ինձ. զի աղքատ և տնանկ եմ ես։

Պահեա զանձն իմ Տէր. և փրկեա զծառայս քո Աստուած իմ որ ի քեզ յուսացայ։

Ողորմեա ինձ Տէր զի առ քեզ աղաղակեցից զօրհանապազ, ուրախ արա զանձն ծառայի քո, զի առ քեզ Տէր համբարձի զանձն իմ։

Զի դու Տէր քաղցր ես ուղիղ ես բազումողորմ առ ամենեսեան որք կարդան առ քեզ։

Ունկնդիր լեր Տէր աղօթից իմոց, և նայեաց ի ձայն խնդրուածաց իմոց։

Յաւուր նեղութեան իմոյ կարդացի առ քեզ, և լուար ինձ։

Շարական Ձայն

Ո՛ւրա՜խ լե՛ր Եկե՛ղեցի Սուրբ ի՛ գա՜լ՛ստեա՜ն տէ՜րն Մխի՛ծնին. ուրա՜խ լեր և՛ ցընծա՜ հա՛նդերձ ա՜մենա՛յն որդո՜վք։

Երկիցս կրկնեա։ Ապա

Ոչ ոք է նման քեզ յԱստուածս Տէր, եւ ոչ ոք է որպէս զգործս քո։

Զամենայն ազգս զոր արարեր՝ եկեսցեն եւ երկրպագեսցեն առաջի քո, եւ փառաւոր արասցեն զանուն քո յաւիտեան։

Մեծ ես դու Տէր եւ առնես զսքանչելիս, եւ դու միայն ես Աստուած։

Առաջնորդեա ինձ ի ճանապարհի քում, եւ գնացից ի ճշմարտութեան քում, եւ ուրախ եղիցի սիրտ իմ երկնչիլ յանուանէ քումմէ։

Խոստովան եղէց առ քեզ Տէր Աստուած իմ բոլորով սրտիւ իմով. փառաւոր արարից զանուն քո յաւիտեան։

Մեծ եղեւ ի վերայ իմ ողորմութիւն քո Տէր, եւ փրկեցեր զանձն իմ ի դժոխոց ներքնոց։

Շարական ԲԿ.

Ցնծա յոյժ դուստր վերին Սիոնի. ահա թագաւոր քո գայ նստեալ ի յաւանակի նորոյ. արդար եւ փրկիչ փրկէ եւ կեցուցանէ։

Երկյո հրհնեա ։ Ասա

Աստուած՝ անօրէնք յարեան ի վերայ իմ, եւ ժողովք հզօրաց խնդրեցին զանձն իմ, եւ ոչ համարեցան զքեզ Աստուած առաջի իւրեանց։

Այլ դու Տէր Աստուած իմ՝ գթած ես եւ ողորմած,

ի նո՛ր յաւա՛նա՛կի՛ ։

Երգս հրաշալի ։ Ասա

Տէր կարդացի առ քեզ և լուր ինձ, հայեաց ի ձայն աղօթից իմոց ի կարդալ իմում առ քեզ ։

Ուղղեսցին աղօթք իմ, որպէս խունկ առաջի քո Տէր. համբարձումն ձեռաց իմոց, պատարագ երեկոյի ։

Դիր Տէր պահապան բերանոյ իմոյ. և դուռն ամուր շրթանց իմոց, զի մի խոտորեսցի սիրտ իմ բանս չարութեան ։

Ի պատճառել պատճառս մեղաց ընդ մարդս՝ որք գործեն զանօրէնութիւն. և ոչ հաղորդեցայց ընտրելոց նոցա ։

Խրատեսցէ զիս արդարն ողորմութեամբ՝ և յանդիմանեսցէ. իւղ մեղաւորի մի օծցէ զգլուխ իմ, այլ աղօթք իմ ի կամս նոցա ։

Կլանեցան մերձ առ վիմին դատաւորք նոցա. լուիցեն բանից իմոց և քաղցրասցին ։

Որպէս թանձրութիւն հողոյ՝ որ պատառեալ է ի վերայ երկրի. ցրուեցին ոսկերք նոցա մերձ ի դժոխս ։

Առ քեզ Տէր Տէր են աչք իմ, ի քեզ յուսացայ՝ մի հաներ զհոգի յինէն ։

Պահեա զիս յորոգայթէ զոր թագուցին ինձ, ի գայթակղութենէ գործողին զանօրէնութիւն ։

Անկցին ի ցանցս նորա մեղաւորք, միայն եմ ես մինչև անցից ։

## ՔԱՐՈԶ

Վասն խաղաղութեան ամենայն աշխարհի, և հաստատութեան սրբոյ Եկեղեցւոյ զՏէր աղաչեսցուք։ Աստուծոյ ամենեցուն մարդասիրութեամբ։

Տէր ողորմեա․ Տէր ողորմեա․ Տէր ողորմեա։

## ԱՂՕԹՔ

Հայր գթած՝ բարեխնամող՝ արարիչ ամենայն արարածոց․ ընկալ զպաղատանս ծառայից քոց ի ժամ երեկոյիս․ որ առաջի են առ ամենեցեան՝ պարգևօք բարերարութեան քո։ Ողորմեա մեզ ամենայն աշխարհի, և Եկեղեցւոյ քում սրբոյ․ հիւանդաց՝ վշտացելոց՝ ճանապարհորդաց՝ նաւորդաց՝ խոստովանողաց՝ ապաշխարողաց՝ և հոգւոցն հանգուցելոց։ Զի դու տէր ամենակալ՝ գիտես զպէտս մեր՝ և զկարիս առաւել քան զոր խնդրեմք և իմանամք․ և քեզ ընդ որդւոյ և ամենասուրբ հոգւոյդ վայելէ փառք իշխանութիւն և պատիւ․ այժմ և միշտ և յաւէտ”։

*Զկնի Հայր գթածին՝ զգեցցի մինն ի պաշտօնէութեանց Քահանայից, և երթիցէ ի դուռն Եկեղեցւոյն։*

*Եւ ասեն բարձր ձայնիւ Սաղմոս ճժէ։*

48․ Օրհնեալ եկեալ անուամբ Տեառն, և օրհնեցաք զքեզ ի տանէ Տեառն։

Փխ․ Խոստովան եղերուք Տեառն, զի քաղցր է, զի յաւիտեան է ողորմութիւն նորա։

Ասասցէ տունն Իսրայէլի՝ զի յաւիտեան է ողոր-

Ոչ ոք է նման քեզ յԱստուածս Տէր, եւ ոչ ոք է որպէս զգործս քո։

Զամենայն ազգք զոր արարեր՝ եկեսցեն եւ երկիր-պագցեն առաջի քո. եւ փառաւոր արասցեն զանուն քո յաւիտեան։

Մեծ ես դու Տէր եւ առնես սքանչելիս, եւ դու միայն ես Աստուած։

Առաջնորդեա ինձ ի ճանապարհի քում, եւ գնացից ի ճշմարտութեան քում, եւ ուրախ եղիցի սիրտ իմ երկնչել յանուանէ քումմէ։

Խոստովան եղէց առ քեզ Տէր Աստուած իմ բոլորով սրտիւ իմով. փառաւոր արարից զանուն քո յաւիտեան։

Մեծ եղեւ ի վերայ իմ ողորմութիւն քո Տէր, եւ փրկեցեր զանձն իմ ի դժոխոց ներքնոց։

Շարական ԲԿ.

Ցը՛նծա՜ յո՛յժ դո՛ւստր՜ր վերի՜ն Սիո՞վնի. ա՛հա թա՜գա՛ւո՜ր քո գայ նը՛ստեալ ի՛ յաւա՞նակի՛ նորոյ. ա՛րդար ե՛ փը՛րկի՜չ փը՛րկէ ե՜ կեցո՛ւցանէ՜։

Երիցս հրհնեա։ Ալա

Աստուած՝ անօրէնք յարեան ի վերայ իմ, եւ ժողովք հզօրաց խնդրեցին զանձն իմ, եւ ոչ համարեցան զքեզ Աստուած առաջի իւրեանց։

Այլ դու Տէր Աստուած իմ՝ գթած ես եւ ողորմած,

Երկայնամիտ բազմողորմ և ճշմարիտ, Նայեաց առ իս և ողորմեա ինձ։

Տուր զօրութիւն ծառայիս քո, կեցո զորդի աղախնոյ քո, և արա առ իս նշան բարութեան։

Տեսցեն ատելիք իմ և ամաչեսցեն, զի դու Տէր օգնեցեր ինձ և մխիթարեցեր զիս։

Շարական ԲԿ ։

Զօրաւ ընծայեցիր և բերկրեալ ժողովուրդ Աստուածոյ. մատո զոստրս ծաղկեալս հաւատով և պատ. օրհնեալ որ ... թագաւոր ի տէր զիրա ց։

Երկիցս կրկնել։ Եւ այլ

Փառք Հօր և Որդւոյ։ Այժմ և միշտ և յաւիտ։

Փառք քեզ Աստուած՝ փառք քեզ. յաղագս ամենայնի Տէր փառք քեզ։

Եւ ես խաղաղութեան։ Օրհնութիւն և փառք Հօր։

Սաղմոս ՃԼԹ ։

Ապրեցո զիս Տէր ի մարդոյ չարէ, յառնէ անիրաւէ փրկեա զիս։

Խորհեցան զանօրէնութիւն ի սիրտս իւրեանց, զօր ամենայն պատրաստեցան ի պատերազմ։

Սրեցին զլեզուս իւրեանց որպէս օձի, և թոյնք իժից ի ներքոյ շրթանց նոցա։

Պահեա զիս Տէր ի ձեռաց մեղաւորի, և ի մարդոյ

### ՔԱՐՈԶ

Վասն խաղաղութեան ամենայն աշխարհի, և հաստատութեան սրբոյ Եկեղեցւոյ զՏէր աղաչեսցուք։ Ըսանցուք ամենեքեան միաբանութեամբ։

Տէր ողորմեա. Տէր ողորմեա. Տէր ողորմեա։

### ԱՂՕԹՔ

Հայր գթած՝ բարեխնամողդ՝ արարիչ ամենայն արարածոց. ընկալ զպաղատանս ծառայից քոց ի ժամ երեկոյիս. որ աւանդէ եմ առ ամենեցեան՝ պարգևօք բարերարութեան քո։ Ողորմեա մեզ ամենայն աշխարհի, և Եկեղեցւոյ քում սրբոյ. հիւանդաց՝ վշտացելոց՝ ճանապարհորդաց՝ նաւորդաց՝ խոստովանողաց՝ ապաշխարողաց՝ և հոգւոցն հանգուցելոց։ Զի դու ես Տէր ամենակալ՝ գիտես զպէտս մեր՝ և զկարիս առաւել քան զոր խնդրեմք և իմանամք. և քեզ ընդ որդւոյ և ամենասուրբ հոգւոյդ վայելէ փառք իշխանութիւն և պատիւ. այժմ և միշտ և յաւ.ի»։

*Զկնի Հայր գթածին՝ զգեցցի մինն ի պաշտօնէութեանց Փա-Հանայից, և եկեսցէ ի դուռն Եկեղեցւոյն։*

*Եւ ասեն բարձր ձայնիւ Սաղմոս ՃԺԷ։*

48. Օրհնեալ եկեալ անուամբ տեառն, և օրհնեցաք զքեզ ի տանէ տեառն։

Փխ. Խոստովան եղերուք տեառն, զի քաղցր է, զի յաւիտեան է ողորմութիւն նորա։

Ասասցէ տունն Իսրայէլի՝ զի յաւիտեան է ողոր-

մութիւն նորա:

Ասասցէ տունն Ահարոնի՝ զի յաւիտեան է ողորմութիւն նորա:

Ասասցեն երկիւղածք Տեառն՝ զի յաւիտեան է ողորմութիւն նորա:

Ի նեղութեան իմում ես առ Տէր կարդացի, և լուաւ ինձ յանդորր:

Տէր է իմ օգնական, և ես ոչ երկնչեայց. զի՞ արասցէ ինձ մարդ:

Տէր է իմ օգնական, և ես տեսից ի թշնամիս իմ:

Բարւոք է յուսալ ի Տէր՝ քան յուսալ ի մարդիկ. բարւոք է յուսալ ի Տէր քան յուսալ յիշխանս:

Ամենայն ազգինք շրջեցան զինև, և անուամբ Տեառն յաղթեցի նոցա:

Շրջելով շրջեցան զինև, պաշարեցին զիս ի միասին. և անուամբ Տեառն վանեցի զնոսա:

Շուրջ եղեն զինև որպէս մեղուք վառեցան, բորբոքեցան որպէս փուշք ի հուր. և անուամբ Տեառն մերժեցի զնոսա:

Ի մերժելն դրդուեցայ, և եղէ մերձ ի գլորել. և Տէր ընկալաւ զիս:

Զօրութիւն իմ և օգնութիւն իմ Տէր, և եղև ինձ ի փրկութիւն:

Ձայն ցնծութեան փրկութեան ի յարկս արդարոց:

Աջ Տեառն արար զօրութիւն, աջ Տեառն բարձր արար զիս. և աջ Տեառն արար զօրութիւն:

Ոչ մեռայց, այլ կեցից՝ և պատմեցից զգործս տեառն։

Խրատելով խրատեաց զիս տէր. և ի մահ ոչ մատնեաց։

Բացէք ինձ զդրունս արդարութեան, զի մտից ընդ այն՝ և խոստովան եղէց տեառն։

Եւ ասեն մեղեդի Յարութեան ԲԶ։

Շնորհեա մեզ տէր արթնութիւն ընդ իմաստուն կուսանացն. և զհոգւոյս մերոյ լապտերս պայծառացո։ Երկնչիմք ի քէն տէր զարհուրեալք ի պատասխանւոյն, զամէնն ասելով եթէ ոչ գիտեմ ըզձեզ։ Յորժամ գաս փառօք Հօր դատել ըզգործեալս ամենայն. շնորհեա մեզ տէր կալ ի յաջմէ քումմէ։ Բացցի մեզ դուռն ողորմութեան երկնաւորի փեսային, և մտցուք ի յառագաստ ընդ իմաստուն կուսանսն։ Ժամանեսցուք ընդ առաջ փեսային, և մտցուք ի յառագաստ նորա. զի մի մնասցուք արտաքոյ որպէս յիմար. կուսանքն։ Պայծառասցին լապտերք հոգւոց մերոց, և բազմեցուսցես ըզմեզ ընդ հրաւիրեալսն ի կոչումն արքայութեանն երկնից։

*Եւ յաւարտելն՝ սկսանելոյ առնել զդեղեալ Քահանային աղօթողըմ ձայնիւ. (քանզի զկատարածն գալստեանն՝ և զդատաստանի աւուրն ունի զխորհուրդ.)*

Բա՛ց մեզ Տէր, բա՛ց մե՛զ Տէ՛ր, բա՛ց մե՛զ Տէ՛ր զդո՛ւռն ո՛ղո՛րմութեան, որ ա՛ղաղակեմք կարդա՛մք առ՛ քե՛զ։

*Եւ մի ոմն ի Քահանայիցն զպատմուճանեալ ի ներքուստ ասիցէ։*

Ո՞վ ե՛ն սոքա, զի՝ բա՛ցցե՛ն. զի այս դուռն Տեա՛ռն է՛. և արդա՛րք մտանե՛ն ընդ սա՛։

*Եւ Քահանայն արտաքուստ ասիցէ։*

Ո՞չ թէ միայն արդա՛րք մտա՛նե՛ն. այլ և մեղա՛ւո՛րք խոստովանութեամբ և ապաշխարութեամբ արդա՛րացեալք մտանե՛ն ը՛նդ սա՛։

*Ի ներքուստ ասիցէ։*

Զի սա՛ է՛ դո՛ւռն երկնից և հովի՛ւ տրամա՛ութեա՛ն, զոր ուխտեաց Աստուած Յակո՛վբայ, արդարոց հանգի՛ստ, մեղաւորաց քաւա՛րա՛ն, Քրիստոսի ա՛րքայարա՛ն, հրեշտակաց բնակա՛րա՛ն, Սրբոց ժողովա՛րա՛ն, անդէ՛ ապաքինեք, և տան Ա՛ստո՛ւծո՛յ։

*Եւ Քահանայն արտաքուստ ասիցէ։*

Արժա՛ն և ճշմարիտ են այդոքիկ զորս ասեսդ վասն

Եւ ապա Քահանայն աղօթս ասէ :

Բացէք ինձ զդրունս արդարութեան, զի մտից ընդ այն և խոստովան եղէց Տեառն :

Եւ բացցին դրունք, և ժողովուրդն ամենեքեան մտցեն յեկեղեցին հոգևոր ուրախութեամբ : Եւ սկսանիցեն Շարականն Դկ :

Զողորմութեա՛ն քո դըրունսըն բա՛ց մե՛զ Տէր․ և արժանի ա՛րա՛ զմեզ լուսեղէն յարկա՛ց քոց ընդ-սա՛ւրբըս քո՛ : Ի պատրաստեա՛լ քո յօթևա՛նըս սըրբո՛ց քոց ընկա՛լ և ը՛զմեզ Փըրկիչ յորդէգրութիւն ի դըրկութեա՛ն կենա՛ց : Ի Նըստիլ քո յատենի՛ դատա՛ւոր ահեղ խնայեա՛ յարարա՛ծըս քո, բարե-խօսութեամբ և աղօթի՛ւք սուրբ ճը՛գնա՛ւորա՛ցն :

Ձայնի Օ՛քթէ

Սրբոյ Աւետարանիս Յիսուսի Քրիստոսի՝ որ ըստ Յովհաննու :

Գլ՝ 12. Համ 44.

Ասէր Տէր Յիսուս Քրիստոս :

Եւ Յիսուս աղաղակէր, և ասէր․ որ հաւատայ յիս՝ ո՛չ հաւատայ յիս, այլ յայն՝ որ առաքեացն զիս : Եւ որ տեսանէ զիս, զայն տեսանէ՝ որ առաքեացն զիս : Ես լոյս՝ յաշխարհ եկի․ զի ամենայն, որ հաւատայ յիս, ի խաւարի մի՛ մնասցէ : Եւ եթէ ոք լուիցէ բանից իմոց, և ո՛չ պահեսցէ, ես ո՛չ դատեմ զնա․ քան-

զի ոչ եկի, թէ դատեցից զաշխարհ. այլ զի փրկեցից զաշխարհ։ Որ անարգէ զիս, եւ ոչ ընդունի զբանս իմ. գոյ՝ որ դատէ զնա. բանն, զոր ես խօսեցայ, նա դատէ զնա յաւուրն յետնում։ Զի ես յանձնէ իմմէ ոչ խօսեցայ. այլ որ առաքեացն զիս Հայր, նա ետ ինձ պատուէր՝ զինչ ասացից՝ եւ զինչ խօսեցայց։ Եւ գիտեմ, թէ պատուէրն այն կեանք են յաւիտենականք. արդ զոր ես խօսիմ, որպէս ասաց ինձ Հայրն՝ այնպէս խօսիմ։

Զինչ ժողով. Ընթերցուածք։ Կեցո Տէր՝ չոյնի։
Աշօլե. Թագաւոր խաղաղութեան։

Տես ի Թիւն: 114

Ե. օրչափն է խաղաղութեան։





# Ա Ւ Ձ Գ

# ԵՐԿՈՒՇԱԲԱԹԻ



## Ի ԳԻՇԵՐԻՆ

### Օրհնութիւն ԲՁ ։

Անեղն ի Հօրէ ծընեալ Որդի յանէից գոյացոյց զեղեալքս զերկնային և զերկրաւորս էութիւն. արարածք ամենայն տուք փառս արարչին յաւիտենից ։ Պատկեր աներեւոյթ փառացըն Հօր, ի պատկեր բարերարութեան իւրոյ արար ըզմարդկային բընութիւնս. արա՛ ։ Լոյսն ի Հօրէ լուսոյ ծագեալ լուսափայլ զարդարեաց զադամ, ի դրախտին եդեալ անմահ տընկոցն երկրագործ. արա՛ ։

Եկայք որդիք մարդկան այսօր ողբասցուք ըզգօրն ըզվըտանգ. որ մերկացաւ մեղօք ըզփառս արարչին, և զգեցաւ զթըզենոյն ծածկոյթ փոխանակ անճառ լուսոյն ։

Թագաւոր փառաց քեզ սպասեսցուք պաս-

րա՛ստեա՞լք արթնութեամբ. ը՛նդառաջե՜լ ո՜ր գա՞ս ի դա՛տել զերկի՜ր։ Անարժ՛ան վառեալ լապտե՛րբք հաւատոյ ը՛նդ գա՛ստ իմա՛ստու՜ն կուսանացն, մը-տանել ի յառա՛գաստ ընդ ե՛րկնաւո՜ր փե՛սայի՜ն։ Փութասցո՛ւք կանխեալ յա՛ռա՞ջ քան ըզձա՛յն Աստ-ուածայի՞ն բարբառոյն. զի՛ մի՛ մնասցուք ա՛րտա՜-քըս ը՛ստ յիմա՞ն հի՛նգ կուսանա՜ցն։

Ո՛ր նըստիս ի քերովբէս Աստուա՞ծ բա՜նդ. ա՛յ-սօ՜ր վասըն մե՛ր խոնարհութեամբ նը՛ստա՞ր ի՛ յէ-րինջ՛ն Ձիթենեաց. օ՛րհնեմք ըզքե՞զ անդա՛դար եր-գո՜վ։ Ո՛ր համագոյդ ես խո՛րհըրդոցըդ հա՛յրե՞նի, ա՛շակերտա՛ց քոց ծանո՛ւցե՞ր ը՞զխորհուրդ քո՛ զա-լրատեանն. օ՛րհ”։ Ո՛ր ամենայնից ես արա՛րիչ և բա-տեղծի՛չ կենդա՛նո՞ւթեան. ա՛յսօ՜ր ըզծածկեա՛լ խոր-հո՛ւրդ երրորդութեանըդ յա՛յտնեցեր եկեղե՛ցւոյ սըր-բո՞յ քո. օ՛րհ”։

Շնո՛րհեա մեզ տէ՜ր արթնութիւն ընդ ի՛մա՛ս-տո՞ւն կուսանացն. և զհոգւո՛յ մերոյ լապտե՛րըս պա՜յծա՛ռացո՜։ Ե՛րկրպագեմք ի քէ՛ն տէ՞ր զարթու-ցեա՜լք ի պա՛տասխանւոյն, զա՛մենն ասելով եթէ ո՞չ գի՜տե՛մ ըզձե՜զ։ Յո՛րժամ գա՛ս փառօք Հօր դա-տե՛լ ըզկենդանիս ամենայն. շնո՛րհեա մեզ տէր կա՞լ ի յա՛ջմէ քումմէ՜։ Բա՛ցցէ մեզ դուռն ողո՛րմու-

## ՄԱՂԹԱՆՔ

Փառք հրաշափառ Յարութեան"։ (Տես ի Թիւ. 42։)

## ՔԱՐՈԶ

Վասն գտանելոյ մեզ զշնորհս և զողորմութիւն ի բարերար տեառնէ մերմէ՝ զՏէր աղաչեսցուք։

Տէ՛ր ողո՛րմեա՛։

Վասն փրկելոյ զմեզ ի զրպարտութենէ մարդկան և յորոգայթից սատանայի՝ զՏէր աղաչեսցուք։

Վասն ամենայն անձանց քրիստոնէից և տանց հաւատացելոց զՏէր աղաչեսցուք։

Վասն որք ի լերինս յայրս և ի վիմապարս բնակեալ են սուրբ հարքն մեր՝ զՏէր աղա։

Վասն որք սաղմոսիւք և օրհնութեամբ կատարեն զամենայն ժամանակս կենաց իւրեանց՝ զՏէր աղա։

Վասն հոգւոցն։ Եւ ևս միաբան։ Զանձինս մեր։

Ողորմեաց մեզ։

## ԱՂՕԹՔ

Գոհանամք զքէն Տէր Աստուած մեր, որ զարթուցեր զմեզ ի հանգստենէ քնոյ շնորհիւ ողորմութեան քո։ Զարթո զմիտս մեր արդարութեամբ առ քեզ Տէր Աստուած մեր, զի տեսցեն աչք մեր զփրկութիւն քո։ Սկսցէ և բնակեսցէ առ մեզ Աստուածութիւն քո. և ողորմութիւն քո հովանի և պահապան լիցի ի վերայ պաշտօնէից քոց։ Եւ զմեզ զծառայքս քո արժանի արա ի տուէ և ի գիշերի և յամենայն ժամու միշտ խորհել ի սէր պատուիրանաց քոց։ Եւ

գոհանալով փառաւորեմ զՀայր և զՈրդի և զՍուրբ Հոգիդ, այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից։

Խաղաղութիւն ամենեցուն
Աստուծոյ երկրպագեսցուք

Կենդանարար զօրութիւն և աղբիւր անմահութեան, դու ես Քրիստոս Աստուած Փրկիչ մեր։ Որ շնորհեցեր մեզ ի մէջ գիշերի յառնել և խոստովան լինել առ քեզ վասն իրաւանց և արդարութեան քո։ Եւ այժմ աղաչեմք զքեզ Տէր Աստուած մեր, տուր զմեզ արթունս և պատրաստս ի ժամ առաւօտու ընդ սուրբս քո։ Եւ ընդ նոսին գոհանալով փառաւորել զքեզ ընդ Հօր և ընդ Հոգւոյդ Սրբոյ, այժմ և միշտ և՚՚։

Ալէ՛լուիա. ալէ՛լուիա. ալէ՞լուիա։

Զի նա՛ ասաց, և եղեն. հրամայեաց և հաստատ՞եցան։ Կարգեա՛ց զնոսա յաւիտեան. սահման եդ որք ոչ ա՞նցանե՛ն։

Ալէ։ Ի սկզբանէ՛ տէր զհիմունս երկրի հաստատեցեր. և գործք ձեռաց քոց ե՞ն երկինք։ Նոքա՛ կորնչին, և դու կաս և մնաս յա՞ւիտեան։

Փա՛ռք և Հր՚՚. Ա՛յժմ միշտ և՚՚։

Ալէլուիա. ալէ՛լուիա. ալէլու՛իա՞։

ՄԱՂԹԱՆՔ

Գոհութեամբ և ճշմարիտ խոստովանութեամբ անդադար փառաւորեմք զՀայր և զՈրդի և զՍուրբ Հոգիդ, այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից. ամէն.

*Կարգաւորութիւն հաստատեաց աղօթից առաւօտու ժամուն։ Որ կատարի ի դէմս Որդւոյն Աստուծոյ. որ երեւեցաւ Իւղաբերիցն։*



*Օրհնեալ Տէր մեր Յիսուս Քրիստոս. ամէն։*
*Հայր մեր որ յերկինս ես"։*

*Լցաք առաւօտու ողորմութեամբ քով. ցնծացաք և ուրախ եղաք զամենայն աւուրս կենաց մերոց։*
*Ուրախ եղաք փոխանակ։* (*Տես ի Թիւն*. 46։)

ՀԱՐՑ ԲՁ

*Որ արարիչդ ես յաւիտենից, և ստեղծեր զարարածս ամենայն յոչնչէ. ըզքեզ օրհնեմք Աստուած հարցըն մերոց։ Որ թագաւորդ ես թագաւորաց. և շնորհես բանաւոր կենդանի մարդ ի հողոյ. ըզքեզ"։ Որ ապաւէնդ ես մոլորելոց. և խնամես զյուսացեալքս ի քեզ զքո տեսչութեամբդ. ըզքեզ օրհնեմք Աստուած հար։*
*Գ. Ըզտէր օրհնեցէք եւ բարձր արարէք ըզնա յաւիտեան։*

Փառք Հօր եւ Որդւոյ եւ Հոգւոյն Սրբոյ։

*Օրհնեցէք. Զթագաւորն և զԱստուածն որ նըմա միայնոյ վայելէ օրհնութիւն. եւ"։*

Այժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւիտենից, ամէն:

Օրհնեսցէ. Զի ծանոյց մեզ սքանչելի խորհուրդ Սուրբ Երրորդութեան և զմի Աստուածութեանըն Քրիստոս. եւ":

## ՔԱՐՈԶ

Եկեալքս ամենեքեան ի սուրբ (Տես ի Թիւն. 52:)

Մեծացուսցէ ԲՁ

Զքեզ Հայր յառաջ քան զյաւիտեանս բարեբանեն դասք անմարմնոց հրեշտակաց, ձայնիւ երգով գոչեն և ողաղակեն, Աստուած աստուծոց և տէր տերանց փրկիչ գովլով: Առաքեցեր ըզքո միածինըդ մարմնանալ ի սուրբ կուսէն, և անարատ ծընանիլ յորովայնէ անապականն, բառնալով ըզ մեր նեղութիւնս. Աստուած":

Փառք Հօր եւ". Այժմ եւ միշտ":

Շնորհք բարի յԵրուսաղէմ երեւեցաւ հեթանոսաց. զի արարիչն յաւիտենից տըղայ եղեալ յորդէգրութիւն կենաց կոչէ. Աստուած":

Քարոզ՝ Սուրբ զԱստուա": Աղօթք՝ Ընկալ Տէր:
(Տես ի Թիւն. 55:)

Ողորմեա ԲՁ

Առ ամենեսեան գըթած Քրիստոս թագաւոր

խաղաղութեան. ընդ քեզ պաշտօնեայք մտօք մար-դասէր։ Որում այսօր փափագեալ ցանկայր հոգ-ւով եւ մարմնով. մայր որդւովք խըռնեալ խնդրէր ըզբարձրագոյն զփառս յերկրին կենդանեաց։

Փառք Հօր եւ". Այժմ եւ միշտ":

Տըւողդ ըզկեանս անմահ առ քեզ ապաղակեմք եւ միաբան հայցեմք, շնորհեա եւ մեզ տէր կալ ի յաջմէ քումմէ։

ՔԱՐՈԶ

Երկրպագեմք՝ (Տես ի Թիւն. 58։)

Տէր յերկնից ԲՁ

Ըզքեզ օրհնեմք որ բաշխող ես բարութեանց, եւ հայցեմք որպէս ի մարդասիրէ. ընդ մօր քո ընտ-րելոցն զխնամատարն աշխարհին։ Զի դու ես տէր յորմէ հայցէր մայրն հաւատով հանդերձ որդւովք սըրբեցելովք ընդ աջմէ քո փառաց եւ յահեկէ. ընդ որս եւ մեք աղաչեմք զի դասեսցես ընդ սուր-բըս քո։

Փառք Հօր եւ". Այժմ եւ միշտ":

Այլ դու բարձրեալ Փրկիչ որ վասն մեր խոնար-հեցար, արժանի արա ըզմեզ ըմպել զբաժակ պատ-ուիրանի կենաց քոց տէր. որով կացցուք յաջմէ քումմէ ի հանդերձեալ քում գալըստեան։

Փառք ի բարձունս՝ (Տես ի Թիւն. 61:)

ԵՐԳ

Ի սկզբանէ տէր զերկիր հաստատեցեր. և գործք ձեռաց քոց երկի՞նք են:

Նոքա կորընչին և դու կաս և մնաս յաւի՞տեա՜ն:

Քարոզ Փառաւորեսցուք և Աղօթք Գոհանամք զՄանկունքն Շարականն (Տես ի 63 էն ց66 էջն:)

Մանկունք ԲՁ

Ա՜լ՜լէ՜լո՞ւիա. ա՜լէ՜լո՜ւիա. ա՜լ՜լէ՜լո՞ւիա՜:
Այսօր ը՛նդ զօ՜րս ե՛րկնի՜ց հա՜մա՛ձա՛յնեալ միաբանա՛կա՞ն ձա՞յնիւ ե՛րգե՛մք ա՛սե՛լով. ա՜...:

Փառք Հօր եւ". Այժմ եւ միշտ":

Երկրպա՛գո՜ղքս ը՜նդ ե՛րկնա՛յինսն, հո՛գեղէ՜նքս ընդ հրե՛ղէնսն. միաբանա՛կա՞ն ձա՞յնիւ ե՛ր":

Քարոզ՝ Վասն խաղաղութեան: Աղօթք՝ Սուրբ ես տէր. (Տես ի Թիւն. 67:)

Ապա սաղմոս ՃԳ. ողբաձայն ասա:

ԿՑ. Խոստովանութիւն և մեծ վայելչութիւն զգեցար. արկար զլոյս որպէս զօթոց. ձգեցեր զերկինս որպէս խորան, և արկար ի վերայ ջուրց զվերնայարկս նորա:

ՓԽ. Օրհնեա՛ անձն իմ զտէր. տէր Աստուած իմ

մեծ եղեր յոյժ։

Խոստովանութիւն և մեծ վայելչութիւն զգեցար. արկար զլոյս որպէս զօթոց. ձգեցեր զերկինս որպէս խորան. և արկար ի վերայ ջուրց զվերնայարկս նորա։

Որ դնէ յամպս զգնացս իւր. և շրջի նա ի վերայ թեւոց հողմոց։

Որ արար զհրեշտակս իւր յոգիս. և զպաշտօնեայս իւր ի հուր կիզելոյ։

Հաստատեաց զերկիր ի վերայ հաստատութեան իւրոյ, զի մի՛ սասանեսցի յաւիտեան։

Խորք որպէս զգեստ վերարկու է նորա ի վերայ լերանց կացցեն ջուրք։

Ի սաստէ քումմէ փախիցեն, և ի ձայնէ որոտալոյ քումմէ սարսեսցեն։

Ելանեն լեռնանան և իջանեն դաշտանան, ի տեղի յոր հաստատեցեր զնոսա։

Սահման եդեր և ոչ անցանեն. և ոչ ևս դառնան ի ծածկել զերկիր։

Առաքեցեր զաղբերս ընդ ծործորս. ի մէջ լերանց գնասցեն ջուրք։

Արբուցանել զամենայն գազանս վայրի. յագեսցին ցիռք ի ծարաւս իւրեանց։

Անդ թռչունք երկնից բոյնս դիցեն. և ի միջոյ վիմաց տացեն զձայնս իւրեանց։

Արբուցանել զլերինս ի շտեմարանաց իւրոց. ի պտղոյ գործոց քոց լցցի երկիր։

Բուսուցեր զխոտ ի լերինս, զդալարի ի ծառայութեան մարդկան։

Հաներ զհաց յերկրէ. գինի ուրախ առնէ, իւղ զուարթ, և հաց հաստատէ զսիրտ մարդոյ։

Յագեսցին ծառք անտառի. և մայրքն Լիբանանու՝ զորս դու տնկեցեր։

Անդ թռչունք երկնից ձագս հանցեն. և բոյն արագիլի ապաւէն է նոցա։

Լերինք բարձունք են եղջերուաց, և վէմք ապաւէն նապաստակաց։

Արարեր զլուսին վասն ժամանակի. արեգակն ծանեաւ զժամ մտանելոյ իւրոյ։

Արարեր զխաւար՝ և եղև գիշեր. ի նմա գնան ամենայն գազանք անտառի։

Կորիւնք առիւծուց մռնչեն և յափշտակեն, և խնդրեն յԱստուծոյ զկերակուրս իւրեանց։

Ի ծագել արևու ժողովին. և ի մորիս իւրեանց դադարեն։

Ելանէ մարդ ի գործս իւր. և ի վաստակս ձեռաց իւրոց մինչև յերեկոյ։

Որպէս զի մեծ են գործք քո Տէր. և զամենայն ինչ իմաստութեամբ արարեր. և լցաւ երկիր ստեղծուածովք քովք։

Այս ծով մեծ և անդորր. ի սմա են սողունք՝ որոց ոչ գոյ թիւ. գազանք մեծամեծք և մանունք. ի սմա և նաւք գնան. վիշապն՝ զոր ստեղծեր խաղալ նովաւ։

Ամենեքեան քեզ սպասեն, և դու տաս նոցա կերակուր ի ժամու։

Տաս դու նոցա և կերակրին. բանաս զձեռն քո. և լցուցանես զամենեսեան քաղցրութեան կամօք քո։

Դարձուցանես զերեսս քո ի նոցանէ՝ և խռովին. հանես զոգի քո ի նոցանէ. պակասին և ի հող դառնան։

Առաքես զոգի քո և ստանաս զնոսա. և նորոգես զերեսս երկրի։

Ելցէ փառք տեառն յաւիտեան. տէր ուրախ եղիցի յարարածս իւր։

Ո հայի յերկիր՝ և տայ դողալ սմա. մերձի ի լերինս և ծխեսցին։

Օրհնեսցից զտէր ի կեանս իմ. սաղմոս ասացից Աստուծոյ իմոյ մինչև եմ ես։

Քաղցր եղիցի նմա օրհնութիւն իմ, և ես ուրախ եղէց ի տէր։

Պակասեսցին մեղաւորք յերկրէ, ամբարիշտ մի՛ ևս գտցի ի սմա, օրհնեա՛ անձն իմ զտէր։

Ալէլուիա՜ Օ՜րթէ

Սրբոյ Աւետարանիս Յիսուսի Քրիստոսի որ ըստ Մատթէոսի։

Գլ՝ 21. հմր 18։

Տէրն մեր Յիսուս Քրիստոս

Եւ այգուցն իբրև դարձաւ անդրէն ի քաղաքն՝ քաղցեաւ։ Եւ տեսեալ զթզենի մի ի վերայ ճանապարհին՝ եկն ի նա՝ և ոչ եգիտ ի նմա, բայց միայն

տերև. և ասէ ցնա, մի՛ այսուհետև ի քէն պտուղ ե-
ղիցի ի յաւիտեան. և առժամայն չորացաւ թզենին։
Իբրև տեսին աշակերտքն՝ զարմացան և ասեն. թէ
զիա՞րդ վաղվաղակի ցամաքեցաւ թզենին։ Պատաս-
խանի ետ Յիսուս՝ և ասէ ցնոսա. ամէն ասեմ ձեզ.
եթէ ունիցիք հաւատս՝ և ոչ երկմտիցիք՝ ոչ միայն
թզենւոյդ առնիցէք. այլ թէպէտ և լերինդ ասիցէք՝
բարձիր, և անկիր ի ծով՝ եղիցի։ Եւ զամենայն
ինչ՝ զոր և խնդրիցէք յաղօթս հաւատովք՝ առնու-
ցուք։ Եւ իբրև եկին ի տաճարն, մատեան առ նա՝
մինչդեռ ուսուցանէր, քահանայապետքն և ծերք ժո-
ղովրդեանն՝ և ասեն. որո՞վ իշխանութեամբ առնես
զայդ. և ո՞վ ետ քեզ զիշխանութիւնդ զայդ։ Պա-
տասխանի ետ Յիսուս և ասէ ցնոսա. հարցից և ես
ըզձեզ բան մի. զոր եթէ ասիցէք ինձ, և ես ձեզ ա-
սացից որով իշխանութեամբ առնեմ զայս։ Մկրտու-
թիւնն Յօհաննու ուստի՞ էր. յերկնից, թէ ի մարդ-
կանէ. և նոքա խորհէին ընդ միտս՝ և ասէին։ Ե-
թէ ասեմք յերկնից՝ ասէ ցմեզ. իսկ ընդէ՞ր ոչ հաւա-
տացիք նմա. և եթէ ասեմք ի մարդկանէ՝ երկնչիմք
ի ժողովրդենէն. զի ամենեքին զՅօհաննէս իբրև ըզ-
մարգարէ ունէին։ Պատասխանի ետուն Յիսուսի և
ասեն. ոչ գիտեմք. ասէ ցնոսա և նա. և ոչ ես ա-
սեմ ձեզ՝ որով իշխանութեամբ առնեմ զայս։ Բայց
զիա՞րդ թուի ձեզ՝ առն միոջ էին երկու որդիք. և
մատուցեալ առաջինն ասէ՝ երթ այսօր գործեա յայգ-

տոյ։ Նա պատասխանի ետ և ասէ. երթամ տէր՝ և
ոչ չոգաւ։ Մատեաւ և առ միւսն և ասէ նոյնպէս.
պատասխանի ետ և ասէ՝ ոչ կամիմ. բայց յետոյ զղղ-
ջացաւ՝ և չոգաւ յայգին։ Արդ՝ ո՞ յերկոցունց արար
զկամս հօրն. ասեն՝ յետինն. ասէ ցնոսա Յիսուս. ա-
մէն ասեմ ձեզ. զի մաքսաւորք և պոռնիկք յառաջեսս-
ցեն քան զձեզ յարքայութիւն երկնից։ Զի եկն Յո-
հաննէս ճանապարհաւ արդարութեան՝ և ոչ հաւա-
տացիք նմա. և մաքսաւորք և պոռնիկք հաւատացին
նմա. և դուք տեսիք՝ և ոչ զղջացայք յետոյ հաւա-
տալ նմա։ Այլ առակ լուարո՛ւք. այր մի էր տանու-
տէր՝ որ տնկեաց այգի. և ցանգով պատեաց զնա՝ և
փորեաց ի նմա հնձան. և շինեաց աշտարակ. և ետ
ըզնա ցմշակս, և գնաց ի տար աշխարհ։ Իբրև մեր-
ձեցաւ ժամանակ պտղոյ՝ առաքեաց զծառայս իւր
առ մշակսն՝ առնուլ զպտուղս նորա։ Եւ կալեալ
մըշակացն զծառայս նորա, զոմն տանջեցին. զոմն
սպանին. զոմն քարկոծեցին։ Դարձեալ առաքեաց
այլ ծառայս բազումս քան զառաջինսն. և արարին
նոցա նոյնպէս։ Յետոյ առաքեաց առ նոսա զորդի
իւր և ասէ. թերևս ամաչեսցեն յորդւոյ աստի իմմէ։
Իսկ մշակքն իբրև տեսին զորդին, ասեն ընդ միտս՝
սա է ժառանգն. եկա՛յք սպանցուք զսա. և կալցուք
ըզժառանգութիւն սորա։ Եւ առեալ հանին զնա
արտաքոյ քան զայգին՝ և սպանին։ Արդ՝ յորժամ ե-
կեսցէ տէր այգւոյն՝ զինչ արասցէ մշակացն այնոցիկ։

Ասեն ցնա. զչարան չարաւ կորուսցէ. և զայգին տա-
ցէ այլոց մշակաց. որք տացեն նմա զպտուղս ի ժա-
մու իւրեանց։ Ասէ ցնոսա Յիսուս. չիցէ՞ երբէք ըն-
թերցեալ ձեր ի գիրս. զվէմն՝ զոր անարգեցին շի-
նօղք, նա եղև գլուխ անկեան. ի տեառնէ եղև այս.
և է սքանչելի յաչս մեր։ Վասն այսորիկ ասեմ ձեզ՝
զի բարձցի ի ձէնջ արքայութիւն Աստուծոյ. և տա-
ցի ազգի, որ առնիցէ զպտուղս նորա։ Եւ որ անկ-
ցի ի վերայ վիմիս այսորիկ, փշրեսցի. և յոյր վերայ
անկցի, հոսեսցէ զնա։ Իբրև լուան քահանայապետ-
քըն՝ և դպիրք՝ և փարիսեցիք զառակս զայս, գիտա-
ցին թէ վասն նոցա ասաց։ Եւ խնդրէին զնա ու-
նել. բայց երկեան ի ժողովրդոցն, քանզի իբրև ըզ-
Մարգարէ ունէին զնա։ Դարձեալ պատասխանի ետ
Յիսուս՝ և ասէ ցնոսա առակօք։ Նմանեցաւ արքա-
յութիւն երկնից առն թագաւորի. որ արար հարսա-
նիս որդւոյ իւրում։ Եւ առաքեաց զծառայս իւր
կոչել զհրաւիրեալսն ի հարսանիս. և ո՛չ կամեցան
գալ։ Դարձեալ առաքեաց այլ ծառայս՝ և ասէ. ա-
սացէ՛ք հրաւիրելոցն. ահաւասիկ զճաշ իմ պատրաս-
տեցի. զուարակք իմ և պարարակք զենեալ են. և
ամենայն ինչ պատրաստ է. եկա՛յք ի հարսանիս։ Եւ
նոքա յուլացեալ գնացին. ոմն յագարակ իւր. և ոմն
ի վաճառ իւր։ Եւ այլք կալան զծառայս նորա թըշ-
նամանեցին, և սպանին։ Իսկ թագաւորն իբրև լու-
աւ՝ բարկացաւ. և առաքեաց զզօրս իւր. և սատա-
կեաց զսպանօղսն զայնոսիկ, և զքաղաքս նոցա այ-

բեաց։ Յայնժամ ասէ ցծառայս իւր. հարսանիքս պատրաստ են. և հրաւիրեալքն չէին արժանի։ Արդ՝ երթայք յելս ճանապարհաց. և զոր միանգամ գտանիցէք՝ կոչեցէք ի հարսանիսս։ Եւ ելեալ ծառայքն ի ճանապարհս. ժողովեցին զամենեսեան. զորս և գտին զչարս և զբարիս. և լցան հարսանիքն բազմականօք։ Եւ մտեալ թագաւորն հայել զբազմականսն. ետես անդ զայր մի՝ որոյ ոչ էր զգեցեալ հանդերձ հարսանեաց։ Եւ ասէ ցնա. ընկեր՝ զիա՞րդ մտեր այսր. զի ո՛չ ունէիր հանդերձ հարսանեաց. և նա պապանձեցաւ։ Յայնժամ ասէ ցսպասաւորսն. կապեցէ՛ք զդորա զոտս և զձեռս՝ և հանէ՛ք զդա ի խաւարն արտաքին. անդ եղիցի լալ և կրճել ատամանց։ Զի բազումք են կոչեցեալք՝ և սակաւք են ընտրեալք։

*Երգ Տեառն Ներսէսի վասն երկրորդի աւուր արարչութեանն և վասն երկնային զօրացն։*

Արարչակա՜ն բանին հրամա՞ն ի յերկրորդումն աւուր սկզբան. զջո՜ւրսն է ջուրցըն բաժանեա՛ց հաստատութեամբ պարա՛ւնակեաց. որով զաչխա՜րհս հողեղինա՛ց անջրպետեաց ի հրեղինա՞ց. ընդ նոսի՜ն որդիք լուսո՞յ տուք օրհնութի՛ւն երրեա՛կ լուսո՜յն։

Բազմաչեա՜յ հողք քրովբէից երկքաբբեանքդ սրովբէից. աթոռք անեղ Աստուածութեանըն համա՛գոյ երրորդութեանն. բարեխօս լերուք առ տէր վասն մանկանց եկեղեցւոյ. ընդ նոսի՜ն որդիք լուսո՞յ տուք օրհնութի՛ւն երրեա՛կ լուսո՜յն։

Գերագո՜յն իշխանութիւնք և անփոփո՛խ միշտ տէրութիւնք անյաղթելի՜ սուրբ զօրութի՛ւնք ի յարարչին փառաւորութիւն. աղաչեցէ՜ք զտէրն ո՞ղորմա՛ծ անտես չառնել զգործըս ձեռացն. ընդ նո”։

Դասք անմարմնո՜ցըն պե՛տութեա՞նց հրեշտակապետըք բա՛րձրութեանց. հոգիք հրեղէ՜նք և սպասաւո՛րըք հրեշտակաց զինուորութիւնք. մաղթեցէ՜ք ըզտէրն տերանց վասըն մարդկան երկրաւորաց. ընդ նո”։

Երկնաւորա՜ց դասուց վերնոց օ՛րհնաբանից քոց զուարթնո՞ց. քաղցրասցի՜ առ քեզ գթած որ վասն մեր ձայն մաղթանաց. զորս և տացե՜ս մեզ պահապա՞ն յայսմ հետէ մինչ ի վախճան. ընդ նո”։

Զօրութեա՜նց և տէրութեանց իշխանութեանց և պետութեանց. և ամենա՜յն անուանելո՞ց որք ի յերկինս պաղատանօք. ընկալ Քրիստո՜ս ուրախութեամբ զմեզ յոր մահու և յարութեան. ընդ նոսի՜ն օրհնել հոգւով զքեզ ընդ հօր փառաւորե՛լո՜վ։

Քարոզ. Խնդրեսցուք. Կեցո։ Աղօթք՝ Քում ամենազօր և հրաշալի գալստեանդ։ (Տես ի Թիւն. 75։)

---

Զմաղթանքն ևս գալստեանն ասա մինչև ի յուրբաթօրն։ (Իսկ յայս երեք աւուրս արևագալից կանոն ոչ գոյ, և ոչ Տէր ամենակալի, և ոչ Պատարագ մատուցանելոյ. և ոչ մեծ քարոզից և աղօթիցն)։ Ճաշուն՝ զերեք Ողորմեայսըն ասասցես. զկնի՝ Հանգստեան Շարական, և Հոգւոց։ Նաև Սուրբ Աստուած՝ որ եկիր և գալոց։



*Կարգաւորութիւն հասարակաց աղօթից երեկոյի ժամուն ։ Որ կատարի ի դէմս Որդւոյն Աստուծոյ․ որ էջ ի խաչէն և պատեալ պատատանակալաւ՝ եդաւ ի գերեզմանի ։*

Օրհնեալ Տէր մեր Յիսուս Քրիստոս․ ամէն․
Հայր մեր որ յերկինս ես՚՚ ։

Ես առ Աստուած կարդացի, և նա լուաւ ինձ յերեկոյս՝ ի վաղորդեայն՝ և ի հասարակ աւուր ։
Սպասէի Աստուծոյ իմոյ, և ակն ունէի կենարարին․ որ փրկէ զծառայս իւր և կեցուցանէ ։
Փառք Հօր և Որդւոյ և Հոգւոյն Սրբոյ ։
Այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից․ ամէն ։
Եւ ևս խաղաղութեան զտէր աղաչեսցուք ընկալ կեցո և ողորմեա ։
Օրհնութիւն և փառք Հօր և Որդւոյ և Հոգւոյն սրբոյ․ այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից. ամէն ։
Խաղաղութիւն ամենեցուն ։

Սաղմոս Ճե ։

Խոնարհեցո տէր և այլն՝ (Տես ի Թիւն . 101 :)

ՄԱՂԹԱՆՔ

Օրհնեալ տէր՝ որ բնակեալդ ես՝ (Տես ի Թիւն . 176 :)

Քարոզ և Մաղթանք Հասեալքի՝ (Տես ի Թիւն . 107 :)

Մեսեդի ։

Բերան արդարոյ պատմէ զիմաստութիւն․ և լեզու նորա խօսեսցի զիրաւունս ։

Մի՛ նախանձիր ընդ չարս․ և մի՛ ընդ այնոսիկ՝ որք գործեն զանօրէնութիւն ։

Ընթերցուածս ի Ծննդոց ։
Գլ՝ 1 ։

Ի սկզբանէ արար Աստուած զերկինս և զերկիր ։ Եւ երկիր էր աներեւոյթ և անպատրաստ․ և խաւար ի վերայ անդնդոց․ և Հոգի Աստուծոյ շրջէր ի վերայ ջրոց ։ Եւ ասաց Աստուած․ եղիցի՛ լոյս․ և եղև լոյս ։ Եւ ետես Աստուած զլոյսն զի բարի է․ և մեկնեաց Աստուած ի մէջ լուսոյն և ի մէջ խաւարին ։ Եւ կոչեաց Աստուած զլոյսն տիւ․ և զխաւարն կոչեաց գիշեր․ և եղև երեկոյ՝ և եղև վաղորդեայն, օր մի ։ Եւ ասաց Աստուած․ եղիցի՛ հաստատութիւն ի մէջ ջրոց․ և եղիցի՛ մեկնիչ ի մէջ ջուրց, և ջուրց․ և եղև այնպէս ։ Եւ արար Աստուած զհաստատութիւնն․ և անջրպետեաց Աստուած ի մէջ ջրոյն, որ էր ի ներքոյ հաստատութեանն․ և ի մէջ ջրոյն, որ ի վերոյ հաստատութեանն ։ Եւ կոչեաց Աստուած զհաստատութիւնն երկին․ և ետես Աստուած զի բարի է․ և եղև երեկոյ՝ և եղև վաղորդեայն, օր երկրորդ ։ Եւ ասաց Աստուած․ ժողովեսցին ջուրքդ որք ի ներքոյ երկնից ի ժողով մի․ և երևեսցի ցամա-

քըն. և եղև այնպէս, և ժողովեցան ջուրքն, որք ի ներքոյ երկնից ի ժողովս իւրեանց. և երեւեցաւ ցամաքն։ Եւ կոչեաց Աստուած զցամաքն երկիր. և զժողովս ջուրցն կոչեաց ծովս. և ետես Աստուած զի բարւոք է։ Եւ ասաց Աստուած. բղխեսցէ երկիր ըզ-բանջար խոտոյ. սերմանել սերմն ըստ ազգի և ըստ նմանութեան. և ծառ պտղաբեր՝ առնել պտուղ ըստ ազգի իւրում. որոյ սերմն իւր ի նմին ըստ ազգի ի նմանութիւն ի վերայ երկրի. և եղև այնպէս։ Եւ եհան երկիր զբանջար խոտոյ. սերմանել սերմն ըստ ազգի և ըստ նմանութեան. որ է ի վերայ երկրի. և փայտ պտղաբեր՝ առնել պտուղ. որոյ սերմն իւր ի նմին ըստ ազգի ի վերայ երկրի. և ետես Աստուած զի բարւոք է։ Եւ եղև երեկոյ՝ և եղև վաղորդեայն, օր երրորդ։ Եւ ասաց Աստուած. եղիցին լուսաւորք ի հաստատութեան երկնից ի լուսաւորութիւն ի վերայ երկրի. և մեկնել ի մէջ տունջեան և ի մէջ գիշերոյ. և եղիցին ի նշանս, և ի ժամանակս. և յաւուրս. և ի տարիս։ Եւ եղիցին ի լուսաւորութիւն ի հաստատութեան երկնից ծագել յերկիր. և եղև այնպէս։ Եւ արար Աստուած զերկուս լուսաւորսն զմեծամեծս. զլուսաւորն մեծ՝ յիշխանութիւն տունջեան. և զլուսաւորն փոքր՝ յիշխանութիւն գիշերոյ. և զաստեղս։ Եւ եդ զնոսա Աստուած ի հաստատութեան երկնից. լուսատու լինել յերկիր։ Եւ իշխել տուընջեան և գիշերոյ. և մեկնել ի մէջ լուսոյն և ի մէջ խաւարին. և ետես Աստուած զի բարւոք է։ Եւ ե-

զեւ երեկոյ՝ և եղև վաղորդեայն, օր չորրորդ։ Եւ ասաց Աստուած. հանցեն ջուրք զեռունս շնչոց կենդանեաց. և թռչունս թեւաւորս ի վերայ երկրի ըստ հաստատութեան երկնից. և եղև այնպէս։ Եւ արար Աստուած կէտս մեծամեծս. և զամենայն շունչ զեռնոց կենդանեաց, զոր հանին ջուրք ըստ ազգի իւրեանց. և զամենայն թռչուն թեւաւոր ըստ ազգի. և ետես Աստուած զի բարի են։ Եւ օրհնեաց զնոսա Աստուած. և ասէ. աճեցէք. և բազմացարուք. և լցէք զջուրսդ որք ի ծովս. և թռչունքդ բազմասցին ի վերայ երկրի։ Եւ եղև երեկոյ՝ և եղև վաղորդեայն, օր հինգերորդ։ Եւ ասաց Աստուած. հանցէ երկիր շունչ կենդանի ըստ ազգի չորքոտանի. և սողունս, և գազանս երկրի ըստ ազգի. և եղև այնպէս։ Եւ արար Աստուած զգազանս երկրի ըստ ազգի. և զանասունս ըստ ազգի. և զամենայն սողունս երկրի ըստ ազգի իւրեանց. և ետես Աստուած զի բարի են։ Եւ ասաց Աստուած. արասցուք մարդ ըստ պատկերի մերում և ըստ նմանութեան, և իշխեսցէ ձկանց ծովու. և թռչնոց երկնից. և անասնոց. և ամենայն երկրի. և ամենայն սողնոց՝ որք սողին ի վերայ երկրի։ Եւ արար Աստուած զմարդն ի պատկեր իւր. ըստ պատկերի Աստուծոյ արար զնա. արու և էգ արար զնոսա։ Եւ օրհնեաց զնոսա Աստուած՝ և ասէ. աճեցէք՝ և բազմացարուք՝ և լցէք զերկիր. և տիրեցէք դմա. և իշխեցէք ձկանց ծովու. և թռչնոց երկնից. և ամենայն անասնոց. և ամենայն երկրի. և

ամենայն սողնոց՝ որք սողին ի վերայ երկրի։ Եւ ասաց Աստուած. Ահաւադիկ ետու ձեզ զամենայն խոտ սերմանեցի սերմանել սերմն, որ է ի վերայ ամենայն երկրի. և զամենայն փայտ որ ունիցի յինքեան պտուղ սերման սերմանելոյ, ձեզ լիցի ի կերակուր։ Եւ ամենայն գազանաց երկրի. և ամենայն թռչնոց երկնից. և ամենայն սողնոց՝ որք սողին ի վերայ երկրի՝ որ ունիցի շունչ կենդանի. և ամենայն խոտ դալար ի կերակուր. և եղև այնպէս։ Եւ ետես Աստուած զամենայն զոր արար, և ահա բարի են յոյժ. և եղև երեկոյ՝ և եղև վաղորդեայն, օր վեցերորդ։ Եւ կատարեցան երկինք և երկիր և ամենայն զարդ նոցա։ Եւ կատարեաց Աստուած յաւուրն վեցերորդի զգործս իւր՝ զոր արար. և հանգեաւ յաւուրն եօթներորդի յամենայն գործոց իւրոց՝ զոր արար։ Եւ օրհնեաց Աստուած զօրն եօթներորդ, և սրբեաց զնա. զի ի նմա հանգեաւ յամենայն գործոց իւրոց՝ զոր սկսաւ առնել Աստուած։ Այս է գիր արարածոց երկնի և երկրի, յաւուր յորում արար Աստուած զերկին և զերկիր։ Եւ զամենայն բանջար վայրի՝ մինչչեւ լեալ էր ի վերայ երկրի. և զամենայն խոտ վայրի՝ մինչչև բուսեալ էր, զի չև ևս էր տեղացեալ Տեառն Աստուծոյ ի վերայ երկրի. և մարդ չէր՝ որ գործէր զերկիր։ Բայց աղբիւր ելանէր յերկրէ՝ և ոռոգանէր զամենայն երեսս երկրի։ Եւ ստեղծ Տէր Աստուած զմարդն հող յերկրէ. և փչեաց յերեսս նորա շունչ կենդանի. և եղև մարդն յոգի կենդանի։

Եւ տնկեաց Աստուած դրախտն յԵդեմ ընդ արեւելս, եւ եդ անդ զմարդն զոր ստեղծ։ Եւ բուսոյց եւս Տէր Աստուած յերկրէ զամենայն ծառ գեղեցիկ ի տեսանել՝ եւ բարւոք ի կերակուր. եւ զծառն կենաց ի մէջ դրախտին, եւ զծառն գիտելոյ զգիտութիւն բարւոյ եւ չարի։ Եւ գետ ելանէր յԵդեմայ ոռոգանել զդրախտըն. եւ անտի բաժանի ի չորս առաջս։ Անուն միոյն Փիսոն. նա է որ պատէ զամենայն երկիրն Եւիլատայ. անդ ուր ոսկին է, եւ ոսկի երկրին այնորիկ ազնիւ. եւ անդ է սուտակն եւ ակն պատուական. Եւ անուն գետոյն երկրորդի Գեհոն. նա պատէ զամենայն երկիրն Եթովպացւոց։ Եւ գետն երրորդ՝ Տիգրիս. նա է որ երթայ յանդիման Ասորեստանի. եւ գետն չորրորդ Եփրատէս։ Եւ էառ Տէր Աստուած զմարդն, զոր արար. եւ եդ զնա ի դրախտին փափկութեան. գործել զնա եւ պահել։ Եւ պատուիրեաց Տէր Աստուած Ադամայ՝ եւ ասէ. յամենայն ծառոց որք են ի դրախտիդ՝ ուտելով կերիջիք։ Բայց ի ծառոյն գիտութեան բարւոյ եւ չարի մի՛ ուտիցէք. զի յորում աւուր ուտիցէք ի նմանէ՝ մահու մեռանիջիք։ Եւ ասաց Տէր Աստուած, ո՞չ է բարւոք մարդոյն միայն, լինել. արասցուք դմա օգնական ըստ դմա։ Եւ ստեղծ եւս Տէր Աստուած զամենայն գազանս վայրի. եւ զամենայն թռչունս երկնից. եւ էած զնոսա առ Ադամ, եւ տեսանել զինչ կոչեսցէ զնոսա. եւ ամենայն շնչոյ, կենդանւոյ, զինչ եւ անուանեաց Ադամ, այն անուն է նորա։ Եւ կոչեաց Ադամ անուանս ամե-

կերին։ Եւ բացան աչք երկոցունցն. և գիտացին
զի մերկք էին. և կարեցին տերևս թզենւոյ. և արա-
րին իւրեանց սփածանելիս։ Եւ լուան զձայն զգը-
նալոյ տեառն Աստուծոյ ի դրախտի անդ ընդ երեկս.
և թաքեան Ադամ և կին իւր յերեսաց տեառն Աս-
տուծոյ՝ ի մէջ ծառոց դրախտին։ Եւ կոչեաց տէր
Աստուած զԱդամ. և ասէ ցնա. ո՞ւր ես։ Եւ ասէ.
լուայ զձայն քո ի դրախտի աստ՝ և երկեայ. քանզի
մերկ էի՝ և թաքեայ։ Եւ ասէ ցնա. ո՞ պատմեաց քեզ
թէ մերկ ես. բայց թէ ի ծառոյն՝ յորմէ պատուիրե-
ցի քեզ անտի և եթ չուտել, կերե՞ր արդեօք ի նմա-
նէ։ Եւ ասէ Ադամ. կինս զոր ետուր ընդ իս՝ սա ետ
ինձ ի ծառոյ անտի և կերի։ Եւ ասէ տէր Աստուած
ցկինն. զի՞նչ գործեցեր զայդ. և ասէ կինն. օձն խա-
բեաց զիս, և կերի։ Եւ ասէ տէր Աստուած ցօձն.
փոխանակ զի արարեր դու զայն, անիծեալ լինիցիր դու
յամենայն անասնոց և յամենայն գազանաց երկրի.
ի վերայ լանջաց և որովայնի քոյ գնասցես. և հող
կերիցես զամենայն աւուրս կենաց քոց։ Եւ եդից
թշնամութիւն ի մէջ քո և ի մէջ կնոջդ. և ի մէջ
զաւակի քո և ի մէջ զաւակի դորա. նա սպասեսցէ
քում գլխոյ. և դու սպասեսցես նորա գարշապարի։
Եւ ցկինն ասէ. բազմացուցանելով բազմացուցից ըզ-
տրտմութիւնս քո և զհեծութիւնս. տրտմութեամբ
ծնցիս որդիս. և առ այր քո դարձ քո. և նա տիրես-
ցէ քեզ։ Եւ ցԱդամ ասէ. փոխանակ զի լուար ձայ-
նի կնոջդ քոյ. և կերեր ի ծառոյ անտի, յորմէ պատ-

ուիրեցի քեզ միայն անտի չուտել. և կերեր ի նմանէ, անիծեալ լիցի երկիր ի գործս քո. տրտմութեամբ կերիցես զնա զամենայն աւուրս կենաց քոց։ Փուշ և տատասկ բուսուսցէ քեզ. և կերիցես զբանջար վայրի։ Քրտամբք երեսաց քոց կերիցես զհաց քո. մինչև դարձցիս յերկիր, ուստի առար. զի հող էիր և ի հող դարձցիս։ Եւ կոչեաց Ադամ զանուն կնոջ իւրոյ կեանս. զի նա է մայր ամենայն կենդանեաց։ Եւ արար Աստուած Ադամայ և կնոջ նորա հանդերձս մաշկեղէնս, և զգեցոյց զնոսա։ Եւ ասէ Տէր Աստուած. ահա Ադամ եղև իբրև զմի ի մէնջ՝ գիտել զբարի և զչար. և արդ՝ գուցէ ձգիցէ զձեռն, և առնուցու ի ծառոյն կենաց. ուտիցէ, և կեցցէ յաւիտեան։ Եւ եհան արձակեաց զնա Տէր Աստուած ի դրախտէ անտի փափկութեան՝ գործել զերկիր՝ ուստի առաւ։ Եւ եհան զԱդամ, և բնակեցոյց յանդիման դրախտին փափկութեան. և հրամայեաց Քրովբէից, և բոցեղէն սրոյ շուրջանակաւ պահել զճանապարհս ծառոյն կենաց։

Ընթերցուածս Յառակաց։

Գլ. 1։

Ճանաչել զիմաստութիւն և զխրատ. իմանալ զբանս հանճարոյ։ Ընդունիլ զդարձուածս բանից, ի միտ առնուլ զարդարութիւն ճշմարիտ. և ուղղել զիրաւունս։ Զի տացէ անմեղաց զխորագիտութիւն, մանկանց տղայոց զմիտս և զհանճար։ Որոց իբրև

Աղօթք՝ Լոյս հայնեց և այլն. ցՇարականն Համբարձի. (Տես է 110 էն ց113 Թիւոն։)

Համբարձի՝ ԲՁ

Ո՛ր յանէից գոյացո՛ւցեր զքո զարարա՛ծս ի սկըզբանէ՜. ի պատկե՛ր Աստուածո՛ւթեանըդ քո ստեղծեր մա՛րդ ի հողոյ. ժառանգել նը՛մա՞ զանպա՛տուս ըզկեա՜նսն։ Ի՛սկ պատրանօ՜ք բանսա՛րկուի՞ն ի դըրախտէ՛ն արտաքս անկեա՜լ. ի յաւէ՛ժ կենդանո՛ւթեանըն մա՞հաուիթ ալը՛տողով մեռեալ, մե՛րկացաւ ըզփա՞ռս անը՛սասւեր լուսո՜յն։ Ա՛յլ դու փրկի՜չ բարե՛րար որ մարմնացա՛ր ի սուրբ կուսէ՜ն, և հեղմա՛մբ արեա՛նըդ քո բարձե՛ր զյանցանս նա՞խաստեղծին, փրկելով ը՛զմե՞զ յանի՛ծից նորա։ Փառք Հօր եւ"։ Ո՛ր ըստ պարտեա՜ց նախա՛հօրըն յանձն առի՛ն յօժարութեամբ ըմպել զբաժա՛կն չարչա՛րանաց ընդ քե՛զ որդիքը՛ն Զեբեթեայ. չնո՛րհեա մե՛զ տէ՞ր ըզբաժակ քո՛ փրկութեա՜ն։ Այժմ եւ միշտ"։ Ի՛ միւսանգամ քո գալը՛ստեանըն յորժամ գա՛ս դատել զերկի՜ր, ընդ նոսին դասա՛ւորեա ըզմե՛զ ի փառս ա՛ջակողմեանն. որով հանգո՛ւք քեզ զօրհնո՛ւթի՞ւն յա՛նըսպառ յաւի՛տենի՜ն։

Քարոզ՝ Վասն խաղաղութեան։ Աղօթք՝ Հայր գըթած. (Տես ի Թիւն. 177։)

Ապա սկսանիցին ձայնիւ առաջնով Սաղմոս ԿԴ ։

ԿԴ. Լո՛ւր մեզ Աստուած Փրկիչ մեր, յոյս ամենայն ծագաց երկրի և որ ի ծով հեռի ։

Փխ. Քեզ վայել է օրհնութիւն Աստուած ի Սիօն, և քեզ տացին աղօթք յԵրուսաղէմ ։

Լո՛ւր աղօթից իմոց, զի առ քեզ ամենայն մարմին եկեսցէ ։

Բանք անօրինաց զօրացան ի վերայ մեր, և զամբարշտութիւնս մեր դու քաւեսցես ։

Երանի զոր ընտրեցեր և ընկալար, և բնակեսցին ի գաւիթս քո ։

Լցցուք մեք ի բարութենէ տան քո, սուրբ է տաճար քո սքանչելի արդարութեամբ ։

Լո՛ւր մեզ Աստուած Փրկիչ մեր, յոյս ամենայն ծագաց երկրի և որ ի ծով հեռի ։

Ո պատրաստէ զլերինս զօրութեամբ իւրով, և ըզգեցեալ է զօրութիւն ։

Ո խռովեցուցանէ զմեծութիւն ծովու, և զձայն ալեաց նորա ցածուցանէ ։

Խռովեսցին հեթանոսք, և երկիցեն բնակիչք երկրի ի նշանաց քոց ։

Ելս առաւօտու և ընդ երեկոյս զուարճասցին. հայեցար յերկիր արբեցուցեր զնա, և բազում արարեր զմեծութիւն նորա ։

Գետն Աստուծոյ լի եղև ջուրբ. պատրաստ արարեր զկերակուր նորա, զի այսպէս է պատրաստութիւն ։

երկու որդիքս իմ. մի ընդ աջմէ քումմէ՝ և մի ընդ ա-հեկէ յարքայութեան քում։ Պատասխանի ետ Յիսուս և ասէ. ոչ գիտէք զինչ խնդրէք. կարէք ըմպել զբաժակն, զոր ես ըմպելոց եմ. կամ զմկրտութիւնն զոր ես մկրտելոց եմ մկրտիլ. Ասեն ցնա՝ կարող եմք. Ասէ ցնոսա Յիսուս. զբաժակն իմ ըմպիցէք. և զմկրտութիւնն զոր ես մկրտելոց եմ, մկրտիցիք՝ բայց նստուցանել ընդ աջմէ և ընդ ահեկէ իմմէ՝ ոչ է իմ տալ. այլ որոց պատրաստեալ է ի Հօրէ իմմէ։ Եւ լուեալ տասանցն՝ բարկացան ի վերայ երկուցն եղբարց։ Յիսուս կոչեաց զնոսա առ ինքն և ասէ. գիտէք, զի իշխանք ազգաց տիրեն նոցա. և մեծամեծքն իշխեն նոցա. Ո՛չ այնպէս իցէ և ի ձեզում միջի. այլ որ կամիցի ի ձէնջ մեծ լինել՝ եղիցի ձեր պաշտօնեայ։ Եւ որ կամիցի ի ձէնջ առաջին լինել՝ եղիցի ձեր ծառայ։ Որպէս Որդի Մարդոյ ոչ եկն պաշտօն առնուլ՝ այլ պաշտել. և տալ զանձն իւր փրկանս փոխանակ բազմաց։

Զկնի [illegible]. Խնդրեսցուք։ Կեցո՛ Տէր՝ [illegible]։
Մաղթ. Պահպանող խաղաղութեան։

Տես ի Գիրս. 114։

Եւ արձակի ի խաղաղութիւն։



# ԱԻԱԳ
# ԵՐԵՔՇԱԲԱԹԻ



## Ի ԳԻՇԵՐԻՆ

### Օրհնութիւն ԲԿ։

Իմաստուն կուսանքն պատրաստեալ իւղ լապտերաց, եկին ընդ առաջ երկնաւոր փեսային վառեալ լապտերօք։ Իսկ յիմարաց կուսանացն ունայնացեալք ի յիւղոյ, անպատրաստ գըտան գալըստեան փեսային շիջեալ լապ"։ Վասն որոյ և մեք պատրաստեսցուք իւղ հոգևոր, զի մըտցուք ի յառագաստ անմահ փեսային վառեալ լապ"։

Յորժամ յերկնից փառօք գաս Քրիստոս Նըստել յաթոռ դատաստական և բաժանել զազգս ամենայն, յաջակողմեանըն քում դասեա ըզմեզ ընդ օդեացն։

Ճառագայթ փառաց Հօր որդի միածին, որ ըզլոյսդ անպարփակ մարմնով պարագրեալ, ա յսօր

ի թափօր փառօք փայլեցեր։ Որ անմահս սրովբէից անհաս ի վեր քան ըզբան, ծառայի կերպիւ պարածածկեալ ըզլոյսդ անըստուեր, այսօր ի թա”։ Որ հրեղինացն անմերձենալի հուր Աստուածութեանըդ, ի հողեղէնս խոնարհեալ լոյսդ արփիական. այսօր ի թափօր փա”։

Ուրախ լեր Եկեղեցի սուրբ ի գալըստեան Սուրբ Միածնին. ուրախ լեր և ցընծա հանդերձ ամենայն սրբօքն։ Ընդառաջ յոյժ դուստր վերին Սիոնի. ահա թագաւոր քո գայ նըստեալ ի յաւանակի նորոյ. արդար և Փրկիչ փրկէ և կեցուցանէ։ Զըւարճացիր և բերկրեա ժողովուրդ Աստուծոյ. մատոյ զոստըս ծաղկեալս հաւատով և սաս. օրհնեալ որ եկիրըդ թագաւոր տիեզերաց։

Դատաւոր արդարութեան հաստատեցեր ի մեզ ըզմիտս մեր. դատել զհոգի և ըզմարմին, արդարապէս դատաւոր ըստ օրինաց քոց Քրիստոս։ Իսկ անիրաւ դատաւորին որ ի քաղաքն բնութեան մերոյ, ոչ ունելով զերկիւղ քո սուրբ, և անպատկառ ի մարդկանէ ոչ առնելով դատ զըրկելոյն։ Այլ անմահ սուրբ Փեսայիդ այրի հոգի իմ պաղատի. ուստ զիրա-

Աղօթք՝ Լոյս Հայնից և այլն. ցՃաշականն Համբար-ձի. (Տես է 110 էն ց113 Թիւսն:)

Համբարձի՝ ԲՁ

Ո՛ր յանէից գոյացո՛ւցեր զքո զարարա՛ծս ի սկըզբանէ՜. ի պատկե՛ր Աստուածո՛ւթեանըդ քո ստեղծեր մա՛րդ ի հողոյ. ժառանգել նը՛մա՞ զանպա՛տուժ ըզկեա՜նսն: Ի՛սկ պատրանօ՜ք բանսա՛րկուի՞ն ի դրախտէ՛ն արտաքս անկեա՜լ. ի յաւէ՛ժ կենդանո՛ւթեանըն մա՞հատուիթ պը՛տղով մեռեալ, մե՛րկացաւ ըզփա՞ռս անը՛սասեր լուսո՜յն: Ա՛յլ դու փրկի՜չ բարե՛րար որ մարմնացա՛ր ի սուրբ կուսէ՜ն, և հեղմա՛մբ արեա՛նըդ քո բարձե՛ր զյանցանս նա՞խաստեղծին, փրկելով ը՛զմե՞զ յանի՛ծից նորա: Փառք Հօր եւ": Ո՛ր ըստ պարտեա՜ց նախա՛հօրըն յանձն առի՛ն յօժարութեամբ ըմպել զբաժա՛կն չարչա՛րանաց ընդ քե՛զ որդիքը՛ն Զեբեթեայ. շնո՛րհեա մե՛զ տէ՞ր ըզբաժակ քո՛ փրկութեա՜ն: Այժմ եւ միշտ": Ի՛ միւսանգամ քո գալը՛ստեանըն յորժամ գա՛ս դատել զերկի՜ր, ընդ նոսին դասա՛ւորեա ըզմե՛զ ի փառս ա՛ջակողմեանն. որով հանցո՛ւք քեզ զորհնո՛ւթի՞ւն յա՛նըսպառ յաւի՛տենի՜ն:

Փառք՝ Վասն խաղաղութեան: Աղօթք՝ Հայր գըթած. (Տես ի Թիւն. 177:)

Այս սկսանիցին ձայնիւ տաղողք Սաղմոս ԿԴ ։

ԿԸ. Լո՛ւր մեզ Աստուած Փրկիչ մեր, յոյս ամենայն ծագաց երկրի և որ ի ծով հեռի ։

Փխ. Քեզ վայելէ օրհնութիւն Աստուած ի Սիօն, և քեզ տացին աղօթք յԵրուսաղէմ։

Լո՛ւր աղօթից իմոց, զի առ քեզ ամենայն մարմին եկեսցէ ։

Բանք անօրինաց զօրացան ի վերայ մեր, և զամբարշտութիւնս մեր դու քաւեսցես ։

Երանի զոր ընտրեցեր և ընկալար, և բնակեսցին ի գաւիթս քո ։

Լցցո՛ւք մեք ի բարութենէ տան քո, սուրբ է տաճար քո սքանչելի արդարութեամբ ։

Լո՛ւր մեզ Աստուած Փրկիչ մեր, յոյս ամենայն ծագաց երկրի և որ ի ծով հեռի ։

Ո պատրաստէ զլերինս զօրութեամբ իւրով, և ըզգեցեալ է զօրութիւն ։

Ո խռովեցուցանէ զմեծութիւն ծովու, և զձայն ալեաց նորա ցածուցանէ ։

Խռովեսցին հեթանոսք, և երկիցեն բնակիչք երկրի ի նշանաց քոց ։

Ելս առաւօտու և ընդ երեկոյս զուարճասցին. հայեցար յերկիր արբեցուցեր զնա, և բազում արարեր զմեծութիւն նորա ։

Գետն Աստուծոյ լի եղև ջուրբ. պատրաստ արարեր զկերակուր նորա, զի այսպէս է պատրաստութիւն ։



# ԱՒԱԳ
# ՆԵՐԵՔՇԱԲԱԹԻ



## Ի ԳԻՇԵՐԻՆ

### Օրհնութիւն ԲԿ։

Իմաստուն կուսանքըն պատրաստեալ իւղ լապտերաց, եկին ընդ առաջ երկնաւոր փեսային վառեալ լապտերօք։ Իսկ յիմարաց կուսիցն ունայնացեալք ի յիւղոյ, անպատրաստ գըտան գալըստեան փեսային շիջեալ լապ"։ Վասն որոյ և մեք պատրաստեցուք իւղ հոգեւոր, զի մըտցուք ի յառագաստ անմահ փեսային վառեալ լապ"։

Յորժամ յերկնից փառօք գաս Քրիստոս նըստիս յաթոռ դատողական և բաժանես զազգս ամենայն, յաջակողմեանըն քո դասեա ըզմեզ ընդ օդեացն։

Ճառագայթ փառաց Հօր որդի միածին, որ ըզլոյսդ անվայրափակ մարմնով պարագրեալ, ա յսօր

ի Թափօր փառօք փայլեցեր։ Որ անտես սրովբէից անհաս ի վեր քան ըզբան, ծառայի կերպիւ պարածածկեալ ըզլոյսդ անըստուեր, այսօր ի Թա"։ Որ հրեղինացն անմերձենալի հուր Աստուածութեաննըդ, ի հողեղէնս խոնարհեալ լոյսդ արփիական. այսօր ի Թափօր փա"։

Ուրախ լեր Եկեղեցի սուրբ ի գալըստեան Սուրբ Միածնին. ուրախ լեր և ցընծա հանդերձ ամենայն սրբովք։ Խընդա յոյժ դուստր վերին Սիովնի. ահա Թագաւոր քո գայ նըստեալ ի յաւանակի նորոյ. արդար և Փրկիչ փրկէ և կեցուցանէ։ Զուարճացիր և բերկրեա ժողովուրդ Աստուծոյ. մատո զոտըս ծաղկեալըս հաւատով և ասա. օրհնեալ որ եկիրըդ Թագաւոր տիեզերաց։

Դատաւոր արդարութեան հաստատեցեր ի մեզ ըզմիտըս մեր. դատել զհոգի և ըզմարմին, արդարապէս դատմամբ ըստ օրինաց քոց Քրիստոս։ Իսկ անիրաւ դատաւորին որ ի քաղաք բնութեան մերոյ, ոչ ունելով զերկիւղ քո սուրբ, և անպատկառ ի մարդկանէ ոչ առնելով դատ զըրկելոյն։ Այլ անմահ սուրբ Փեսայիդ այրի հոգի իմ պաղատի. տուր զիրա-

ա՛շխա՜րհի ժառանգե՛լ ըզպատրա՛ստեա՜լն, չնորհեա մե՛զ ը՛նդ նո՞սին զարքա՛յութի՛ւն քո՜ Քրի՞ստո՜ս:

ՄԱՂԹԱՆՔ

Փառք հրաշափառ Գալստեան": (Տես ի Թիւն. 42:)

ՔԱՐՈԶ

Վասն ի վերուստ խաղաղութեան՝ և փրկութեան անձանց մերոց, զՏէր աղաչեսցուք:

Տէ՜ր ողո՛րմեա՜:

Վասն լսելի լինելոյ Տեառն Աստուծոյ ձայնի աղաչանաց մերոց, զՏէր աղա:

Վասն քաւիչ և ներող լինելոյ Աստուծոյ ի վերայ մեղաց մերոց, զՏէր աղա:

Վասն Թողլոյ մեզ զամենայն յանցանս մեր, զկամայ և զակամայ, զՏէր աղա:

Վասն զի մի՛ ընդ խոտանսն գտանիցիմք յաւուրն պատասխանատուութեան, զՏէր աղա:

Վասն հոգւոցն: Եւ ևս միաբան: Զանձինս մեր:

Ողորմեաց մեզ:

ԱՂՕԹՔ

Տէր տունջեան՝ և գոյացուցիչ գիշերոյ. որ արարեր զտիւ ի զբօսանս բարեգործութեան՝ ի փրկութիւն անձանց մերոց, և զգիշեր ի հանգիստ քնոյ՝ ողկարացեալ բնութեան մերոյ: Իսկ այժմ զարթուցեալ

քացներ զբերանս մեր յօրհնաբանութիւն՝ անձանց և փառաւորեաղ անուանդ քում սրբոյ ։ Ընկալ և այժմ զաղաչանս մեր , և յաջողեա մեզ ուղիղ հաւատով և առաքինասէր վարուք ի նոյն պաշտօն քո կանխել միշտ . և նովին կանոնիւ անդադար փառաւորել ըզ-Հայր և զՈրդի և զՍուրբ Հոգիդ . այժմ և միշտ և յա ։

Խաղաղութիւն ամենեցուն
Աստուծոյ երկրպագեսցուք

Զքեզ , որ յամենայնի զթած և մարդասէր Տէրդ ես , աղաչեմք հանապազ , զի զօրացուսցես զմեզ որ ըստ օրէ կալ ի կարգի կրօնաւորութեան մերում ։ Թեթեւացո Տէր՝ զքաղցր լուծ քո՝ զոր եդեր ի վերայ մեր . զի կարասցուք կալ ի պատուիրանի քում ; և ըզ-հաճոյսն առնել առաջի քո յամենայն ժամ ; ի տուէ և ի գիշերի ։ Հրեշտակային երգակցութեամբ զքեզ օրհնել՝ զքեզ գովել , և քեզ գոհութիւն և փառս մատուցանել ամենազօր Տէրութեանդ . այժմ և միշտ և յա ։

Ալէլուիա . ալէլուիա . ալէ՛լուիա ։

Կացցէ՛ դշխոյ ընդ աջմէ քումմէ . ի հանդերձս ոսկեհուռս զարդարեալ և պաճուճեալ ։ Լո՛ւր դուստր և տես . խոնարհեցո ունկն քո . մոռա զժողովուրդ քո և զտուն հօր քո . զի ցանկացաւ թագաւոր գեղոյ քո՛յ ։

Ալէ ։ Տարցի՛ն թագաւորի կուսանք զհետ նորա . և զընկերս նորա տարցի՛ն նմա ։ Ածցի՛ն ցնծութեամբ

և ուրախութեամբ. և տարցին ի տաճար Թագաւորի. և փոխանակ հարց քոց եղիցին որդիք քո:

Փառք և եր". Այժմ և միշտ և".

Ալէլուիա. ալէլուիա. ալէլուիա:

ՄԱՂԹԱՆՔ

Սաղմոսիւք և օրհնութեամբ և երգօք հոգևորօք անդադար փառաւորեմք զՀայր և զՈրդի և զՍուրբ Հոգին, այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից":

Կարգաւորութիւն հատուածոց աղօթից առաւօտու ժամուն: Որ կատարի է դէմս Որդւոյն Աստուծոյ, որ երևեցաւ իւղաբերիցն:

Օրհնեալ Տէր մեր Յիսուս Քրիստոս. ամէն.
Հայր մեր որ յերկինս ես":

Լցաք առաւօտու ողորմութեամբ քով. ցնծացաք և ուրախ եղաք զամենայն աւուրս կենաց մերոց. Ուրախ եղաք փոխանակ. (Տես ի Թիւ. 46:)

ՀԱՐՑ ԲՁ:

Որ աքանչելիդ ես ի բարձունս տէր, և ահաւոր ի մէջ երկրի անուն քո սուրբ. օրհնեալ ես Աստուած հարցըն մերոց: Որ զհաւատացեալսն ի քեզ պահեալ, և ըղչարսըն պատժեալ գործակ-

ցօք ջըրմիք սուզմամբ յանդունդս . օրհնեալ ես Աստուած հարցըն մերոց ։ Որ հաստատեցեր ազգի մարդկան հրով փորձիլ ի յերկրորդումըն ; պահեա անարատ ըզքո փըրկեալքս . օրհնեալ ես Աստը" ։

Գ . Ըզպէր օրհնեցէք եւ բարձր արարէք ըզնա յաւիտեանս ։ Օրհնեցէք . Զթագաւորըն յաւիտենից Քրիստոս, որ եկն և փըրկեաց զամենայն արարածս . եւ" ։

Փառք Հօր եւ Որդւոյ եւ Հոգւոյն Սրբոյ :

Օրհնեցէք . Որ արար զաւըրստեամբն իւրով զփըրկութիւն որդւոց մարդկան . եւ" ։

Այժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւիտենից, ամէն :

Ցոյցէ . Նոր արարածք պատուեալք ի հրեշտակաց, զերծեալք ի խաւարէ աւուրյն . եւ" ։

## ՔԱՐՈԶ

Եկեալքս ամենեքեան ի սուրբ (Տես ի Թիւն . 52 :)

### Մեծացուսցէ ԲՋ

Ըղ կուսութիւնըդ քո Աստուածածին անարատ, զոր ոչ բոցակիզեաց հուր Աստուածութեանըն, մեծացուցանեմք ։ Որ յարգանդի քում անապականաբար բնակեցաւ Քրիստոս Աստուած, և Փըրկիչ անձանց մերոց, մեծացուցանեմք .

Փառք Հօր եւ". Այժմ եւ միշտ":

Անհասանելի տէրութեանն կայն յայտնութեան աշխարհի ծագեցաւ. անմատոյց լուսոյն երկրպագեցուք:

Քարոզ՝ Սուրբ զԱստուած": Աղօթք՝ Ընկալ Տէր:
(Տես ի Թուն. 55:)

Ողորմեա ԲՁ

Թիւնս իմ. Թագաւոր փառաց քեզ սպասեսցուք պատրաստեալք արթնութեամբ. ընդառաջել որ գաս ի դատել զերկիր: Անդոր վառեալ լապտերօք հաւատով ընդ դասս իմաստուն կուսանացն, մտանել ի յարագաստ ընդ երկնաւոր Փեսային:

Փառք Հօր եւ". Այժմ եւ միշտ":

Փութասցուք կանխել յառաջ քան զձայն Աստուածային բարբառոյն. զի մի մնասցուք արտաքս ըստ շիջման հինգ կուսանաց:

ՔԱՐՈԶ

Երկրպագեսցուք՝ (Տես ի Թուն. 58:).

Տէր յերկնից ԲՁ

Որ նստիս ի քերովբէս Աստուած բանդ. այսօր վասն մեր խոնարհութեամբ նստար ի լեռնըն Ձիթենեաց. օրհնեսցուք զքեզ անդադար եր-

Փառք Հօր և". Այժմ և միշտ":

Լուսաւո՛րեա ըզմե՛զ Քրիստոս ի մի՛ւսանգամ քո՛ գալըստեանն. յորժամ ծագի՛ս ի՛ յերկնից և նո՛րոգես զքո զա՛րարա՛ծս:

Քարոզ՝ Վասն խաղաղութեան: Աղօթք՝ Սուրբ ես տէր. (Տես ի Երես. 67 :)

Այս սաղմոս ԽԴ. ողբաձայն ասա:

ԿԸ. Տարցին թագաւորի կուսանք զհետ նորա, և զընկերս նորա տարցին նմա:

Փխ. Բղխեաց սիրտ իմ զպատգամս քո բարի, և ասացից զգործս իմ թագաւորի:

Լեզու իմ որպէս գրիչ արագագրի դպրի, գեղեցիկ տեսլեամբ քան զամենայն որդիս մարդկան:

Սփռեցան շնորհք ի շրթանց քոց. վասն այսորիկ օրհնեաց զքեզ Աստուած յաւիտեան:

Ած զսուր ընդ մէջ քո հզօր, վայելչութեան և գեղոյ քոյ:

Լարեա՛ ուղղեա՛ և թագաւորեա՛՝ վասն ճշմարտութեան հեզութեան և արդարութեան, և առաջնորդեսցէ քեզ սքանչելապէս աջ քո:

Նետք քո սրեալ են հզօր, և ժողովուրդք ի ներքոյ քոյ անկցին, ի սիրտս թշնամեաց թագաւորի:

Աթոռ քո Աստուած յաւիտեանս յաւիտենից, գաւազան ուղղութեան՝ գաւազան արքայութեան քո:

Սիրեցեր զարդարութիւն, և ատեցեր զանօրէնութիւն։

Վասն այսորիկ էօծ զքեզ Աստուած Աստուած քո իւղով ուրախութեան, առաւել քան զընկերս քո։

Զմուռս և ստաշխն և կասիա ի զգեստէ քումմէ, ի տաճարաց փղոսկրէից, ուստի ուրախ արարին զքեզ դստերք թագաւորաց ի պատիւ։

Կացցէ դշխոյ ընդ աջմէ քումմէ, ի հանդերձս ոսկեհուռս զարդարեալ և պաճուճեալ։

Լո́ւր դուստր և տես՝ խոնարհեցո́ զունկն քո. մոռա́ զժողովուրդ քո և զտուն հօր քոյ. զի ցանկացաւ թագաւոր գեղոյ քո։

Սա ինքն է տէր քո՝ երկիրպագցես նմա, և դուստրը ծուրայ երկիրպագցէ նմա. և պատարագօք զերեսս նորա պաղատեսցեն մեծամեծք ի ժողովրդոց։

Ամենայն փառք դստեր թագաւորի ի ներքոյ, ի վերջաւորս ոսկեհուռն զարդարեալ և պաճուճեալ։

Տարցին թագաւորի կուսանք զհետ նորա, և զընկերս նորա տարցին նմա։

Ածցին ցնծութեամբ և ուրախութեամբ և տարցին ի տաճար թագաւորի, և փոխանակ հարց քոց եղիցին որդիք քո։

Կացուսցես զնոսա իշխանս ընդ ամենայն երկիր, և յիշեսցի անուն քո ընդ ամենայն ազգս ազգաց։

Վասն այսորիկ ժողովուրդք խոստովան եղիցին առ քեզ, յաւիտեան՝ և յաւիտեանս յաւիտենից։

Աւետարան Ծ՞ ըԹէ

Սրբոյ Աւետարանին Յիսուսի Քրիստոսի որ ըստ Մարկոսի։

Գլ՝ 12. համր 18։

Առ Տէրն մեր Յիսուս Քրիստոս։

Եւ առաքեն առ նա զոմանս ի Փարիսեցւոց անտի՝ և ի Հերովդիանոսացն, զի զնա որսասցեն բանիւ. և նոքա եկեալ հարցանէին զնա նենգութեամբ և ասէին։ Վարդապետ, գիտեմք զի ճշմարիտ ես. և ոչինչ փոյթ է քեզ զումեքէ. զի ոչ հայիս յերեսս մարդկան. այլ ճշմարտութեամբ զճանապարհն Աստուծոյ ուսուցանես. արդ՝ ասա մեզ՝ արժա՞ն է հարկս տալ կայսեր, թէ ոչ. տացո՞ւք, եթէ ոչ տացուք։ Եւ Յիսուս գիտաց զկեղծաւորութիւն նոցա՝ ասէ ցնոսա. զի՞ փորձէք զիս կեղծաւորք. բերէք ինձ դահեկան մի՝ զի տեսից. և նոքա բերին։ Եւ ասէ ցնոսա. ո՞յր է պատկերս այս, կամ գիր. և նոքա ասեն ցնա՝ կայսեր։ Պատասխանի ետ Յիսուս, և ասէ ցնոսա. երթա՛յք, տո՛ւք զկայսերն կայսեր. և զԱստուծոյն, Աստուծոյ. ի զարմացման էին նա։ Գան առ նա Սադուկեցիքն, որք ասեն՝ թէ չիք յարութիւն. հարցանէին զնա և ասէին. Վարդապետ, Մովսէս գրեաց մեզ. եթէ ուրուք եղբայր մեռանիցի և թողացու կին. և զորդի ոչ թողուցու, առցէ եղբայր նորա զկին նորա. և յարուսցէ զաւակ եղբօր իւրում. Արդ՝ եօթն եղբարք էին առ մեզ. առաջինն էառ կին՝ և մեռաւ. և ոչ

եթող զաւակ։ Եւ երկրորդն էառ զնոյն, և մեռաւ․ և ոչ նա եթող զաւակ․ Նոյնպէս և երրորդն էառ ըզնոյն։ Եւ եօթանեքեան իսկ․ և ոչ թողին զաւակ․ յետ ամենեցուն մեռաւ և կինն։ Արդ՝ ի յարութեանն, յորժամ յառնիցեն, ո՞յր ի նոցանէ լինիցի կինն՝ զի եօթանեքեան կալան զնա կին։ Պատասխանի ետ Յիսուս, և ասէ ցնոսա․ ո՛չ վասն այդորիկ իսկ մոլորեալ էք․ զի ո՛չ գիտէք զգիրս՝ և ո՛չ զզօրութիւնն Աստուծոյ։ Զի յորժամ ի մեռելոց յարիցեն, ո՛չ արք կանայս առնեն, և ո՛չ կանայք արանց լինին․ այլ իբրև զհրեշտակս իցեն՝ որք յերկինս են։ Այլ վասն յարութեան մեռելոց զի յառնեն, ո՛չ իցէ ընթերցեալ ձեր ի գիրսն Մովսէսի ի մորենւոջն․ որպէս ասաց ցնա Աստուած․ ես եմ, ասէ Աստուած Աբրահամու․ Աստուած Իսահակայ․ և Աստուած Յակոբայ։ Եւ ո՛չ է Աստուած մեռելոց՝ այլ կենդանեաց․ և արդ՝ դուք յոյժ մոլորեալ էք։ Եւ մատուցեալ մի ոմն ի դպրացն՝ լսէր նոցա մինչ վիճէին․ իբրև ետես եթէ բարւոք ետ նոցա զպատասխանին, եհարց զնա և ասէ․ ո՞ր պատուիրան է առաջին։ Եւ Յիսուս ասէ ցնա․ առաջին քան զամենայն, լո՛ւր Իսրայէլ, Տէր Աստուած մեր՝ Տէր մի է․ Եւ սիրեսցես զՏէր Աստուած քո յամենայն սրտէ քումմէ՝ և յամենայն անձնէ քումմէ․ և յամենայն մտաց քոց և յամենայն զօրութենէ քումմէ․ այս է առաջին պատուիրան։ Եւ երկրորդ նման սմին․ սիրեսցես զընկեր քո իբրև զանձն քո․ մեծ քան զսոսա այլ պատուի-

բան մի՛ գոյ ։ Եւ ասէ ցնա դպիրն , բարւոք է Վարդապետ . ճշմարտութեամբ ասացեր՝ թէ մի է Աստուած՝ և ո՛չ գոյ այլ՝ բաց ի նմանէ ։ Եւ սիրել զնա յամենայն սրտէ՝ և յամենայն զօրութենէ՝ և յամենայն մտաց . և սիրել զընկերն իբրև զանձն , աւաւել է քան զողջակէզս և զզոհս ։ Եւ տեսեալ Յիսուսի թէ իմաստութեամբ ետ զպատասխանին , ասէ ցնա . չես հեռի յարքայութենէ Աստուծոյ . և ո՛չ ոք իշխէր ևս հարցանել ցնա ։ Պատասխանի ետ Յիսուս և ասէ , մինչ ուսուցանէր ի տաճարին , զիա՞րդ ասեն դպիրքն, եթէ Քրիստոս որդի Դաւթի է ։ Եւ ինքն Դաւիթ Հոգւովն Սրբով ասէ . ասաց Տէր ցՏէր իմ , Նի՛ստ ընդ աջմէ իմմէ , մինչև եդից զթշնամիս քո պատուանդան ոտից քոց ։ Արդ՝ եթէ ինքն իսկ Դաւիթ զնա Տէր կոչէ , զիա՞րդ իցէ որդի նորա . և բազում ժողովուրդ լսէր նմա քաղցրութեամբ ։ Եւ ասէր ուսուցանելով ի վարդապետութեան իւրում ․ զգո՛յշ լերուք ի դպրաց անտի . որք կամին ի հանդերձս երևելիս շրջել . ըզ-նախողջոյնս խնդրել ի հրապարակս ։ Եւ զնախաթոռս ի ժողովուրդս . և զգահաւորակս յընթրիս ։ Որք ուտեն զտունս այրեաց . պատճառանօք երկարեն զաղօթս . զի աւելի ևս դատաստանս ընկալցին ։ Կայր Յիսուս ընդդէմ գանձանակին . տեսանէր թէ զիարդ ժողովուրդն արկանէր պղինձ ի գանձանակն . և բազում մեծատունք արկին բազում ինչ ։ Եկն այրի մի , և էարկ երկուս լումայս . որ է նաքարակիտ մի ։ Եւ

կոչեալ առ ինքն զաշակերտսն, ասէ ցնոսա. ամէն ասեմ ձեզ. զի այրին այն տառապեալ՝ շատ էարկ քան զամենեսեան ի գանձանակն։ Քանզի ամենեքին յաւելորդաց իւրեանց արկին. այլ նա ի չքաւորութենէ իւրմէ՝ զամենայն ինչ զոր ունէր՝ էարկ զո-կեւ չափ զկեանս իւր։

ԽԲԳ

Էակա՛ն բանն որ ընդ հօ՛ր աթոռակից և համազօր. յերրորդ աւո՛ւր զջուրսըն զատո՛յց զբոյսս և ըղտունկըս բղխեցոյց. իսկ ի յերրորդ դարուն դարձեա՛լ զջուրցն հեղեղ ցամաքեցոյց. զՆոյ տապանա՛ւն իւր ապրեցո՛յց զկենդանեաց սեռս աճեցոյց. տուք օրհնութի՛ւն անճառ լուսոյն Հօր և Որդւոյ և Սուրբ Հոգւո՛յն։

Ընդ ծառո՛ց երկրի զգալեաց տնկեաց և զտունկս իմանալեաց. զհեղեղ մեղա՛ցըն ցածուցեա՛լ. զդասս արդարոց բազմացուցեալ. յորոց և մե՛ծն ի ծնունդս կանանց միջնորդ շնորհաց և օ՛րինաց. տուք օրհ"։

Թագաւորի՛ն երկնից զինւո՛ր արքայութեանն աւետաւոր. խնդրեա դընե՛լ եւս ի սըրտի առ ի հովտէ՛ս տըրտմականէ. յուխտեալ տեղի՛ն տէրունակա՛ն ի խոստացեալն որդւոց մարդկան. տուք օրհ"։

Ժառանգին հօ՛ր սպասաւոր և յարգանդէ երկրպագող. Կարապե՛տ և Մըկրտիչ այնմ որ մեղաց մերոց քաւիչ. լեր բարեխօ՛ս առ նոյն գթած ջնջել զգիր մեր յանցանաց. տուք օրհ"։

Ի՜ հօրէ՜ լոյս ծագեցա՛ր մեռեալ բնութեան՝ կեն-
դանարար. առաքեցե՜ր յառաջընթաց սուրբ զՅովհան-
նէս քարոզ կենաց. որին հայցմա՜մբն ամենակա՜լ
պաղատանս մեր ընկալ. տուր օրհ” ։

Լուսաշաւի՜ղ յերկինս ելին հոգանիւթեայ սուրբ
հրեշտակին. արժանացո՜ զմեզ նորին նեղ և ան-
ձուկ ճանապարհին. զի հետևո՜ղ գոլով նորին հօր քո
վերին օթեվանին. և երգեսցո՜ւք ընդ երջանկացն ոգ-
ւոց լուսոյ քեզ եՐրգս փառա՜ց ։

Քարոզ. Խնդրեսցուք. Կեցո. Աղօթք՝ Քում ամե-
նազօր և հրաշալի պահպանութեանդ. (Տես ի Թիւն. 75 ։)

Եւ որչափ ի խաղաղութեան ։





Կարգաւորութիւն Հասարակաց աղօթից երեկոյի ժամուն ։ Որ կատարի ի դէմս Որդւոյն Աստուծոյ․ որ էջ ի խաչէն և պատեալ պատանաւ՝ եդաւ ի գերեզմանի ։



Օրհնեալ Տէր մեր Յիսուս Քրիստոս, ամէն ։
Հայր մեր որ յերկինս ես" ։

Ես առ Աստուած կարդացի, և Նա լուաւ ինձ յերեկոյս՝ ի վաղորդեայն՝ և ի հասարակ աւուր ։
Սպասէի Աստուծոյ իմոյ, և ակն ունէի ի կենարարին․ որ փրկէ զծառայս իւր և կեցուցանէ ։
Փառք Հօր և Որդւոյ և Հոգւոյն Սրբոյ ։
Այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից․ ամէն ։
Եւ ևս խաղաղութեան զՏէր աղաչեսցուք ։ Ընկալ կեցո և ողորմեա ։
Օրհնութիւն և փառք Հօր և Որդւոյ և Հոգւոյն Սրբոյ․ այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից․ ամէն ։
Խաղաղութիւն ամենեցուն ։

Սաղմոս ՃԵ ։

Խոնարհեցո տէր և այլն՝ (Տես ի Թիւն ։ 101 ։)

ՄԱՂԹԱՆՔ

Օրհնեալ տէր՝ որ բնակեալդ ես՝ (Տես ի Թիւն․ 176 ։)

Քարոզ և մաղթանք Հասնաւորք՝ (Տես ի Թիւն․ 107 ։)

Մեսեդի ։

Քաղցրութիւն արարեր ընդ ծառայի քում տէր, ըստ բանի քում ։

Քաղցր ես դու տէր, և քաղցրութեամբ քով խրատեա զիս ։

Ընթերցուած ի Ծննդոց ։
Գլ՝ 6. Համ 9.

Եւ այս են ծնունդք Նոյի. Նոյ այր արդար կատարեալ էր յազգի անդ իւրում. և հաճոյ եղև Նոյ Աստուծոյ ։ Եւ ծնաւ Նոյ երիս որդիս. զՍէմ. զՔամ. զՅաբեթ ։ Եւ ապականեցաւ երկիր առաջի Աստուծոյ. և լցաւ երկիր անիրաւութեամբք ։ Եւ ետես Տէր Աստուած զերկիր, և էր ապականեալ. զի ապականեաց ամենայն մարմին զճանապարհ իւր ի վերայ երկրի ։ Եւ ասէ Տէր Աստուած ցՆոյ. ժամանակ ամենայն մարդոյ հասեալ է առաջի իմ. զի լցաւ երկիր անիրաւութեամբք ի նոցանէ. և ահա ես ապականեցից զնոսա և զերկիր ։ Արդ՝ արա դու քեզ տապան ի չորեք կուսի փայտից. խորշս՝ խորշս գործեսցես զտապանն. և նաւթիւ ծեփեսցես զնա ներքոյ և արտաքոյ ։ Եւ այսպէս արասցես զտապանն. յերեք հարիւր կանգնոյ զերկայնութիւն տապանին. և ի յիսուն կանգնոյ զլայնութիւն. և յերեսուն կանգնոյ զբարձրութիւն ։ Գաղելով գործեսցես զտապանն. և ի մի կանգուն կատարեսցես զնա ի վերուստ. և ըզդուռն տապանին ի կողմանէ արասցես. ներքնատու-

նըս · և միջնատունս · և վերնատունս գործեսցես ի նմա ։ Եւ ահա ես ածից զջրհեղեղ ջրոյ ի վերայ երկրի · ապականել զամենայն մարմին · յորում է շունչ կենդանի ի ներքոյ երկնից · և ինչ որ իցէ ի վերայ երկրի՝ սատակեսցի ։ Եւ եդից զուխտ իմ ընդ քեզ · և մտցես ի տապանն · դու և որդիք քո · և կին քո , և կանայք որդւոց քոց ընդ քեզ ։ Եւ յամենայն անասնոց · և յամենայն գազանաց · և յամենայն մարմնոց · երկուս երկուս յամենայնէ մուծցես ի տապանն բուծանել ընդ քեզ · արու և էգ լինիցին ։ Յամենայն հաւուց թռչնոց ըստ ազգի · և յամենայն անասնոց ըստ ազգի · և յամենայն սողնոց երկրի ըստ ազգի իւրեանց · երկու երկու յամենայնէ մտանիցեն առ քեզ · զի կեցցեն ։ Եւ դու առնուցուս քեզ յամենայն կերակրոց զոր ուտիցէք · և ժողովեսցես դու առ քեզ · և եղիցի քեզ և նոցա կերակուր ։ Եւ արար Նոյ զամենայն , զոր միանգամ պատուիրեաց նմա Տէր Աստուած · նոյնպէս և արար ։ Եւ ասէ Աստուած ցՆոյ · մուտ դու և ամենայն տուն քո ի տապանդ · զի զքեզ տեսի արդար առաջի իմ յազգիդ յայդմիկ ։ Եւ յամենայն անասնոց սրբոց մոյծ ընդ քեզ եօթն եօթն արու և էգ · և յամենայն անասնոց որք ոչ են սուրբք, երկուս երկուս · արու և էգ ։ Եւ ի թռչնոց երկնից ի սրբոց՝ եօթն եօթն արու և էգ · և ի թռչնոց որք ոչ սուրբք են՝ երկուս երկուս արու և էգ · բուծանել զաւակ ի վերայ ամենայն երկրի ։ Եւ այլ ես եօթն

օր . և ածից ես անձրև ի վերայ երկրի զքառասուն տիւ և զքառասուն գիշեր . և ջնջեցից զամենայն հասարակ , զոր արարի՝ յերեսաց երկրի ։ Եւ արար Նոյ զամենայն , զոր միանգամ պատուիրեաց Տէր Աստուած ։ Նոյ էր ամաց վեց հարիւրոց . և ջրհեղեղ ջուրցն եղև ի վերայ երկրի ։ Եւ եմուտ Նոյ և որդիք իւր . և կին նորա . և կանայք որդւոց նորա ընդ նմա ի տապանն ; վասն ջուրցն հեղեղի ։ Եւ յամենայն անասնոց սրբոց . և յանասնոց որք ոչ սուրբք էին . և ի թռչնոց սրբոց . և ի թռչնոց , որք ոչ սուրբք էին . և յամենայն սողնոց՝ որք սողին ի վերայ երկրի ։ Երկու երկու մտին առ Նոյ ի տապանն անդր . արու և էգ . որպէս պատուիրեաց նմա Աստուած ։ Եւ եղև յետ եօթն աւուր և ջուր ջրհեղեղին եղև ի վերայ երկրի ։ Յամին վեցհարիւրորդի կենաց Նոյի . յերկրորդում ամսեանն ի քսան և յեօթն ամսոյն . և պատառեցան ամենայն աղբիւրք անդնդոց բազմաց . և սահանք երկնից բացան ։ Եւ եղև անձրև ի վերայ երկրի զքառասուն տիւ , և զքառասուն գիշեր ։ Յաւուր յայնմիկ եմուտ Նոյ . Սեմ . Քամ . Յաբեթ . որդիք Նոյի. և կին Նոյի . երեք կանայք որդւոց նորա ընդ նմա ի տապանն անդր ։ Նոքա և ամենայն գազանք ըստ ազգի . և ամենայն անասուն ըստ ազգի իւրեանց . և ամենայն սողուն շարժուն ի վերայ երկրի ըստ ազգի իւրեանց . և ամենայն հաւ թռչուն ըստ ազգի իւրում ։ Մտին առ Նոյ ի տապանն անդր երկու երկու յամե-

նայն մարմնոյ, յորում էր շունչ կենդանի։ Եւ որք մտանէինն՝ արու և էգ յամենայն մարմնոյ մտանէին. որպէս պատուիրեաց Աստուած Նոյի։ Եւ փակեաց Տէր Աստուած արտաքոյ նորա զտապանն. և եղև ջրհեղեղն զքառասուն տիւ և զքառասուն գիշեր ի վերայ երկրի. և բազմացաւ ջուրն և վերացոյց զտապանն. և բարձրացաւ յերկրէ։ Եւ զօրանայր ջուրն և բազմանայր յոյժ ի վերայ երկրի. և շրջէր տապանն ի վերայ ջրոց։ Եւ սաստկանայր ջուրն յոյժ յոյժ ի վերայ երկրի. և ծածկէր զամենայն լերինս բարձունս որք էին ի ներքոյ երկնից։ Հնգետասան կանգուն բարձրացաւ ջուրն ի վեր. և ծածկեաց զամենայն լերինս։ Եւ մեռաւ ամենայն մարմին շարժուն ի վերայ երկրի. թռչնոց, և անասնոց՝ և գազանաց, և ամենայն սողուն զեռուն ի վերայ երկրի, և ամենայն մարդ։ Եւ ամենայն որ ունէր շունչ կենդանի յռնգունս իւր. և ամենայն որ ինչ էր ի վերայ ցամաքի՝ մեռաւ։ Եւ ջնջեաց զամենայն հաստակ որ էր ի վերայ երեսաց երկրի. ի մարդոյ մինչև յանասուն. և ի սողնոց մինչև ի թռչունս երկնից. և ջնջեցան յերկրէ. և մնաց միայն Նոյ, և որք ընդ նմա էին ի տապանի անդ։ Եւ բարձրացաւ ջուրն ի վերայ երկրի աւուրս հարիւր և յիսուն։ Եւ յիշեաց Աստուած զՆոյ, և զամենայն գազանս, և զամենայն անասունս. և զամենայն թռչունս. որք էին ընդ նմա ի տապանի անդ. և էած Աստուած հողմ ի վերայ երկրի, և դադարեաց

ջուրն։ Եւ խցան աղբիւրք անդնդոց. և սահանք երկնից. և արգելան անձրև յերկնից։ Եւ գիջանէր տակաւ. երթայր ջուրն և թողանայր յերկրէ. և նուազէր ջուրն յետ հարիւր և յիսուն աւուր։ Եւ նստաւ տապանն յեօթներորդում ամսեանն ի քսան և եօթն ամսոյն ի լերինս Արարատայ։ Եւ ջուրն երթայր և նուազէր մինչև ի տասներորդ ամիսն. իսկ յամսեանն մետասաներորդի, որ օր առաջին էր ամսոյն, երևեցան գլուխք լերանց։ Եւ եղև յետ քառասուն աւուր՝ եբաց Նոյ զպատուհան տապանին զոր արար։ Եւ արձակեաց զագռաւն. և ել և անդրէն ոչ դարձաւ մինչև ցցամաքիլ ջրոյն յերկրէ։ Եւ արձակեաց զաղաւնին զհետ նորա տեսանել թէ ցածուցեալ իցէ ջուրն յերեսաց երկրէ։ Եւ չգտեալ աղաւնւոյն հանգիստ ոտից իւրոց, դարձաւ անդրէն առ նա ի տապան անդր. զի ջուր դեռ ունէր զամենայն երեսս երկրի. և ձգեաց զձեռն և ընկալաւ զնա. և էած զնա անդրէն առ իւր ի տապան անդր։ Եւ դադարեաց ևս աւուրս եօթն. և դարձեալ արձակեաց զաղաւնին ի տապանէ անտի։ Եւ դարձաւ առ նա աղաւնին ընդ երեկս. և ունէր տերև ձիթենւոյ շիւղ ի բերանի իւրում. և գիտաց Նոյ, թէ ցածուցեալ են ջուրքն յերկրէ։ Եւ դադարեաց աւուրս եօթն ևս. և դարձեալ արձակեաց զաղաւնին. և ոչ ևս յաւել դառնալ առ նա։ Եւ եղև ի վեցհարիւրորդի և ի միում ամի կենաց Նոյի, յամսեանն առաջնում, որ օր մի էր ամ-

տոյն, նուազեաց ջուրն յերեսաց երկրի. և եբաց Նոյ զծեղուն տապանին զոր արար: Եւ ետես զի նուազեալ էր ջուրն յերեսաց երկրի: Իսկ յամսեան երկրորդի, որ օր քսան և եօթն էր ամսոյն՝ ցամաքեցաւ երկիր: Եւ խօսեցաւ տէր Աստուած ընդ Նոյի, և ասէ: Ե՛լ ի տապանէ այտի, դու և կին քո. և որդիք քո. և կանայք որդւոց քոց ընդ քեզ: Եւ ամենայն գազանք որք են ընդ քեզ. և ամենայն մարմին. ի թռչնոց մինչև ցանասուն. և զամենայն սողուն զեռուն երկրի հան ընդ քեզ. և զեռացին ի վերայ երկրի: Եւ աճեցէք և բազմացարո՛ւք ի վերայ երկրի: Եւ ել Նոյ, և կին նորա, և կանայք որդւոց նորա ընդ նմա: Եւ ամենայն գազան, և ամենայն սողուն շարժուն, և ամենայն թռչուն յերկրէ ըստ ազգի իւրեանց, ելին ի տապանէ անտի: Եւ շինեաց Նոյ սեղան Աստուծոյ. և էառ յամենայն անասնոց սրբոց. և յամենայն թռչնոց սրբոց և եհան ողջակէզ ի վերայ սեղանոյ: Եւ հոտոտեցաւ տէր Աստուած ի հոտ անուշից. և ասէ տէր Աստուած, ածեալ զմտաւ, ո՛չ ևս յաւելից անիծանել զերկիր վասն գործոց մարդկան. զի միտք մարդոյ հաստատեալ են ի խնամս չարին ի մանկութենէ իւրմէ. արդ ո՛չ ևս յաւելից հարկանել զամենայն մարմին կենդանի որպէս արարի: Այսուհետև զամենայն աւուրս երկրի՝ սերմն և հունձք, ցուրտ և տօթ, ամառն և գարուն, զտիւ և զգիշեր մի՛ դադարեսցեն: Եւ օրհնեաց Աստուած զՆոյ և

զորդիս նորա, և ասէ ցնոսա. աճեցէք՝ և բազմացա-
րուք՝ և լցէք զերկիր և տիրեցէք դմա։ Եւ ահ և եր-
կիւղ ձեր եղիցի ի վերայ ամենայն գազանաց երկրի.
և ի վերայ ամենայն թռչնոց երկնից. և ի վերայ ա-
մենայն զեռնոց երկրի. և ի վերայ ամենայն ձկանց
ծովու. զորս ընդ ձեռամբ ձերով ետու։ Եւ ամե-
նայն զեռուն որ է կենդանի, ձեզ լիցի ի կերակուր.
իբրև զբանջար խոտոյ ետու ձեզ զամենայն։ Բայց
զմիս արեամբ շնչոյ մի՛ ուտիցէ՛ք։ Քանզի և զձեր արիւն
շնչոյ խնդրեցից. ի ձեռաց յամենայն գազանաց խնդ-
րեցից զնա. և ի ձեռաց մարդոյ. ի ձեռաց առն ըզ-
շունչ եղբօր իւրոյ խնդրեցից։ Որ հեղու զարիւն մար-
դոյ՝ փոխանակ արեան նորա հեղցի արիւն նորա. զի
ի պատկեր Աստուծոյ արարի ես զմարդն։ Այլ դուք
աճեցէ՛ք և բազմացարո՛ւք՝ և լցէք զերկիր. և բազմա-
ցարո՛ւք ի վերայ դորա։ Եւ խօսեցաւ տէր Աստուած
ընդ Նոյի. և ընդ որդիս նորա որք ընդ նմա էին՝ և
ասէ։ Եւ ահաւասիկ ես հաստատեմ զուխտ իմ ընդ
ձեզ և ընդ զաւակի ձերում յետ ձեր։ Եւ ընդ ամե-
նայն շնչոյ կենդանւոյ որք ընդ ձեզ են. ի թռչնոց
և յանասնոց և յամենայն գազանաց երկրի որք ընդ
ձեզ. և յամենեցունց որք ելին ի տապանէ անտի.
և ամենայն անասնոց երկրի։ Եւ հաստատեցից զուխտ
իմ ընդ ձեզ. և ոչ ևս մեռցի ամենայն մարմին ի ջրր-
հեղեղէ. և ոչ ևս եղիցի ջրհեղեղ ջուրց ապականել
զամենայն երկիր։ Եւ ասէ տէր Աստուած ցՆոյ և

ցորդիս նորա. այս է նշան ուխտին. զոր ես տամ ընդիս և ընդ ձեզ. և ի մէջ ամենայն շնչոյ կենդանւոյ որ է ընդ ձեզ. յազգս յաւիտենից: Զաղեղն իմ եդից յամպս, և եղիցի ի նշանակ յաւիտենական ուխտին ընդիս և ընդ ամենայն երկիր: Եւ եղիցի ի գումարել ինձ զամպս ի վերայ երկրի, երևեսցի աղեղն իմ յամպս: Եւ յիշեցից զուխտ իմ որ ընդիս և ընդ ձեզ. և ի մէջ ամենայն շնչոյ կենդանւոյ յամենայն մարմին. և ոչ ևս եղիցի ջրհեղեղ ի սատակել զամենայն մարմին: Եւ եղիցի աղեղն իմ յամպս. և տեսից յիշել զուխտն յաւիտենական. ի մէջ իմ և ի մէջ ամենայն շնչոյ կենդանւոյ. յամենայն մարմնի որ է ի վերայ երկրի: Եւ ասէ Աստուած ցՆոյ. այս է նշան ուխտին. զոր ուխտեցի ես ընդիս և ընդ ձեզ. և ի մէջ ամենայն մարմնոյ որ է ի վերայ երկրի:

Ընթերցուած Յառակաց:
Գլ՝ 9:

Իմաստութիւն շինեաց իւր տուն. և կանգնեաց սիւնս եօթն: Եզեն զզենլիս իւր. և խառնեաց ի խառնարանս զգինի իւր. և պատրաստեաց զսեղան իւր: Եւ առաքեաց զծառայս իւր՝ կոչել բարձր քարոզութեամբ ի խառնելիս իւր: Եւ ասէ՝ որոք իցէ անզգամ՝ եկեսցէ առիս. և ցպակասամիտսն ասէ: Եկայք՝ կերայք ի հացէ իմմէ՝ և արբէք զգինի իմ. զոր խառնեցի ձեզ: Թողէք զանզգամութիւն, և կեցջիք. խնդրեցէք զիմաստութիւն, զի ապրեսջիք. և ուղղե-

ցէք զիտութեամբ զհանճար. և ուղիղ ճանապարհաւ իմացարո՛ւք զխրատ: Որ խրատէ զչարս՝ առցէ անձին խուռում անարգանս. և որ յանդիմանէ զամբարիշտըն, ատեայ զանձն: Մի՛ յանդիմաներ զչարս՝ զի մի՛ ատեսցեն զքեզ. յանդիմանեա՛ զիմաստունն. և սիրեսցէ զքեզ. զանմիտն. և յաւելցի ատել զքեզ: Տո՛ւր իմաստնոյն պատճառս՝ և իմաստնագոյն եւս լիցի, ծանո՛ արդարոյն՝ և յաւելցի ընդունել: Սկիզբն իմաստութեան՝ երկիւղ Տեառն. և խորհուրդ սրբոց հանճար. իմանալ զօրէնս՝ մտաց առաքաց է: Այսու օրինակաւ բազում ժամանակս կեցցես. և յաւելցին քեզ ամք կենաց: Ո՛րդեակ՝ թէ իմաստուն լինիցիս. անձին քում իցես՝ և ընկերաց. և եթէ անզգամ իցես՝ միայն պեղեսցես զչարիս. որ հաստատի ի ստութեան՝ այնպիսին զհողմս արածէ. և նոյն հալածէ զթռչունս թեւաւորս. քանզի եթող զճանապարհս այգւոյ իւրոյ. և ի շաւղաց անդոյ իւրոյ մոլորեալ է. գնայ ընդ անջուր՝ և ընդ անապատ. և ընդ երկիր կարգեալ ի ծարաւուտ. և ժողովէ ձեռօք իւրովք զանպտղութիւն: Կին անզգամ և յանդուգն կարօտ լիցի հացի. և որ ոչ գիտէ զամօթ: Նստաւ առ դուրս տան իւրոյ աթոռով յայտնապէս ի հրապարակս: Կոչէ զանցաւորս՝ որք գնան ուղիղ զճանապարհս իւրեանց: Որք իցէ ի ձէնջ առաւել անմտագոյն՝ խոտորեսցի առ իս. և պակասամտացդ հրաման տամ, և ասեմ: Զ՛հաց գաղտնի մտադիւր կերի՛ջիք. և զջուր գաղտնի, ախոր-

ժենլով արբջիք։ Եւ ո՛չ գիտէ եթէ երկրածինք առ նըմա կորնչին. և յատակս դժոխոց հասանին. այլ ի բաց փաղեա՛ և մի՛ յամեր ի տեղւոջ նորա. և մի՛ հաստատեր զակն քո ի նա, քանզի այնպէս անցցես ընդ ջուր օտար. և անցանիցես ընդ գետն օտարական. և ի ջրոյ օտարէ ի բաց լինիցիս. և յօտար աղբերէ մի՛ ըմպիցես. զի բազում ժամանակս կեցցես. և յաւելցին քեզ ամք կենաց։ Որդի իմաստուն՝ ուրախ առնէ ըզհայր. որդի անմիտ՝ տրտմութիւն է մօր։ Ոչինչ օգնեսցեն գանձք անօրինաց. այլ արդարութիւն փրկէ ի մահուանէ։ Ո՛չ սովամահ առնէ Տէր զանձն արդարոյ. բայց զկեանս ամբարշտաց կործանեսցէ։ Աղքատութիւն զայր խոնարհեցուցանէ. ձեռք ժրաց մեծացուցանեն։ Որ ջանայ ստութեամբ. նա արածէ զհողմս. նոյն իսկ ինքն հետևի հաւուց թռուցելոց։ Որ ժողովէ ներհնձում, որդի իմաստուն է. այլ որ ննջէ յամարայնի՝ որդի պատկառանաց։ Որդի խրատեալ իմաստուն եղիցի. և անմիտն ի ծառայութիւն վարեսցի. ապրեցաւ ի խորշակէ որդի իմաստուն. խորշակահար լինի յամարայնի որդի անօրէն։ Օրհնութիւն Տեառն ի գլուխս արդարոց. զբերանս ամբարըշտաց ծածկեսցէ սուգ տարաժամ։

Ընթերցուածս յԵսայեայ Մարգարէէ։
Գլ՝ 40. համ 9։

Ե՛լ ի վերայ լերինդ բարձու՝ աւետարանիչդ Սիոնի. բարձրացո՛ զօրութեամբ զբարբառ քո՝ աւետարա-

նիչդ Երուսաղէմի. բարձրացուցէք. մի՛ երկնչիք. ասա՛ ցքաղաքացդ Յուդայ: Ահաւասիկ Աստուած ձեր. ահաւասիկ Տէր Տէր՝ գայ զօրութեամբ և բազուկն տէրութեամբ իւրով. ահաւասիկ վարձք իւր ընդ իւր. և գործք առաջի նորա: Որպէս հովիւ մի հովուեսցէ զխաշինս իւր. և բազկաւ իւրով ժողովեսցէ զգառինս. և ի ծոց իւր կրեսցէ զնոսա. և մխիթար լիցի յղեաց: Ո՞ չափեաց ափով իւրով զջուրս. և զերկինս թզաւ՝ և զերկիր ամենայն քլաւ. ո՞ կշռեաց զլերինս կշռով. և զդաշտս կշռորդօք: Ո՞ գիտաց զմիտս Տեառն. և ո՞ եղև նմա խորհրդակից՝ եթէ խելամուտ արասցէ զնա: Կամ ընդ ո՞ւմ խորհեցաւ՝ և արար զնա խելամուտ. կամ ո՞ եցոյց նմա զդատաստան՝ և զճանապարհս իմաստութեան. կամ ո՞ ետ նմա փոխ յառաջագոյն՝ և հատուցանիցէ նմա: Եթէ ամենայն հեթանոսք իբրև զկաթիլ մի ի դոյլէ են. և իբրև զմէտ մի ի կշռոց համարեցան. և իբրև չիթք ի բերանոյ համարեսցին: Եթէ Լիբանան չէ բաւական յայրումն. և ամենայն չորքոտանիք չեն բաւական յողջակէզս: Եւ ամենայն հեթանոսք ոչինչ են. և յոչինչ համարեցան նմա:

Սոյն Ուղէլ եղէցին ասա:

ՔԱՐՈԶ

Աղաչեսցուք՝ (Տես ի Թիւն. 215:)

Աղօթք՝ Լոյս ձայնից և այլն. ցճաշականն Համբարձի. (Տես ի 110 էն ց113 Թիւսն:)

Համբարձի ԲՁ

Շնորհեա մեզ տէր արթնութիւն ընդ իմաստուն կուսանացն. և զհոգւոց մերոց լապտերըս պայծառացո։ Երկրպագեմք ի քէն տէր զարհուրեալք ի պատասխանւոյն, զամենն ասելով եթէ ոչ գիտեմ ըզձեզ։ Ցորժամ գաս փառօք Հօր դատել ըզտիեզերս ամենայն. շնորհեա մեզ տէր կալ ի յաջմէ քումմէ։ Բացցի մեզ դուռն ողորմութեան երկնաւոր Փեսային, և մտցուք ի յառագաստ ընդ իմաստուն կուսանսն։ Փառք Հօր եւ": Ժամանեսցուք ընդ առաջ Փեսային, և մտցուք ի յառագաստ Նորա. զի մի մնասցուք արտաքս որպէս զյիմար կուսանսն։ Այժմ եւ միշտ եւ": Պայծառասցին լապտերըք հոգւոց մերոց, և բազմեցուսցես ըզմեզ ընդ հրաւիրեալսն ի կոչումն արքայութեանն երկնից։

Քարոզ՝ Վասն խաղաղութեան։ Աղօթք՝ Հայր գթած. (Տես ի Թիւն. 177 :)

Զկնի Հայր գթածին, Սաղմոս՝ ԻԴ։ ողբաձայն։ Եւ յասելն՝ զգեցուսցեն զտասն մանկունսն, և տացեն ի ձեռըս նոցին մոմեղէնս վառեալս՝ յօրինակ տասն կուսանացն, որք եկեալ կանգնեսցին առաջի Աւետարանին։

Առ քեզ տէր համբարձի զանձն իմ. Աստուած իմ

ի քեզ յուսացայ՝ մի՛ ամաչեցից, և մի՛ ծիծաղեսցին զինեւ թշնամիք իմ։

Ամենեքեան որք համբերեն քեզ՝ մի՛ ամաչեսցեն, այլ ամաչեսցեն անօրէնք յունայնութեան իւրեանց։

Զճանապարհս քո տէր ցոյց ինձ, և զշաւիղս քո ուսո՛ ինձ։

Առաջնորդեա՛ ինձ ի ճշմարտութեան քում, և ուսո՛ զիս, զի դու ես Աստուած Փրկիչ իմ. և ես քեզ համբերի զօրհանապազ։

Յիշեա՛ տէր՝ զգթութիւնս քո, և զողորմութիւնս քո՝ որք են յաւիտենից։

Զմեղս մանկութեան իմոյ և զանգիտութեան իմոյ՝ մի՛ յիշեր. այլ յիշեա՛ զիս տէր ըստ ողորմութեան քում վասն քաղցրութեան քոյ, զի քաղցր և ուղիղ ես։

Վասն այսորիկ օրէնսգէտ առնես զմեղաւորս ի ճանապարհի, առաջնորդես հեզոց ի դատաստանի. և և ուսուցանես հեզոց զճանապարհս քո։

Ամենայն ճանապարհք Տեառն ողորմութեամբ և ճշմարտութեամբ են այնոցիկ, ոյք խնդրեն զուխտ և զվկայութիւն նորա։

Վասն անուան քո տէր քաւեա՛ զմեղս իմ՝ զի բազում եղեն. ո՞վ է մարդ որ երկնչի ի Տեառնէ, օրէնսգէտ առնէ զնա ի ճանապարհի յոր և հաճեցաւ։

Անձն նորա ի բարութեան հանգիցէ, և զաւակ նորա ժառանգեսցէ զերկիր։

Զօրութիւն է տէր երկիւղածաց իւրոց, և զկտակա-

բանս իւր ուսուցանէ նոցա ։

Աչք իմ յամենայն ժամ առ տէր են . և նա հանէ յորոգայթէ զոտս իմ ։

Նայեաց առիս և ողորմեաց ինձ , զի միամօր և աղքատ եմ ես ։

Նեղութիւնք սրտի իմոյ բազում եղեն յոյժ , և ի վշտաց իմոց հան զիս ։

Տես զխոնարհութիւն իմ և զվաստակ իմ , և թո՛ղ ինձ զամենայն զմեղս իմ ։

Տես զթշնամիսն իմ զի բազում եղեն , ատելութեամբ՝ որք ի նանիր ատեցին զիս ։

Պահեա զանձն իմ և փրկեա զիս , և մի՛ յամօթ եղէց զի յուսացայ ի քեզ ։

Անմեղք և ուղիղք կցորդք եղեն ինձ , և ես քեզ համբերի . փրկեա Աստուած զԻսրայէլ յամենայն նեղութեանց նորա ։

Ալէ՜լուիա Օ՜րթի՜ ։

Սրբոյ Աւետարանին Յիսուսի Քրիստոսի որ ըստ Մատթէոսի ։

Գլ՝ 24 ։

Տէրն մեր Յիսուս Քրիստոս ։

Եւ ելեալ արտաքս Յիսուս ի տաճարէն գնայր՝ և մատեան աշակերտքն ցուցանել նմա զշինուածս տաճարին ։ Եւ նա պատասխանի ետ և ասէ ցնոսա . տեսանէ՞ք զայդ ամենայն . ամէն ասեմ ձեզ . ո՛չ մը-

Նասցէ այդր քար ի քարի վերայ որ ոչ քակտեսցի։ Եւ մինչդեռ նստէր ի լերինն Ձիթենեաց. մատեան առ նա աշակերտքն առանձինն և ասեն. ասա մեզ ե՞րբ լինիցի այդ. և կամ զի՞նչ նշան իցէ քոյոյ գալստեանն, և վախճանի աշխարհիս։ Պատասխանի ետ Յիսուս և ասէ ցնոսա. զգո՛յշ լերուք՝ գուցէ ոք զձեզ խաբիցէ։ Զի բազումք գայցեն յանուն իմ, և ասիցեն՝ թէ ես եմ Քրիստոսն. և զբազումս մոլորեցուցանիցեն։ Լսելոց էք պատերազմունս՝ և զհամբաւս պատերազմաց. զգ-գո՛յշ լերուք, մի՛ խռովեսջիք. զի պարտ է լինել այնմ ամենայնի՝ այլ չև է կատարած։ Յարիցէ ազգ յազ-գի վերայ, և թագաւորութիւն ի թագաւորութեան. և եղիցին սովք՝ և սրածութիւնք՝ և սասանութիւնք ի տեղիս տեղիս։ Սակայն և այն ամենայն սկիզբն է երկանց։ Յայնժամ մատնեսցեն զձեզ ի նեղութիւն. և սպանանիցեն զձեզ. և եղիջիք ատեցեալք յամենայն ազգաց վասն անուան իմոյ։ Եւ յայնժամ գայթակ-ղեսցին բազումք. և զմիմեանս մատնեսցեն. և ատե-ցեն զմիմեանս։ Եւ բազում սուտ Մարգարէք յա-րիցեն. և զբազումս մոլորեցուսցեն։ Եւ վասն բազ-մանալոյ անօրէնութեանն ցամաքեսցի սէր բազմաց։ Բայց որ համբերեսցէ իսպառ՝ նա կեցցէ։ Եւ քա-րոզեսցի Աւետարանս արքայութեան ընդ ամենայն տիեզերս. ի վկայութիւն ամենայն հեթանոսաց. և ա-պա եկեսցէ կատարած։ Ա՛րդ յորժամ տեսանիցէք զպղծութիւն աւերածոյն, որ ասացեալն է ի ձեռն

Դանիէլի Մարգարէի. զի կայցէ ի տեղւոջն սրբու-
թեան. որ ընթեռնուն ի միտ առցէ։ Յայնժամ որք
ի Հրէաստանի իցեն՝ փախիցեն ի լերինս։ Եւ որ ի
տանիս կայցէ՝ մի՛ իջցէ առնուլ ինչ ի տանէ իւրմէ։
Եւ որ յանդի իցէ՝ մի՛ դարձցի յետս առնուլ զձորձս
իւր։ Բայց վա՜յ իցէ յղեաց և ստնդիացաց յաւուրսն
յայնոսիկ։ Յաղօթս կացէք՝ զի մի՛ լիցի փախուստն
ձեր ձմերանի։ Եւ մի՛ ի շաբաթու. զի եղիցի յայն-
ժամ նեղութիւն մեծ. որպիսի ոչ եղև ի սկզբանէ ա-
րարածոց աշխարհի, մինչև ցայժմ, և ոչ այլ լիցի։
Եւ եթէ ոչ կարճէին աւուրքն այնոքիկ՝ ոչ ապրէր ա-
մենայն մարմին. բայց վասն ընտրելոցն կարճեսցին
աւուրքն այնոքիկ։ Յայնժամ թէ ոք ասիցէ ձեզ. ա-
հաւասիկ աստ է Քրիստոսն, կամ անդ՝ մի՛ հաւա-
տայցէք։ Զի յարիցեն սուտ Քրիստոսք և սուտ Մար-
գարէք. և տայցեն նշանս մեծամեծս և արուեստս.
մինչև մոլորեցուցանել՝ թէ հնար իցէ և զընտրեալ-
սըն։ Ահա յառաջագոյն ասացի ձեզ։ Ապա եթէ ա-
սիցեն ձեզ. ահաւանիկ յանապատի է՝ մի՛ ելանիցէք.
և թէ ահա յշտեմարանս է՝ մի՛ հաւատայցէք։ Զի որ-
պէս փայլակն՝ որ ելանէ յարևելից՝ և երևի մինչև յա-
րևմուտս, այնպէս եղիցի գալուստն Որդւոյ Մարդոյ։
Զի ուր գէշն իցէ, անդր ժողովեսցին արծուիք։ Վաղ-
վաղակի յետ նեղութեան աւուրցն այնոցիկ՝ արեգակն
խաւարեսցի. և լուսին ոչ տացէ զլոյս իւր. և աստեղք
անկցին յերկնից. և զօրութիւնք երկնից շարժեսցին։

Եւ ապա երևեսցի Նշան Որդւոյ Մարդոյ յերկինս. և յայնժամ կոծեսցին ամենայն ազգք երկրի. և տեսցեն զՈրդի Մարդոյ եկեալ ի վերայ ամպոց երկնից զօրութեամբ և փառօք բազմօք։ Եւ առաքեսցէ զհրեշտակըս իւր փողով մեծաւ. և ժողովեսցեն զընտրեալս նոքա ի չորից հողմոց՝ ի ծագաց երկնից մինչև ի ծագս նոցա։ Ի թզենւոյ անտի ուսարո՛ւք զառակն. զի յորժամ նորա ոստքն կակղասցի, և տերևն ցցուիցի, գիտէք թէ մերձ է ամառն։ Նոյնպէս և դուք յորժամ տեսանիցէք զայս ամենայն՝ գիտասջի՛ք թէ մերձ է ի դուրս։ Ամէնասեմ ձեզ՝ եթէ ո՛չ անցցէ ազգս այս՝ մինչև այս ամենայն եղիցի։ Երկինք և երկիր անցցեն. և բանք իմ մի՛ անցցեն։ Բայց վասն աւուրն այնորիկ և ժամու, ոչ ո՛ք գիտէ՝ ո՛չ հրեշտակք երկնից՝ և ո՛չ Որդի՝ բայց միայն Հայր։ Այլ որպէս աւուրքն Նոյի. նոյնպէս եղիցի գալուստն Որդւոյ Մարդոյ։ Զի որպէս էին յաւուրսն՝ որք յառաջ քան զջրհեղեղն. ուտէին և ըմպէին. կանայս առնէին՝ և արանց լինէին. մինչև յօրն յորում եմուտ Նոյ ի տապանն։ Եւ ո՛չ գիտացին՝ մինչև եկն ջրհեղեղն՝ և եբարձ զամենեսին. այնպէս եղիցի և գալուստն Որդւոյ Մարդոյ։ Յայնժամ թէ իցեն երկու յագարակի, մին առցի, և միւսն թողցի։ Եւ եթէ երկու աղայցեն ի մի երկանըս. մին առցի, և միւսն թողցի։ Արթո՛ւն կացէք. զի ո՛չ գիտէք յորում ժամու տէրն ձեր գայ։ Զայն գիտասջի՛ք եթէ գիտէր տանուտէրն. յորում պահու

գող գայ, հսկէր, և ոչ տայր ակն հատանել զտուն իւրոյ։ Վասն այսորիկ և դուք եղերո՛ւք պատրաստք՝ զի յորում ժամու ոչ ակն ունիցիք՝ գայ Որդի Մարդոյ։ Իսկ ո՞վ իցէ հաւատարիմ ծառայ և իմաստուն. զոր կացոյց տէր իւր ի վերայ ծառայից իւրոց՝ տալ նոցա զկերակուր ի ժամու։ Երանի է ծառային այնմիկ՝ զոր եկեալ տէրն գտանիցէ արարեալ այնպէս։ Ամէն ասեմ ձեզ՝ զի ի վերայ ամենայն ընչից իւրոց կացուսցէ զնա։ Ապա եթէ ասիցէ ծառայն չար ի սրտի իւրում. տէր իմ յամէ զգալ։ Եւ սկսանիցի հարկանել զծառայակիցս իւր. ուտիցէ և ըմպիցէ ընդ արբեցողս։ Գայցէ տէր ծառային այնորիկ՝ յաւուր յորում ոչ ակն ունիցի. և ի ժամու յորում ոչ գիտիցէ. և կտրեսցէ զնա ընդ մէջ. և զբաժին նորա ընդ կեղծաւորս դիցէ. անդ եղիցի՝ լալ և կրճել ատամանց։ Յայնժամ նմանեսցի արքայութիւն երկնից տասն կուսանաց. որոց առեալ զլապտերս իւրեանց ելին ընդ առաջ Փեսային և Հարսին։ Հինգն ի նոցանէ յիմարք էին. և հինգն իմաստունք։ Յիմարքն առին զլապտերսն. և զձէթ ընդ իւրեանս ոչ բարձին։ Իսկ իմաստունքն առին ձէթ ամանօք ընդ լապտերս իւրեանց։ Եւ ի յամել Փեսային՝ նիրհեցին ամենեքեան՝ և ի քուն մտին։ Եւ ի մէջ գիշերին եղև բարբառ՝ ահա՝ Փեսայ գայ՝ արի՛ք ընդ առաջ նորա։ Յայնժամ յարեան ամենայն կուսանքն՝ և կազմեցին զլապտերս իւրեանց։ Ասեն յիմարքն ցիմաստունսն. տո՛ւք մեզ յիւ-

ղոյդ ձերմէ. զի ահա չիջանին լապտերքս մեր։ Պատասխանի ետուն իմաստունքն, և ասեն. գուցէ, ոչ իցէ մեզ և ձեզ բաւական. այլ երթայք ի վաճառականըս՝ և գնեսջիք ձեզ։ Իբրև գնացին նոքա գնել՝ եկն Փեսայն՝ և պատրաստքն մտին ընդ նմա ի հարսանիսն՝ և փակեցաւ դուռն։ Յետոյ գան և այլ կուսանքն՝ և ասեն. տէ՛ր տէ՛ր՝ բաց մեզ։ Նա պատասխանի ետ և ասէ. ամէն ասեմ ձեզ՝ թէ ոչ գիտեմ ըզձեզ։ Արթուն կացէք՝ զի ոչ գիտէք զօրն և ոչ ըզժամ։ Որպէս այր մի գնացեալ ի տար աշխարհ. կոչեաց զծառայս իւր. և ետ նոցա զինչս իւր։ Ումեմըն ետ հինգ քանքար՝ և ումեմն երկուս, և ումեմն մի. իւրաքանչիւր ըստ իւրում կարի՝ և գնաց։ Զօգաւ վաղվաղակի՝ որ էառ զհինգն՝ գործեաց նոքօք. և շահեցաւ այլ ևս հինգ։ Նոյնպէս և որ զերկուսն, շահեցաւ այլ ևս երկուս։ Եւ որ զմին էառ՝ գնաց, փորեաց զերկիր. և թաքոյց զարծաթ տեառն իւրոյ։ Յետ բազում ժամանակի գայ տէր ծառային այնոցիկ՝ և առնէ համարս ի մէջ նոցա։ Եւ մատուցեալ՝ որ ըզհինգ քանքարն էառ՝ մատոյց այլ ևս հինգ քանքար՝ և ասէ. տէ՛ր՝ հինգ քանքար ետուր ցիս. արդ՝ ահաւասիկ հինգ այլ ևս քանքար ի վերայ շահեցայ։ Ասէ ցնա տէրն իւր. ազնիւ ծառայ՝ բարի և հաւատարիմ. որովհետև ի սակաւուդ հաւատարիմ ես, ի վերայ բազմաց կացուցից զքեզ. մուտ յուրախութիւն տեառըն քոյ։ Մատուցեալ և որոյ զերկուս քանքարն

առեալ էր՝ և ասէ. տէ՛ր՝ երկուս քանքարս ետուր ցիս. ահաւասիկ երկուս ևս այլ քանքարս՝ զորս ի վերայ շահեցայ։ Ասէ ցնա տէր իւր. ազնիւ ծառայ՝ բարի և հաւատարիմ. որովհետև ի սակաւուդ հաւատարիմ ես, ի վերայ բազմաց կացուցից զքեզ. մո՛ւտ յուրախութիւն տեառն քո։ Մատուցեալ և որոյ ըզմի քանքարն առեալ էր, և ասէ. տէ՛ր՝ գիտէի, զի այր մի խիստ ես. հնձես, զոր ոչ սերմանեցեր. և ժողովես, ուստի ոչ սփռեցեր։ Երկեայ, գնացի, և թագուցի զքանքարն քո յերկրի. արդ՝ ահաւասիկ քոյդ ցքեզ։ Պատասխանի ետ տէրն՝ և ասէ ցնա. ծառայ չար և վատ. գիտէիր եթէ հնձեմ. ուստի ոչ սերմանեցի. և ժողովեմ՝ ուստի ոչ սփռեցի։ Պարտ էր քեզ արկանել զարծաթդ իմ ի սեղանաւորս. և եկեալ ես տոկոսեօք պահանջէի զիմն։ Արդ՝ առէք ի դմանէ ըզքանքարդ՝ և տո՛ւք այնմ, որ ունիցի զտասն քանքարըն։ Զի ամենայնի, որ ունիցի, տացի և յաւելցի. և որ ոչն ունիցի, և զոր ունիցին, բարձցի ի նմանէ։ Եւ զծառայդ անպիտան հանէք ի խաւարն արտաքին. անդ եղիցի լալ՝ և կրճել ատամանց։ Եւ յորժամ եկեսցէ Որդի Մարդոյ փառօք իւրովք և ամենայն հրեշտակք ընդ նմա. յայնժամ նստցի յաթոռ փառաց իւրոց։ Եւ ժողովեսցին առաջի նորա ամենայն ազգք. և մեկնեսցէ զնոսա ի միմեանց, որպէս հովիւ՝ զի մեկնեսցէ զօդիս յայծեաց։ Եւ կացուսցէ զօդիսն ընդ աջմէ իւրմէ՝ և զայծիսն ի ձախմէ իւրմէ։

Յայնժամ ասասցէ Թագաւորն ցայնոսիկ՝ որք ընդ աջմէն իցեն. եկա՛յք օրհնեալք Հօր իմոյ՝ ժառանգեցէք զպատրաստեալ ձեզ արքայութիւնն ի սկզբանէ աշխարհի։ Զի քաղցեայ՝ և ետուք ինձ ուտել. ծարաւեցայ՝ և արբուցէք ինձ. օտար էի՝ և ժողովեցէք զիս։ Մերկ՝ և զգեցուցէք զիս. հիւանդ էի՝ և տեսէք զիս. ի բանտի էի՝ և եկիք առ իս։ Յայնժամ պատասխանի տացեն նմա արդարքն և ասասցեն. Տէ՛ր՝ ե՛րբ տեսաք զքեզ քաղցեալ՝ և կերակրեցաք. կամ ծարաւի, և արբուցաք։ Ե՞րբ տեսաք զքեզ օտար, և ժողովեցաք. կամ մերկ, և զգեցուցաք։ Ե՞րբ տեսաք զքեզ հիւանդ, կամ ի բանտի՝ և եկաք առ քեզ։ Պատասխանի տացէ Թագաւորն՝ և ասասցէ ցնոսա. ամէն ասեմ ձեզ՝ որովհետև արարիք միում յեղբարցս այսոցիկ փոքրկանց՝ ինձ արարիք։ Յայնժամ ասասցէ և ցայնոսիկ՝ որք ընդ ահեկէն իցեն. երթա՛յք յինէն անիծեալք ի հուրն յաւիտենական. որ պատրաստեալ է սատանայի և հրեշտակաց նորա։ Զի քաղցեայ, և ո՛չ ետուք ինձ ուտել. ծարաւեցայ, և ո՛չ արբուցէք զիս։ Օտար էի, և ո՛չ ժողովեցէք զիս. մերկ էի, և ո՛չ զգեցուցէք զիս. հիւանդ էի՝ և ի բանտի՝ և ո՛չ տեսէք զիս։ Յայնժամ պատասխանի տացեն և նոքա՝ և ասասցեն. տէ՛ր ե՛րբ տեսաք զքեզ քաղցեալ՝ կամ ծարաւի, կամ օտար՝ կամ մերկ՝ կամ հիւանդ՝ կամ ի բանտի՝ և ո՛չ պաշտեցաք զքեզ։ Յայնժամ պատասխանի տացէ նոցա և ասասցէ. ամէն ասեմ

ձեզ՝ որովհետեւ ոչ արարէք միում ի փոքրկանցս յայսցանէ՝ և ոչ ինձ արարէք։ Եւ երթիցեն նոքա ի տանջանս յաւիտենականս. և արդարքն ի կեանսն յաւիտենականս։ Եւ եղեւ իբրեւ կատարեաց Յիսուս զամենայն զբանս զայսոսիկ՝ ասէ ցաշակերտսն իւր։ Գիտէք, զի յետ երկուց աւուրց զատիկ լինի. և Որդի Մարդոյ մատնի ի խաչ ելանել։

Ձայնի փառող. Խնդրեցայց. Կեցո Տէր՝ յաղթեա։
Աշօլէ. Թագաւոր խաղաղութեան։

Տես ի Թիւն. 114:

Եւ արձակմն ի խաղաղականին։



# ԱՒԱԳ

# ՉՈՐԵՔՇԱԲԱԹԻ



## Ի ԳԻՇԵՐԻՆ

### Օրհնութիւն ԳԶ.

Որ յաթոռ փառաց բազմեալ ընդ Հօր անըսկըզբնակից բանդ. այսօր բազմիլ ընդ հողեղէնսն յանձն առեր. օրհնեմք զեկեալդ ի փրկութիւն աշխարհի։ Որ զանճառ Աստուածութեամբդ օծեալ զքո ծառայական կերպ, այսօր համեցար օծանիլ իւղով ի մեղաւորաց. օրհն’’։ Որ կենարար թաղման քո գուշակ զիւղոյն ծանուցեր զօծումն. այսօր Յուդային յայտնեցաւ խորհուրդ արծաթսիրութեան. օրհն’’։

Որ խորհրդեամբ ընդ Հօր և Հոգւոյն արար է պատկեր իւր ըզմարդն առաջին. այսօր որդիք մարդկան ժողովեալ խորհին մատնել ի մահ զՈրդին Աստուծոյ։

Վերաձգողն երկնից մըշտընջենաւոր հօր որդին ներգործեալ իմովս ի վեր քան ըզհրաշս, ծառայի առեալ ըզկերպ անկողոպտելի Աստուածութեամբն. Բանին զմաքրեցելոցն ջրով զոտըս լուանայ. զի ըզխոնարհութիւն ի նոսա տըպաւորեսցէ, Երրորդութեանըն զոլ օթեւան. Բաշխէ զՄարմին իւր և զԱրիւն, ընծայ ուխտ անուանեալ և յիշատակ կատարումն մահուանն, մերձեցելոցս ի նա սըրբութեամբ.

Արկողդ ըզլոյս որպէս զօթոց, այսօր անձաւխոնարհութեամբ. ի վերնատունըն խորհըրդոյ ըզգեստ ծառայի ըմփածանիլ յանձն առեր. օրհնեմք զերկայրդ ի կատարումն չարչարանաց. Որով երկըրպագեն դասք հրեշտակաց խոնարհեցար ի լուանալ զոտըս հողեղենս, բըժըշկել զոտքս. ըզգարշապարըս նախահօրն. բըժըշկեա զհոգւոյ իմոյ զհիւանդութիւն. Որ ի խորհուրդս փըրկականս Եկեղեցւոյ բաշխեցեր աշակերտացն ըզՄարմին քո, նորոգելով ըզմահացեալսն ի ճաշակմանէ. հաղորդս այժմ ընկալ ըզմեզ միայն Մարդասէր.

Որ անըսկիզբն յէութեանդ ես Աստուած, այսօր

Ցուայլը՛նթաց փա՛յլումըն լո՛ւսատեսի՛լ սատե՛ղն, մոգո՛ւցն հետե՛ւելով նըշա՛նի՛ ի ծը՛նո՛ւնդ Ա՛ստուա՛ծորդւո՛յն ։

Այսօր ցընծա՛ն դասք հրեշտակաց ընդ հա՛ստատիլ քո ի յերկրի ո՛վ լուսեղէ՛ն խորան երկնանըման Եկեղե՛ցի՛ սուրբ. ո՛ւրախ լե՛ր վէ՛մ պատուական հո՛վանի մե՛ր և յո՛յս ։ Զուարճա՛ցիր հարսն ա՛նարատ ըսքօ՛ղ արկեալ վայե՛լչապէս. զարդա՛րեա՛ հա՛նդերձ փառօք և ե՛լ ընդ առաջ ե՛րկնաւո՛ր Փեսային. ո՛ւրախ լե՛ր ամո՛ւլ բազմածին, ա՛հա՛ Փեսա՛յն գայ առ քե՛զ ։ Աստա՛նօր նորոգեցաւ մեզ ա՛ւազան մըկըրտութեան, արգա՛նդ մօ՛ր հոգւո՛վն յըղացեալ ծնանելո՛վ վերըստին զհաւա՛տացեալքս ի Քրիստոս. ո՛ւրախ լե՛ր անմա՛յր յաւաջնումն ա՛հա՛ Որդի՛ն գայ առ քե՛զ ։

Փառք Հօ՛ր եւ Որդւո՛յ եւ Հոգւոյն Սրբոյ.

Ցուդա՛ծ՛ սիրո՛յն աշ·սկերտ փոխանակեա՛ց զատե՛լութի՛ւն առ Վարդա՛պետին, մատնելո՛վ քահա՛նայիցն ընդ ե՛րեսո՛ւն ա՛րծաթո՛յ ։

Այժմ եւ մի՛շտ եւ յաւիտեանս յաւիտենից. ամէն :

Ո՛ր զա՛մենա՛ծ՛յն անօ՛րինաբար կամա՛ւ յանձն ա՛ռեր Փըրկի՛չ ընդ մեղա՛ւորացս. վասն անճա՛ռ խոնարհո՛ւթեանըդ քո՛ և մեզ ո՛ղորմեա՛ ։

## ՄԱՂԹԱՆՔ

Փառք հրաշափառ Գալստեան” ։ (Տես ի Թիւն. 42:)

Քարոզ՝ Վասն ի գիշերի ։ Աղօթք՝ Ի գիշերի և ի տունջեան ։ (Տես ի Թիւն. 42:)

Ալէլուիա. ալէլուիա. ալէ՞լուիա ։

Որ ուտէ՛ր զհաց իմ. յաճախեաց առնել ինձ խաբէ՞ութիւն ։ Այլ դո՛ւ Տէր ողորմեա ինձ, և կանգնեա զիս. և ես հատուցի՞ց նոցա՜ ։

Ալէ. Խորհեցա՛ն և խօսեցան զչարութիւն. և զապիրատութիւն ի բարձունս խօ՞րհեցան ։ Եդի՛ն յերկինս զբերանս իւրեանց. և զլեզուս իւրեանց ածէի՞ն զերկրա՜ւ ։

Փա՛ռք և եր”. Ա՛յժմ և միշտ և” ։

Ալէլուիա. ալէ՛լուիա. ալէլո՛ւիա՜ ։

Մաղթանք՝ Ի գիշերի և ի տուն ։ (Տես ի Թիւն. 45:)

---

Կարգաւորութիւն Հասարակաց աղօթից առաւօտու ժամուն ։ Որ կատարի ի դէմս Որդւոյն Աստուծոյ. որ երեւեցաւ իւղաբերիցն ։

---

Օրհնեալ Տէր մեր Յիսուս Քրիստոս. ամէն ։

Հայր մեր որ յերկինս ես” ։

Լցաք առաւօտու ողորմութեամբ քով. ցնծացաք և ուրախ եղաք զամենայն աւուրս կենաց մերոց ։

Ուրախ եղաք փոխանակ․ (Տես ի Թիւն. 46:)

ՀԱՐՑ ԳԶ

Ո՛ր խօ՛րհրդո՛ց ես Տէր Աստուած ա՛նման, ըղձա՛ծկեա՛լ խորհո՛ւրդ չարին ապա՛կանեալ վա՛նեա․ ըզքե՛զ օրհնե՛մք Աստո՛ւած հա՛րցը՛ն մերո՛ց։ Ո՛ր ըզնախնո՛յն Աբրահա՛մու գհանդէս խորագո՛յնըս ծանուցե՛ր, ա՛ւետեօք որդւոյն պա՛տուեալ․ ըզ՚՚։ Ո՛ր չնորհե՛ս ծածկեալց յա՛յտնի՛ գոլ․ Ցո՛ւցա՛ս ա՛րծաթոյ գանձաստա՛նեցիդ մա՛ոնէք․ ըզ՚՚։
Գ․ Ըզտէ՛ր օրհնեցէ՛ք և՛ բա՛րձր ա՛րարէ՛ք ըզնա յա՛ւիտեա՛ն։

Փառք Հօ՛ր եւ Որդւոյ եւ Հոգւո՛յն Սրբոյ:

․ Զընակեա՛լն ի վերին գօ՛րօքն ծածկա՛պէս խորհուրդ, քահանա՛յքըն հոլոնեալ փառա՛ւէին զԱստուա՛ծ. և՛ բա՛րձր․ ա՛՚՚։

Այժմ եւ մի՛շտ եւ յաւիտեանս յաւիտենից․ ամէն:

Ո՛ր փառըն մե՛ր համբերեա՛ց բանաւորկուէին․ կամա՛ւ վա՛ճառի՛ Աստուած բա՛նն․ և՛ բա՛րձր ա՛՚՚։

ՔԱՐՈԶ

Եկեալքս ամենեքեան ի սուրբ (Տես ի Թիւն. 52:)

Մեծացուցէ ԳԶ

Ա՛ստուածա՛ծին և՛րկնայի՛ն դը՛ւռն Աստուա՛-

ծայրին ձայնիւն աւետարանէր հրեշտակն. ուրախ լեր բերկրեալդ Տէր ընդ քեզ։ Ի քերովբէս բազմեալ ընդ Հօր անապականաբար բնակեալ հանգեաւ ի քում յորովայնի. ուրախ լեր՚՚։

Փառք Հօր եւ՚՚ Այժմ եւ միշտ՚՚։

Որ բոցեղէն սրովբէիւք շուրջառեալ պաշտիւր, այսօր ի մէջ մարդկան ի գիրկս հողեղինի յայտնեալ. ուրախ լեր՚՚։

Քարոզ՝ Սուրբ զԱստուած՚՚. Աղօթք՝ Ընկալ Տէր։
(Տես ի թիւն. 55։)

Ողորմեա ԳՁ

Ընդ քէն խորհեցան ի չարութիւն Աստուած յաւիտենից. որ բանիւ զարարածս խորհրդով հիմնեցուցեր։ Ընդ քեզ որ արարիչդ ես մեծութեան արծաթոյ վաճառէին. յանձն առեր զամենայն համբերելով վասն մեր։

Փառք Հօր եւ՚՚. Այժմ եւ միշտ՚՚։

Ընդ քեզ որ թագաւորդ թագաւորաց ի ծառայէ դատապարտեալ. զի ըզմեզ փրկեսցես ի յանիծիցն Ադամայ։

ՔԱՐՈԶ

Երկրպագեմք (Տես ի թիւն. 58։)

Տէր յերկնից ԳԶ

Այսօր եկեալ կամաւ Փրկիչն առ ի մատնել յանօրէն ժողովրդէն, վասն փրկութեան հեթանոսաց։ Այսօր մատնի Բանն ի բանաւոր հօտէ․ և յառաջնոց դատապարտի յանօրինաց ժողովրդէն․ վասն՚՚։

Փառք Հօր եւ՚՚. Այժմ եւ միշտ՚՚։

Այսօր հողն ըզՏէրըն դատապարտէ, և արծաթոյ վաճառի Արարիչն արարածոց․ վասն՚՚․

Փառք ի բարձունս՝ (Տես ի Թիւն. 61:)

ՆՐԳ

Խորհեցան և խօսեցան պղծութիւն․ և զանիրաւութիւն ի բարձունըս խորհեցան։

Եդին յերկինս զբերանս իւրեանց․ և զլեզուս իւրեանց անցին զերկրաւ։

Քարոզ՝ Փառաւորեսցուք․ Աղօթք՝ Գոհանամք․ Եւ այլն։ զՄանկունքն Շարականն (Տես ի 63 էն ց66 էջն։)

Մանկունք ԳԶ

Նոր ըսքանչելիք այսօր տեսանեմք յաշխարհի ի մէջ հողեղինաց․ արարածք Արարչին ըսպանութեան խորհին զխորհուրդ։ Որ բանիւն իւրով զերկինս և զերկիրըս հաստատեաց յոչնչէ գոյացուցեալ, վաճառի այսօր դիւրագին ընդ երեսուն արծաթոյ։

Փառք Հօր եւ". Այժմ եւ միշտ":

Ո՛վ Յո՛ւդաս արտա՛սուելի՛ ե՛րկնաւոր Վարդա՛պետին սպա՛նութեան խորհի՛ զխորհուրդ. մատնելով անօ՛րինաց զի խա՛չեսցի ի մէ՛ջ ե՛րկրի՛:

Քարոզ՝ Վասն խաղաղութեան: Աղօթք՝ Սուրբ ես Տէր. (Տես ի Թիւն 67:)

Ապա սաղմոս Խ. ողբաձայն ասա:

48. Որ ուտէր զհաց իմ, յաճախեաց առնել ինձ խաբէութիւն:

Փխ. Երանի որ խորհի զաղքատն և զտնանկն, յաւուր չարի փրկէ զնա Տէր:

Տէր փրկէ զնա և կեցուցանէ, երանելի առնէ զնա ի վերայ երկրի, և ոչ մատնէ զնա ի ձեռս թշնամեաց իւրոց:

Տէր օգնական է նմա ի մահիճս ցաւոց իւրոց, զամենայն անկողինս նորա դարձուցանէ ի հիւանդութենէ նորա:

Ես ասացի Տէր ողորմեա ինձ, բժշկեա զանձն իմ, ես մեղայ քեզ:

Թշնամիք իմ ասացին ինձ չար. երբ լիցէ զի մեռցի և կորիցէ անուն նորա:

Մտանէր տեսանել զնանրութիւն, խօսէր ի սրտի իւրում, և ժողովէր զանօրէնութիւն յանձն իւր:

Արտաքս ելանէր և զնոյն խօսէր. զինէն շշնջէին ամենայն թշնամիք իմ:

Խորհեցան չար ի վերայ իմ, բան անօրէնութեան
եդին ի վերայ իմ։

Միթէ որ ննջիցէ՝ այլ ոչ եւս յաւելցի յառնել. քան-
զի եւ այրն խաղաղութեան իմոյ՝ յոր եւ եսն յուսացայ։

Որ ուտէր զհաց իմ, յաճախեաց առնել ինձ խա-
բէութիւն։

Այլ դու Տէր ողորմեա ինձ եւ կանգնեա զիս, եւ ես
հատուցից նոցա։

Յայսմ ծանեայց թէ հաճեցար ընդ իս, զի մի՛ ուրախ
եղիցին յիս թշնամիք իմ։

Այլ զիս յամբծութեան իմում ընկալար. եւ հաստա-
տեցեր զիս առաջի քո յաւիտեան։

Օրհնեալ Տէր Աստուած Իսրայէլի յաւիտենից յաւի-
տեանս, եղիցի եղիցի։

Ալէլուիա Օ՜րթէ՜։

Սրբոյ Աւետարանին Յիսուսի Քրիստոսի որ ըստ
Մարկոսի։

Գլ՝ 14. Համ՝ 1։

Զատիկն մեր Յիսուս Քրիստոս։

Եւ էր զատիկ եւ բաղարջակերք յետ երկուց աւուրց։
Խնդրէին քահանայապետքն եւ դպիրք՝ եթէ զիարդ
զնա նենգութեամբ կալեալ սպանանիցեն։ Բայց ա-
սէին, թէ մի՛ ի տօնի աստ. զի մի՛ խռովութիւն լինի-
ցի ի ժողովրդեանն։ Եւ մինչ էր ի Բեթանիա ի
տան Սիմոնի բորոտի բազմեալ, եկն կին մի, որ ու-

նէր չիք իւղոյ նարդեան ազնուի մեծագնոյ. և բեկեալ զշիշն՝ եհեղ ի վերայ գլխոյ նորա։ Եւ աշակերտքն զչարէին և ասէին. ընդէ՞ր եղև կորուստ իւղոյդ այդորիկ։ Մարթ էր զայդ իւղ վաճառել աւելի քան զերեք հարիւր դահեկանի. և տալ աղքատաց. և զայրանային նմա յոյժ։ Եւ Յիսուս ասէ ցնոսա. Թո՛յլ տուք դմա. զի՞ աշխատ առնէք. զի գործ մի բարի գործեաց դա յիս։ Յամենայն ժամ զաղքատս ընդ ձեզ ունիք. և յորժամ կամիք՝ կարող էք առնել նոցա բարիս. այլ զիս ո՛չ յամենայն ժամ ընդ ձեզ ունիցիք։ Դա զոր ունէր, արար. յառաջագոյն խնկեաց զմարմին իմ ի նշան պատանաց։ Ամէն ասեմ ձեզ. ուր և քարոզեսցի Աւետարանս այս ընդ ամենայն աշխարհ, և զոր արար դա՝ խօսեսցի ի յիշատակի դորա։ Եւ Յուդա Իսկարիովտացի մի յերկոտասանից անտի, գնաց առ քահանայապետսն՝ զի մատնեսցէ զնա նոցա։ Նոքա իբրև լուան՝ խնդացին. և խոստացան տալ նմա արծաթ. և խնդրէր թէ զիա՛րդ պարապով մատնեսցէ զնա։

ԾԻԳ

Խաւարն անգո՜յ և սկզբնածին հալածեցաւ յօրն առաջին. լոյսն այն պայծա՜ռ յօր չորրորդին յարեգական նիւթ հաւաքեա՛լ. լուսինն ի տի՜պ լուսոյ ստեղծեալ և աստեղաց պարք յօրինեալ. որով օրհնի ստեղծողն էից ի բանաւոր պաշտօ՛նէի՜ց։

Ծածկեալ խորհո՜ւրդըն ծանուցա՛ւ չորրորդ դարուն

Խաչհակա՛ւ. ի չորրորդ օ՜ր դարձեալ հրեշտա՛կն եւ զաւետիսըն կուսական. թէ լոյսն որ ո՜չ բովանդակի իքէն մարմնով պարունակի. յոր օրհնեցա՜յք ազգ երկրածինք տուք օրհնութիւն պտղոյ կուսի՛ն.

Կուսին նախնո՜յ մօրն Եւայի՞ յորմէ Ադամըն հին պարտի. բարձան անէ՜ծքըն տրտմական քո սուրբ ծնընդեամբ կոյս Մարիամ. աղաչեա զքո Միածինն Թողուլ զմեղս որդւոց նոցին. յոր օրհ՛՛.

Հարսն ընծայեա՜լ յերկրէ յերկինս յոր համբառնամք առ քեզ զհոգիս. յօր լսելո՜յ քո զաւետի՛ս խընդրեա լինե՞լ մեզ լըսելիս. զձայն աւետեա՜ց քո Միածնին եթէ եկայք օրհնեալք Հօր իմ. յոր օրհ՛՛.

Ձայնիւ առ քե՜զ Տէր պաղատիմք և առաջի քո ան-կանիմք. աղաչանօք Աստուածածնին չիջո ի մէնջ ըղ-բոց հնոցին. տուր արտասուօ՜ք զմեղս ջնջել և վերըս-տին զմեզ նորոգել. յոր օրհ՛՛.

Ղեկավա՜ր ճարտարապետ անցեր ընդ ծով կեն-ցաղս անհե՛տ. վերաբերեա՜ ընդ Պետրոսի զմեզ ի յալեաց մեղաց ծովէս. պաղատանօ՜ք գերագունին ա-նապական քում ծընողին. յոր օրհ՛՛.

Քարոզ. Խնդրեսցուք. Կեցո. Աղօթք՝ Քում ամե-նազօր և հրաշալի գալստեանդ. (Տես ի Թիւն. 75:)

Եւ արձակին ի խաղաղութիւն:



*Կարգաւորութիւն հասարակաց աղօթից երեկոյի ժամուն։ Որ կատարի ի դէմս Որդւոյն Աստուծոյ. որ էջ ի խաչէն և պատեալ պաստառակալաւ՝ եդաւ ի գերեզմանի։*



Օրհնեալ Տէր մեր Յիսուս Քրիստոս. ամէն։
Հայր մեր որ յերկինս ես՚՚։

Ես առ Աստուած կարդացի, և նա լուաւ ինձ յերեկոյս ի վաղորդեայն՝ և ի հասարակ աւուր։

Սպասէի Աստուծոյ իմոյ, և ակն ունէի կենարարին. որ փրկէ զծառայս իւր և կեցուցանէ։

Փառք Հօր և Որդւոյ և Հոգւոյն Սրբոյ։

Այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից. ամէն։

Եւ ևս խաղաղութեան զտէր աղաչեսցուք ընկալ կեցո և ողորմեա։

Օրհնութիւն և փառք Հօր և Որդւոյ և Հոգւոյն Սրբոյ. այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից. ամէն։

Խաղաղութիւն ամենեցուն։

Սաղմոս ՃԺ։

Խոնարհեցո տէր և այլն՝ (Տես ի Թիւն. 101 ։)

ՄԱՂԹԱՆՔ

Օրհնեալ տէր՝ որ բնակեալդ ես՝ (Տես ի Թիւն. 176 ։)

Քարոզ և մաղթանք Հասեայքի՝ (Տես ի Թիւն. 107 ։)

Մեսեդի ։

Նայեա և լուր ինձ տէր Աստուած իմ ։
Մինչև յե՞րբ տէր՝ մոռանաս զիս իսպառ․ մինչև յե՞րբ դարձուցանես զերեսս քո յինէն ։

Ընթերցուած ի Ծննդոց ։
Գլ՝ 18 համ 1 ։

Եւ երևեցաւ նմա Աստուած առ կաղնեաւն Մամբրէի․ մինչդեռ նստէր առ դուրս խորանին իւրոյ ի մէջօրէի ։ Ամբարձեալ զաչս իւր և ետես․ և ահա արք երեք կային ի վերոյ քան զնա․ և իբրև ետես, ընթացաւ ընդ առաջ նոցա ի դրանէ խորանին իւրոյ․ և երկիրպագ ի վերայ երկրի և ասէ ։ Տէ՛ր, եթէ գտի շնորհս առաջի քո․ մի՛ զանց առներ ի ծառայէ քումմէ ։ Այլ առից սակաւ մի ջուր․ և լուասցեն զոտս ձեր․ և զովասջիք ընդ ծառովս ։ Եւ առից հաց՝ և կերիջիք․ և ապա երթիջիք զճանապարհ ձեր․ փոխանակ զի դարձայք առ ծառայ ձեր․ և ասեն՝ այդպէս արա՛․ որպէս ասացերդ ։ Եւ պնդեցաւ Աբրահամ ի խորանն առ Սառրա․ և ասէ ցնա․ փութա՛՝ և թրեա՛ գրիւս երիս ալեր նաշհոյ․ և արա՛ նկանակս ։ Եւ յանդեայ ընթացաւ Աբրահամ․ և էառ որթ մի մատաղ և բարի․ և ետ ցպատանին․ և փութացոյց վաղվաղակի հասուցանել ։ Եւ էառ կոգի և կաթն․ և զորթն զոր հասոյց․ և եդ առաջի նոցա՝ և կերին․ և նա կայր առաջի նոցա ընդ ծառովն ։ Եւ ասեն ցնա․ ո՞ւր է Սառրա կին քո․ նա

պատասխանի ետ՝ և ասէ. ահաւանիկ ի խորանի անդ է։ Եւ ասէ. դարձեալ եկից առ քեզ ի ժամանակի յայսմիկ ի սոյն աւուրս. և ունիցի որդի Սառրա կին քո. և Սառրա ունկն դնէր առ դրան խորանին. քանզի յետոյ նորա կայր։ Եւ Աբրահամ և Սառրա ծերացեալք էին. և անցեալք զաւուրբք. և պակասեալ էր ի Սառրայէ լինիլ ի կանանց օրինի։ Ծիծաղեցաւ Սառրա ընդ միտս. և ասէ. որ ինչ ցայժմ ոչ եղև ինձ, արդ լինիցի՞. և տէր իմ ծերացեալ է։ Եւ ասէ տէր ցԱբրահամ. զի՞ է զի ծիծաղեցաւ Սառրա ընդ միտս իւր՝ և ասէ. թէ արդարև ծնանիցիմ. զի ահա ես պառաւեալ եմ։ Միթէ տկարանայցէ՞ առ յԱստուծոյ բան. ի ժամանակի յայսմիկ դարձայց առ քեզ ի սոյն աւուրս. և եղիցի Սառրայի որդի։ Ժըխտեաց Սառրա. և ասէ թէ ոչ ծիծաղեցայ. քանզի երկեաւ. և ասէ. ոչ այդպէս է. այլ ծիծաղեցար։ Եւ յարուցեալ անտի արանցն հայեցան ընդ երեսս Սոդոմայեցւոցն և Գոմորացւոց. և Աբրահամ երթայր ընդ նոսա. յուղարկել զնոսա։ Եւ ասէ տէր. միթէ թագո՞ւստ ինչ իցէ յԱբրահամէ ծառայէ իմմէ. զոր ինչ գործելոց եմ։ Այլ Աբրահամ լինելով եղիցի յազգ մեծ և ի բազում. և օրհնեսցին ի նա ամենայն ազգք երկրի։ Քանզի գիտէի եթէ պատուիրեսցէ որդւոց իւրոց և տան իւրոյ յետ իւր. պահել զճանապարհս Տեառն և առնել զարդարութիւն և զիրաւունս. և ածցէ տէր Աստուած ի վերայ Աբրահամու զամե-

նայն, զոր խօսեցաւ ընդ նմա։ Եւ ասէ տէր. աղաղակ Սոդոմացւոց և Գոմորացւոց յաճախեաց. և մեղք նոցա մեծացան յոյժ։ Եւ արդ իջեալ տեսից. եթէ ըստ աղաղակին նոցա որ յիս հասանէ՝ վճարիցեն. ապա թէ ոչ՝ զի գիտասցից։ Եւ դարձեալ արանցն անտի եկին ի Սոդոմ. և Աբրահամ կայր առաջի Տեառն։ Եւ մատուցեալ Աբրահամ ասէր. միթէ կորուսանիցես զարդարն ընդ ամբարշտին. և լինիցի արդարն իբրև զամբարիշտն։ Եթէ իցեն յիսուն արդար ի քաղաքի՝ կորուսանիցես զնոսա. և ոչ ներիցես ամենայն տեղւոյն վասն յիսուն արդարոցն եթէ իցեն ի նմա։ Քաւ լիցի քեզ առնել զայդ բան. սպանանել զարդարն ընդ ամբարշտի. և լինիցի արդարն իբրև զամբարիշտն. քաւ լիցի քեզ՝ որ դատես զամենայն երկիր. մի՛ արասցես զայդ դատաստան։ Եւ ասէ տէր. եթէ գտցի ի Սոդոմ յիսուն արդար ի քաղաքի անդ, թողացուցից ամենայն տեղւոյն վասն նոցա։ Պատասխանի ետ Աբրահամ. և ասէ. այժմ բակեայ խօսիլ ընդ Տեառն. բայց ես հող եմ՝ և մոխիր։ Եթէ պակասիցին քան զյիսուն արդար՝ հնգիւ չափ. կորուսանիցես վասն հնգիցն զամենայն քաղաքն. և ասէ՝ ոչ կորուսից՝ եթէ գտցի անդ քառասուն և հինգ։ Եւ յաւել ևս խօսիլ ընդ նմա՝ և ասէ. իսկ եթէ գտցի անդ քառասուն. և ասէ՝ ոչ կորուսից վասն քառասնիցն։ Եւ ասէ՝ միթէ իցէ ինչ տէր եթէ խօսիցիմ. իսկ եթէ գտցին անդ երեսուն. և ասէ. ոչ

կորուսից՝ եթէ գտցի անդ երեսուն։ Եւ ասէ. ու-
րովհետև կամայ խօսիլ ընդ Տեառն. եթէ գտցի անդ
քսան. և ասէ՝ ոչ կորուսից վասն քսանիցն։ Եւ ա-
սէ. միթէ լիցէ ինչ Տէր. եթէ խօսեցայց ես միւս ան-
գամ. եթէ գտանիցի անդ տասն. և ասէ. ոչ կորու-
սից վասն տասանցն։ Եւ գնաց Տէր. իբրև լռեաց
ի խօսելոյ անտի ընդ Աբրահամու. և Աբրահամ դար-
ձաւ ի տեղի իւր։ Եւ եկին երկու հրեշտակքն ի Սո-
դոմ ընդ երեկս. և Ղովտ նստէր առ դրան Սոդոմա-
ցւոցն. իբրև ետես Ղովտ յարեաւ ընդ առաջ նոցա.
և երկիր եպագ ի վերայ երեսաց իւրոց յերկիր՝ և ա-
սէ։ Ահաւասիկ ես տեարք. եկայք ի տուն ծառայի
ձերոյ՝ հանգերուք, և լուացից զոտս ձեր. և կանխեալ
ընդ առաւօտս երթիջիք զճանապարհ ձեր. և ասեն
ոչ. այլ ի քաղաքամիջի աստ ագցուք։ Եւ բռնա-
դատեաց զնոսա յոյժ. և խոտորեցան առ նա. և մը-
տին ի տուն նորա. և արար նոցա ընթրիս. և բա-
ղարջ եփեաց նոցա՝ և կերին։ Մինչչև ի քուն մը-
տեալ էր նոցա. և արք քաղաքին Սոդոմացւոց պա-
տեցին զտունն յերիտասարդաց մինչև ցծերս. ամե-
նայն ժողովուրդն ի միասին։ Եւ կոչէին արտաքս
զՂովտ. և ասէին ցնա. ուր են արքն որք մտին առ
քեզ զգիշերի. հան զնոսա առ մեզ զի գիտասցուք ըզ-
նոսա։ Եւ ել առ նոսա Ղովտ արտաքոյ դրանն. և
զդուռն ձգեաց զկնի իւր։ Եւ ասէ ցնոսա. քա՛ւ
լիցի ձեզ եղբարք. մի՛ գործէք զայդ չարիս։ Են իմ

երկու դստերք· որք զայր ո՛չ գիտեն. հանից զնոսա առ ձեզ· և արարէք ընդ նոսա, որպէս և հաճոյ իցէ ձեզ· բայց միայն արանցդ այդոցիկ մի՛ ինչ մեղս առնիցէք· որովհետև մտին ընդ յարկաւ գերանաց իմոց։ Եւ ասեն· ի բա՛ց կաց· մտեր բնակել պանդխտութեամբ· միթէ և դատաստան ես դատել. այժմ և զքեզ ես չարչարեսցուք առաւել քան զնոսա· և բռնադատէին զայրն զՂովտ յոյժ· և մե՛րձ էին զդուրսն խորտակել։ Եւ ձգեալ արանցն զձեռս իւրեանց կորզեցին յինքեանս զՂովտ ի տուն անդր· և զդուրս տանն փակեցին։ Եւ զարսն որք առ դուրս տանն կային հարին կուրութեամբ· ի փոքուէ մինչև ցմեծն· և լքան խնդրել զդուրսն։ Եւ ասեն արքն ցՂովտ· է՛ ոք քո աստ փեսայ կամ որդիք կամ դստերք, կամ այլ ոք՝ որ քո իցէ ի քաղաքի աստ. հա՛ն զնոսա ի տեղւոջէ յայսմանէ։ Զի կործանելոց եմք մեք զքաղաքս զայս· զի բարձրացաւ աղաղակ սոցա առաջի Տեառն· և առաքեաց զմեզ տէր սատակել զսա։ Ել Ղովտ, և խօսեցաւ ընդ փեսայս իւր· որք առնլլոց էին զդստերս նորա. և ասէ· արի՛ք՝ և ելէք ի տեղւոջէ աստի յայսմանէ· զի սատակէ տէր զքաղաքըս· և թուէր ծաղր առնել յաչս փեսայից իւրոց։ Եւ իբրև եղև առաւօտ· փութացուցանէին հրեշտակքըն զՂովտ՝ և ասէին· արի՛ ա՛ռ զկին քո և զերկուս դստերս քո· զոր ունիս· և ե՛լ աստի՝ զի մի՛ և դու կորնչիցիս ընդ անօրէնութիւնս քաղաքիդ։ Եւ նո-

քս խռովեցան. և կալան հրեշտակքն զձեռանէ նորա· և զձեռանէ կնոջ նորա· և զձեռանէ երկուց դստերաց նորա. զի խնայեաց տէր ի նա· և հանին զնա· և եդին արտաքոյ քաղաքին։ Եւ եղև իբրև հանին զնոսա արտաքս, ասեն՝ ապրեցո́ զանձն քո· մի́ դառնայցես յետս· և մի́ կայցես յամենայն կողմանս աշխարհիդ· զերծի́ր ի լեառն· գուցէ ընդ նոսա ըմբռնիցիս։ Եւ ասէ Ղովտ ցնոսա· աղաչեմ տեա́րք իմ։ Որովհետև եգիտ ծառայ քո ողորմութիւն առաջի քո· և մեծ արարեր զարդարութիւն քո· զոր առնես յիս ապրել անձին իմոյ· և արդ ես ո́չ կարեմ զերծանիլ ի լեառն· գուցէ հասանիցեն ինձ չարիք՝ և մեռանիցիմ։ Ահա քաղաքս այս մե́րձ է անկանել ի նա· որ է փոքրիկ. անդ ապրեցայց· և չէ́ փոքր· և կեցցէ անձն իմ վասն քո։ Եւ ասէ ցնա՝ ահաւադիկ արարի մեծարանս երեսաց քոց· և ի բանի այդմիկ չկործանել զքաղաքն· վասն որոյ խօսեցար։ Եւ արդ փութա́ զերծանիլ ի նա. զի ո́չ կարեմ առնել իրս ինչ մինչև անկանիցիս անդր· վասն այնորիկ կոչեաց զանուն քաղաքին այնորիկ Սեգոր։ Արեգակն ծագեաց յերկիր· և Ղովտ եմուտ ի Սեգոր։ Եւ տէր տեղաց ի Սոդոմ և ի Գոմոր ծծումբ և հուր ի Տեառնէ յերկնից։ Եւ կործանեաց զքաղաքսն զայնոսիկ· և զամենայն կողմանսն. և զամենայն բնակիչս քաղաքացն· և զամենայն բոյս երկրին։ Եւ դարձաւ կինըն Ղովտայ յետս· և եղև արձան աղի։ Եւ կան-

ելեալ Աբրահամ ընդ առաւօտն ի տեղին ուր կայր առաջի Տեառն։ Եւ հայեցաւ յերեսս Սոդոմայեցւոց և Գոմորայեցւոց. և յամենայն երեսս երկրի գաւառին. և ետես՝ և ահա ելանէր բոց երկրին իբրև մրրիկ հնոցի։ Եւ եղև ի սատակել Տեառն զամենայն ըղ-քաղաքս շուրջ զբնակութեամբն. յիշեաց Աստուած զԱբրահամ. և եհան արձակեաց զՂովտ ի միջոյ կոր-ծանմանն. ի կործանել Տեառն զքաղաքսն յորս բնա-կեալ էր ի նոսա Ղովտ։ Եւ ել Ղովտ ի Սեգովրայ. և նստէր ի լերինն. և երկոքին դստերք նորա ընդ նմա. քանզի երկեաւ բնակել ի Սեգոր. և բնակեաց յայրի անդ ինքն և երկոքեան դստերք նորա ընդ նմա։

Ընթերցուածս Առակաց։
Գլ՝ 1. համ 10։

Որդեակ՝ մի՛ խաբեսցեն զքեզ արք ամբարիշտք. և մի՛ ախորժեսցես։ Եթէ կոչեսցեն զքեզ՝ և ասասցեն. եկ ընդ մեզ՝ կցորդ լեր արեան. ծածկեսցուք յերկրի զայր արդար ի տարապարտուց։ Կլցուք զնա կենդանւոյն իբրև դժոխք. և բարձցուք զյիշատակս նորա յերկրէ։ Եւ զստացուածս նորա զպէս պէս ըմբռնեսցուք. լցցուք զտունս մեր աւարաւ։ Զվիճակ քո ա՛րկ ընդ մեզ. զքսակ հասարակաց ստասցուք ամենեքեան. զանձարան ի միասին եղիցի մեր։ Որ-դեակ՝ մի՛ երթար ճանապարհ ընդ նոսա. խոտորեա՛ զոտն քո ի շաւղաց նոցա։ Զի ոտք նոցա ի չարիս ընթանան. և երագունք են ի հեղուլ զարիւն։ Զի

ոչ եթէ տարապարտուց ձգին գործիք թռչնոց։ Քանզի նոքին իսկ որք սպանութեան հաղորդին, գանձեն անձանց իւրեանց չարիս. կործանումն արանց անօրինաց չար է։ Այս ճանապարհք են ամենեցուն՝ որք գործեն զանօրէնս. զի ամպարշտութեամբ զանձինս իւրեանց սատակեն։

Ընթերցուած ի Զաքարիայ Մարգարէէ։
Գլ՝ 11. համ 11.

Եւ ծանիցեն Քանանացիքն զխաշինս պահեստի իմոյ. զի բան Տեառն է։ Եւ ասացի ցնոսա, թէ բարւոք թուի յաչս ձեր. տուք զվարձս իմ. ապա թէ ոչ՝ զրոյց արարէք։ Եւ կշռեցին զվարձս իմ երեսուն արծաթի։ Եւ ասէ ցիս տէր՝ արկ դու զայդ ի բովս. և քննեա թէ փորձ իցէ՝ որպէս ես գտայ փորձ վասն նոցա. և առի զերեսուն արծաթին. և արկի ի տուն Տեառն ի բովս։ Եւ ընկեցի զգաւազանն երկրորդ զպիճակն. ցրել զուխտ իմ ի մէջ Յուդայ և ի մէջ Իսրայէլի։

Ասա Ուղիղ եղիցին սաս։

ՔԱՐՈԶ

Ապաշխարողք՝ (Տես ի Թիւն. 215։)

Աղօթք՝ Լուր ձայնից և այլն. ցճաշականն Համբարձի. (Տես ի 110 էն ց113 Թիւոն։)

Համբարձի ԳՁ

Ո՛վ ըսքանչելի՛ք այսօ՞ր (Տես ի Թիւն. 268։)

Քարոզ՝ Վասն խաղաղութեան։ Աղօթք՝ Հայր գը-թած. (Տես ի Թիւն. 177 :)

Այս Սաղմոս Ի. ողբաձայն ասա։

ԿՑ. Ես ասացի Տէր ողորմեա ինձ, բժշկեա զանձն իմ, եւ մեղայ քեզ։

ՓԽ. Երանի որ խորհի զաղ"։ (Տես ի Թիւն. 269 :)

Ալէլուիա Օ՛րհնէ՛։

Սրբոյ Աւետարանիս Յիսուսի Քրիստոսի որ ըստ Մատթէոսի։

Գլ՝ 26. համր 3։

Վասն Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի։

Յայնժամ ժողովեցան քահանայապետքն՝ և դպիրք՝ և ծերք ժողովրդեանն ի սրահ քահանայապետին՝ որում անուն էր Կայիափա։ Եւ արարին խորհուրդ՝ զի նենգութեամբ կալցեն զՅիսուս՝ և սպանցեն։ Բայց ասէին, թէ մի՛ ի տօնի աստ՝ զի մի՛ խռովութիւն լինիցի ի ժողովրդեանն։ Իբրև եկն Յիսուս ի Բեթանիա ի տուն Սիմոնի բորոտի։ Մատեաւ առ նա կին մի. որ ունէր շիշ իւղոյ ծանրագնի. և թափեաց ի գլուխ նորա ի բազմականին։ Իբրև տեսին աշակերտքն՝ բարկացան, և ասեն. ընդէ՞ր է կորուստ այդ իւղոյդ։ Զի մարթ էր վաճառել զդա մեծագնի՝ և տալ աղքատաց։ Գիտաց Յիսուս՝ և ասէ ցնոսա. զի՞ աշխատ առնէք զկինդ. գործ մի բարի գործեաց

դա յիս։ Ցամենայն ժամ զաղքատս ընդ ձեզ ունիք. բայց զիս՝ ո՛չ հանապազ ընդ ձեզ ունիք։ Արկանել դորա զիւղդ ի մարմին իմ. առ ի թաղելոյ զիս նշանակեաց։ Բայց ամէն ասեմ ձեզ. զի ուր քարոզեսցի Աւետարանս այս ընդ ամենայն աշխարհ, խօսեսցի, և զոր արար դա ի յիշատակի դորա։ Յայնժամ գնաց մի յերկոտասանիցն անուանեալ Յուդաս Սկարիովտացի առ քահանայապետսն, և ասէ. Զի՞նչ կամիք տալ ինձ. և ես մատնեցից զնա ձեզ. և նոքա կշռեցին նմա երեսուն արծաթի։ Եւ յայնմհետէ խնդրէր պարապ՝ զի մատնեսցէ զնա նոցա։

Զինի փարող. Խնդրեսցուք. Կեցո Տէր՝ ձայնիւ։
Աղօթք. Թագաւոր խաղաղութեան։

Տես ի Թիւն. 114:

Եւ արձակին է խաղաղութիւն։





# ԱՒԱԳ

# ՀԻՆԳՇԱԲԱԹԻ



## Ի ԳԻՇԵՐԻՆ

## ՀԱՆԳՍՏԵԱՆ ՇԱՐԱԿԱՆ

### Գ Կ

Լոյս ի լուսոյ զմեզ լուսաւորեա, որ փառօք Հօր հանդերձեալ ես գալ ի դատել զերկիր. արժանաւորեա եւ ըզմեզ ըզնընջեցեալսն անճառ խոստմանց քոց ընդ սուրբս քո։ Հօր եւ Հոգւոյ համագոյակից, ի տիեզերական ահեղ ատենին արժա”։ Երկնի եւ երկրի արդար Դատաւոր, յորժամ հատուցանես ըստ գործոց իւրաքանչիւրոց, արժա”։

Որ արարիչդ ես հրեշտակաց եւ հողեղինաց. եւ մշտընջենաւոր փառաբանիս ի բանաւոր պաշտօնէից, ի քէն հայցեմք թողութիւն շնորհեա ննջեցելոց մերոց։ Որ ի յերկրի երեւեցար եւ ընդ մարդկան բնակեցար. եւ անմա-

հութիւն պարգեւեցեր մեզ մահացելոցս. ի քէն հայ": Յորժամ նըստիս յաթոռ փառաց դատողական իշխանութեամբ, և փառաւորես առ ի քէն փառօք ըզգինս արեան քո տէր. ի քէն":

Որ անըպարտ քո մարդասիրութեամբդ գըթացար յազգըս մարդկան, ծընար ի կուսէն. ըզծընեալս սուրբ աւազանաւն ըզնընջեցեալսն մեր ընդ նոյն սուրբս քո հանգո թագաւոր յաւիտենից։ Որ ի վերայ խաչին զենար որպէս գառն, և զմարմին և զարիւնդ քո բաշխեցեր ի փրկութիւն աշխարհի. զհաղորդեալս մարմնոյ քո և արեան, ըզնընջե":

Աստուածածին խորան լուսոյ անվայլափառ արփւոյն կենաց. որ եղեր արեւելք արեգականն արդարութեանն. և նըստելոցս ի խաւարի լոյս ծագեցեր. վասն որոյ ամենեքեան ըզքեզ միշտ մեծացուցանեմք։ Անապական տաճար և մորենի անկիզելի. որ զանշէջ հուր Աստուածութեանն ի քեզ տարեալ կրեցեր. որով բնութեանս կիզեալ շիջաւ կրից բոց. վասն որոյ": Կենդանի տապանակ կտակարանաց նորոյ ուխտին. որով և մեք յերկիր աւետեաց հորդեալ հոգւով ի քեզ տըպաւո-

ըեալ բանին վասն որոյ ամենեքեան ըղձեզ միշտ"։

Ով պահապան որ ծագեցար յԵդեմայ, Նըշան յաղթութեան ընդդէմ աներեւոյթ թըշնամւոյն։ Դու փակելոյ դրախտին բացող և առաջնորդ աւազակին. որ զբոցեղէն սուրըն կապտեաց անեղին հրամանաւ։

Փառք Հօր եւ Որդւոյ եւ Հոգւոյն Սրբոյ.

Քեւ ցընծան ըստորայինքս ամենայն ի միւսանգամ քո գալըստեանն. և յաւէժ զուարճանան դասք անմարմնոցն առ էիցս։

- Այժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւիտենից. ամէն:

Որ ըստ նըմանութեան մահու քո տընկակից արարեր, և երկնից արքայութեանըդ ժառանգորդ լինել խոստացար. զհաւատացեալս գալըստեան քո տէր ըզննջեցեալսըն մեր ընդ սուրբըս քո հանգո թագաւոր յաւիտենից։

Սաղմոս Աւետարանին

Գ Կ

Ալէլուիա Ալէլուիա։

Տէր լուր աղօթից իմոց՝ աղաղակ իմ առ քեզ եկեսցէ, և մի դարձուցաներ զերեսս քո յինէն։

Յաւուր նեղութեան իմոյ խոնարհեցո առ իս զունկըն քո. յորում աւուր կարդամ առ քեզ՝ վաղվաղակի՜ լուր ի՜նձ։

Սպառեցան որպէս ծուխ աւուրք իմ, և ոսկերք իմ որպէս խռիւ չորացան։

Հարայ ես որպէս խոտ. և ցամաքեցաւ սիրտ իմ. մոռացայ ուտել զհաց իմ ի ձայնէ հեծութեա՜ն իմո՜յ։

Կցեցաւ ոսկր իմ ի մարմին իմ. նմանեցայ ես հաւալասան անապատի։

Եղէ ես որպէս բու յաւերակի, տքնեցայ և եղէ ես որպէս ճնճղուկ միայն ի՜ տանի՜ս։

Նախատեցին զիս թշնամիք իմ զօրհանապազ. և գովիչք իմ ինև երդնուին։

Զմոխիր որպէս զհաց կերի, և զմպելին իմ արտասուօք խա՜ռնեցի՜։

Յերեսաց բարկութեան սրտմտութեան քո, զի դու բարձրացուցեր և խոնարհեցուցեր զիս։

Աւուրք իմ որպէս հովանի անցին, և ես որպէս խոտ ցամա՜քեցա՜յ։

Դու Տէր յաւիտեան կաս, և յիշատակ քո ազգէ մինչև յազգ։

Դու յարուցեալ գթասցիս ի վերայ Սիոնի. ժամանակ գթալոյ նորա հասեա՜լ է ժա՜մ։

Ալէլուիա Օ՛րթէ

Սրբոյ Աւետարանիս Յիսուսի Քրիստոսի որ ըստ Ղուկասու

Գլ՝ 12. համր 32.

Տէրն մեր Յիսուս Քրիստոս ասէ։

Մի՛ երկնչիր հօտ փոքրիկ. զի հաճեցաւ Հայր ձեր տալ ձեզ զարքայութիւն։ Վաճառեցէք զինչս ձեր, և տուք ողորմութիւն. և արարէք ձեզ քսակս առանց հնանալոյ, գանձ անպակաս յերկինս. ուր ոչ գող մերձենայ, և ոչ ցեց ապականէ։ Զի ուր գանձ ձեր է, անդ և սիրտք ձեր եղիցին։ Եղիցին գօտիք ձեր պնդեալ ընդ մէջս՝ և ճրագունք լուցեալք։ Եւ դուք նմանողք մարդկան՝ որ ակն ունիցին տեառն իւրեանց՝ թէ երբ դառնայցէ ի հարսանեաց. զի յորժամ գայցէ և բախիցէ, վաղվաղակի բանայցեն նմա։ Երանի իցէ ծառայիցն այնոցիկ՝ զորս եկեալ տէրն գտցէ արթունս. ամէն ասեմ ձեզ՝ զի գօտի ընդ մէջ ածցէ՝ և բազմեցուսցէ զնոսա, և անցեալ պաշտիցէ զնոսա։ Եւ եթէ յերկրորդ՝ կամ յերրորդ պահու եկեսցէ՝ և գտցէ այնպէս, երանելի են ծառայքն այնոքիկ։ Բայց զայն գիտասջիք, եթէ գիտէր տանուտէրն յորում ժամու գող գայ՝ հսկէր, և ոչ տայր թողլ ական հատանել ի տան իւրում։ Եւ դուք եղերուք պատրաստ՝ զի յորում ժամու ոչ կարծիցէք, գայ Որդի Մարդոյ.

*Երգ՝ Ճանապարհ մոլորելոց և այլն. ցԹագաւոր փառաց.* (*Տես է* 121 *էն ց*123 *Թիւն:*)

ՄԱՂԹԱՆՔ

*Հոգւոյն համբառնացելոյ. Եւ ևս խաղաղ. Քրիստոս Որդի:* (*Տես ի Թիւն.* 36:)

---

Օրհնեալ Տէր մեր Յիսուս Քրիստոս ամէն. Հայր մեր որ յերկինս ես":

---

ՄԱՂԹԱՆՔ

Տէր Յիսուս Քրիստոս. Հրաշափառ. Գալստեանդ շնորհիւ":

ՔԱՐՈԶ

*Եւ ևս խաղաղութեան զՏէր աղաչեսցուք ընկալ կեցո և ողորմեա:*

Օրհնութիւն և փառք Հօր և Որդւոյ և Հոգւոյն Սրբոյ, այժմ և միշտ":

Օրհնութիւն ԳՁ.

Վերա՛ձգողն երկնից մըչանջենա՛ւոր հօր ո՜րդին ներգործեա՛լ խնո՛վս ի վե՛ր քան զհրաշս, ծառայի՛ առեալ ըզկե՜րպ անկողո՛պանելի Ա՛ստուածութեա՜մբն. Բանի՛ն զմաքրեցելոցն ջրո՜վ զոտը՛ս լուանայ. զի ըզխոնարհութի՛ւն ի նոսա՜ տըպաւո՛րեսցէ, Երրորդո՛ւթեանըն զո՛վլ օ՛թե՛աւ՜ն. Բաշխէ զՄա՛րմին իւր

րեանց ի փառս ։ Սակաւաւորն հազարաւոր եղիցի. և կրտսերն յազգ մեծ. զի ես տէր ընդ ժամանակս ժամանակս ժողովեցից զնոսա ։

Ընթերցուած Եզեկիէլի Մարգարէի ։
Գլ՝ 36. համ՝ 24 ։

Այսպէս ասէ տէր. և առից զձեզ ի հեթանոսաց. և ժողովեցից զձեզ յամենայն ազգաց. և տարայց ըզ-ձեզ յերկիրն ձեր ։ Եւ ցանեցից ի վերայ ձեր ջուր սուրբ. և սրբեսջիք յամենայն պղծութեանց ձերոց. և յամենայն կռոց ձերոց սրբեցից զձեզ ։ Եւ տաց ձեզ զսիրտ նոր. և զոգի նոր նորոգեցից ի ձեզ. և հանից զսիրտն քարեղէն ի մարմնոց ձերոց. և տաց ձեզ ըզ-սիրտ մարմնեղէն ։ Եւ զոգի իմ տաց ձեզ. և արա-րից, զի յարդարութիւնս իմ գնայցէք, և զիրաւունս իմ պահիցէք. և առնիցէք զնոսա ։ Եւ բնակիցէք յերկրին զոր ետու հարցն ձերոց. և եղիցիք ինձ ի ժողովուրդ. և ես եղէց ձեզ յԱստուած ։ Եւ զեր-ծուցից զձեզ յամենայն պղծութեանց ձերոց. կոչեցից ցցորեանն, և բազմացուցից զնա. և ոչ ածից ի վե-րայ ձեր սով ։ Եւ բազմացուցից զպտուղ ծառոց, և զարդիւնս անդոց. զի մի ևս ընդունիցիք զնախա-տինս սովու ի մէջ ազգաց ։ Եւ յիշեսջիք զճանա-պարհս ձեր չարս. և զգնացս ձեր զանբարիս. և տաղտ-կասջիք յերեսաց անօրէնութեանց ձերոց ։

Պօղոսի Առաքելոյն յԵբրայեցւոց Թղթոյն է ընթերցուածս ։
Գլ, 10 . Համր 19

Ունիմք այսուհետև եղբարք՝ զհամարձակութիւն ի մուտս սրբութեանցն արեամբն Յիսուսի ։ Որ նորոգեաց մեզ զճանապարհ նորոգ և կենդանի ի ձեռն վարագուրին՝ այսինքն է, մարմնոյ իւրոյ ։ Եւ քահանայ մեծ ի վերայ տանն Աստուծոյ ։ Մատիցուք ճշմարիտ սրտիւ, լրութեամբ հաւատոյ, լուացեալ ըզսիրտս ի խղճէ չարեաց, և մկրտեալ զմարմինս ի ջուր սրբութեան ։ Պինդ կալցուք զխոստովանութիւն անշարժ՝ յուսոյն . զի հաւատարիմ է՝ որ խոստացաւն ։ Եւ զգուշացարո՛ւք միմեանց յորդորմամբ սիրոյ և գործոց բարեաց ։ Եւ մի՛ թողցուք զժողովս միմեանց, որպէս և սովոր են ոմանք . այլ մխիթարեսցուք, և այնչափ ևս առաւել՝ որչափ տեսանիցէք զօրն մերձեալ ։ Զի կամակար մեզ եթէ յանցանիցեմք յետ ընդունելութեան գիտութեան ճշմարտութեանն՝ այնուհետև ո՛չ ևս պիտոյ է վասն մեղաց պատարագ ։ Այլ ահեղ ակնկալութիւն դատաստանին, և նախանձ հրոյն, որ ուտիցէ զհակառակորդսն ։ Արհամարհեալ ուրուք զօրէնսն Մովսէսի, առանց իրիք ողորմութեան՝ առ երկուք կամ երիւք վկայիւք մեռանէր . Իսկ արդ՝ ո՛րչափ սաստիկ պատժոց արժանի համարիցիք զայն, որ զՈրդին Աստուծոյ առ ոտն եհար . և զարիւն նորոյ ուխտին խառնակ համարեցաւ . որով և սրբեցաւն . և զհոգին շնորհաց թշնամանեաց ։ Այլ

գիտեմք զայն՝ որ ասաց. իմ են վրէժխնդրութիւնք. և ես հատուցից՝ ասէ տէր. և դարձեալ թէ՝ դատէ տէր զժողովուրդ իւր։ Ահ մեծ է անկանել ի ձեռս Աստուծոյ կենդանւոյ։

Սաղմոս ԽԱ. ի լման ասա։

Ալէլուիա ալէլուիա

Որպէս փափագի եղջերու յաղբերս ջուրց, այնպէս փափագի անձն իմ առ քեզ Աստուած։

(Տես ի Թիւն. 325։)

Ջէնի՝ Ալէլուիա՜ օ՞րթի։

Սրբոյ Աւետարանին Յիսուսի Քրիստոսի որ ըստ Ղուկասու։

Գլ՝ 7. համր 36։

զՏէրն մեր Յիսուս Քրիստոս։

Աղաչէր զնա ոմն ի Փարիսեցւոցն՝ զի կերիցէ հաց ընդ նմա. և մտեալ ի տուն Փարիսեցւոյն՝ բազմեցաւ։ Եւ կին մի էր ի քաղաքին մեղաւոր. իբրև գիտաց եթէ բազմեալ է ի տան Փարիսեցւոյն, բերեալ շիշ մի իւղոյ նարդեան ազնուի։ Կայր յետոյ առ ոտսն նորա, լայր. և արտասուօքն սկսաւ թանալ զոտս նորա։ և հերով գլխոյ իւրոյ ջնջէր. և համբուրէր զոտս նորա. և օծանէր իւղովն։ Եւ տեսեալ Փարիսեցւոյն՝ որ կոչեացն զնա՝ ասէ ընդ միտս իւր. սա թէ Մարգարէ ոք էր, ապա գիտէր թէ ով և որպիսի ոք կին մերձենայ ի սա. զի մեղաւոր է։ Պատասխանի

ետ Յիսուս և ասէ. Սիմոն, ունիմ ինչ ասել քեզ. և նա ասէ՝ ասա՛ վարդապետ. և ասէ։ Երկու պարտապանք էին ուրումն փոխատուի. միոյն պարտէր հինգ հարիւր դահեկան. և միւսն յիսուն։ Եւ իբրև ոչ գոյր հատուցանել՝ երկոցունց շնորհեաց. արդ՝ ասա՛, ո՞վ առաւել սիրեսցէ զնա։ Ասէ Սիմոն. ինձ այսպէս թուի, թէ որում զբազումն շնորհեաց. և նա ասէ ցնա. ուղիղ դատեցար։ Եւ դարձեալ ի կինն կողմն, ասէ ցՍիմոն. տեսանե՞ս զայս կին. մտի ի տուն քո՝ ջուր ոտից իմոց ոչ ետուր. իսկ սա արտասուօք իւրովք եթաց զոտս իմ, և հերօք իւրով ջնջեաց։ Համբոյր մի դու ոչ ետուր ինձ. սա աւասիկ յորմէհետէ մտեալ եմ, ոչ դադարեաց ի համբուրելոյ զոտս իմ։ Իւղով զգլուխ իմ ոչ օծեր. սա իւղով անուշիւ էօծ։ Վասն որոյ ասեմ քեզ. թողեալ լիցին սմա մեղք իւր բազում, զի յոյժ սիրեաց. զի որում շատ թողուցու, շատ սիրէ՝ և որում սակաւ, սակաւ։ Եւ ասէ ցնա. թողեալ լիցին քեզ մեղք քո։ Եւ սկսան՝ որք բազմեալն էին ընդ նմա, ասել ընդ միտս իւրեանց. ո՞վ է սա՝ որ զմեղս թողու։ Եւ նա ասէ ցկինն. հաւատք քո կեցուցին զքեզ՝ երթ ի խաղաղութիւն։

Եւ Սարկաւագն քարոզեսցէ

Լուիցէ տէր ձայնի աղաչանաց մերոց. ամենակալ տէր Աստուած մեր՝ կեցո՛ և ողորմեա՛։

Եւ ասա երեք անգամ Տէր ողորմեա

*Եւ ապա կարդա զաղօթս զայս Սրբոյն Բարսղի ։*

Տէր Աստուած հայր ամենակալ արարիչ երկնի և երկրի որ յակնարկել բարերար կամաց քոց՝ գոյացուցեր զամենայն արարածս՝ զերևելիս, և զաներևոյթս. զերկնայինս, և զերկրայինս. և նախախնամութեամբ քով ստեղծեր զմարդն ի հողոյ. և ըստ պատկերի բարերարութեանդ պատուեալ մեծարեցեր զնա. շնորհելով նմա զանմահութիւն և զանսպական կենդանութիւն. և ինքնիշխան կամօք և փառօք զարդարեալ պատկեցեր. պարգևելով նմա զվայելումն ուրախութեան դրախտին փափկութեան գործել զնա և պահել. և հանապազ մշտնջենաւորիլ յանանց և յանճառ պարգևսն. և յառաջանալ օրըստօրէ ի գործս բարիս. և յաւելեր նմա զպատուիրանապահութիւն կենսաբեր հրամանի բարերար կամաց քոց. զի յաւելուածով մեծի պատուիրանին դլութեամբ՝ առաւել յաւելուածով մեծի փառաց և պատուոյ՝ զնա ճոխացուցանէիր. և ի ձեռն բարեյօժար կամացն հնազանդութեան, յա առաւել ի գերակատար կեանսն զնա վերափոխէիր՝ յիմանալի կայանս բնակութեան վերինն Երուսաղէմի ։ Իսկ նա ի ձեռն օձապատիր չարին խաբէութեան, զգործի կենացն և զպատճառս բարեացն՝ անձնիշխան յօժարութեամբն ի կողմն բանսարկուին դարձուցեալ, և ինքնայօժար կամօքն գործակցեալ խաբէութեան չարին, ի բաց չեղեցաւ ի քումմէ արարչադիր և ի կենսաբեր պատուիրանադրութենէդ. և ի ներքոյ անկեալ չարին հնազանդութեան՝ նախամեծար առնելով

գմբիթական բանս պատրօղ թշնամւոյն քան զքո Աստուածային օրէնդրութիւնն․ կնոջն լսելով խրատու, կորոյս զայրական վեհ իմաստութիւնն՝ ուսիցն հընազանդեալ գլխոյն առաջնորդական տէրութեամբն․ անհանճարաբար և անխորհրդապէս ի բաց մերկացեալ զբոցաճաճանչ և զլուսեղէն զարդարանան․ և հակառակաբար հայթայթանօք ջանայր ծածկել զամօթալիր մերկութիւնն պատառատուն տերևովն անյուսացեալ ի զօրութիւն ամենակալիդ՝ կարծէր թաքչիլ յամենատես գիտութենէ Աստուածութեան քոյ պատճառելով զպատճառս մեղացն, թէ կինս զոր ետուր ինձ, սա եղև պատճառ։ Վասնորոյ զանիծից և զցաւոց ժառանգեաց զկեանս, ի ներքոյ անկեալ մահու և ապականութեան․ ըստ անսուտ և Աստուածական քում հրամանիդ, ասելով թէ, յորում աւուր ուտիցես ի նմանէ մահու մեռանիցիս․ որով և թագաւորեալ տիրեաց ի վերայ մեր իշխանն մահու․ և զբնութիւնս մեր գրաւեալ ինքեան հնազանդութեամբ պահակն կորստեան․ և զամենեսեան ծառայս իւր արարեալ, վարեաց ի գործս խժասս ծառայութեան դժոխոց։ Իսկ դու՝ Հայր բարեգութ՝ յառաջ և յանբաւ մարդասիրութենէ քումմէ յաղթեալ, ոչ հանդուրժեցեր․ տեսանելով զանարատ ձեռաց քոց ստեղծուած՝ յայնպիսի վտանգաւոր աղէտս տարակուսանաց։ Այլ բարեգործեալ հայրախնամ սիրով քո՝ գթացար յորդիս մարդկան, և յայց ելեր կորուսելոյն․ առաքեցեր ի խնդիր զմիածին և զէակից քո՝ զծոցածին և զանբա-

ժանելի բանն Աստուած, որ եկն և՛ էառ զկերպարանըս զծառութեան աղքատացեալ բնութեանս մերոյ, Ներմարդացեալ ի սուրբ և յանարատ կուսէն Մարիամայ Աստուածածնէն. և յանձն իւր էառ զպանցանս սխալման մեղանացն Ադամայ. և Աստուածախնամ տեսչութեամբն իւրով տնօրինեալ զամենայն կիրս մարդկայինս յանձին կրում, բաց ի մեղաց, եղև պըտուղ մարդկութեանս։ Հովիւն երկնաւոր եկն խընդրել զոչխարն մոլորեալ ի վերայ լերին բարձու. և առեալ զնա եդ ի վերայ կենսաբեր ուսոյն իւրոյ, դարձուցանելով ի հայրենի բնակութիւնն, ուստի արտաքսեցաւն արդարութեամբ. և զանիծիցն և զցաւոցն ելոյծ զդատապարտութիւն իւրով անպատժապարտ մահուամբն. և զանկեալն ի ձեռս աւազակացն՝ վերստին ողջացոյց՝ պատելով զվէրս նորա, արկանելով ի վերայ նորա ձէթ և գինի, և աւանդելով ի պանդոկի ամէնընկալ կաթուղիկէ սուրբ եկեղեցւոյ քոյ. որ ժողովէ զամենայն ցրուեալս և զկեղեքեալս, և միաւորէ յորդէգրութիւն հօրդ երկնաւորի. և հաշտաբար և մեղսաքաւիչ իւրով պատարագաւն՝ որ ի վերայ սուրբ խաչին, բոլորապտուղ զինքն քեզ ընծայեաց ընդ մեր, և վասն մերոց պարտեաց զանձն իւր փոխանակելով։ Եւ դարձեալ վերստին ստացաւ ըզմեզ սուրբ արեամբն իւրով. և ազատեաց ի ծառայութենէ բանսարկուին՝ պատառելով զմուրհակ դատապարտութեան յանցանաց մերոց. որ կայր մեզ հակառակ, եբարձ զայն ի միջոյ. և բևեռեաց զնա

ընդ խաչափայտին. մերկեաց զիշխանութիւնս և ըզ-պետութիւնս մեքենաւոր զօրութեան նորա. յայտ յանդիման խայտառակեալ նշաւակեաց զնոսա յանձին իւրում՝ զօրութեամբ Աստուածութեան իւրոյ: Եւ իշխանական պետութեամբն իջեալ ի ստորին սանդարամետս դժոխոց՝ աղարտելով զզօրութիւն բռնութեան՝ կործեալ իշխանին աշխարհի, որ բարձրացեալ և լեռնացեալ ամբարտաւանութեամբ ունէր գրաւեալ ընդ ինքեամբ զբնութիւն մարդկութեանս. որով ժամանեալ եհաս թագաւորն ի բարձանց՝ հզօրն ի պատերազմի, և ել ի բարձունս հպարտացելոյն. և կապեաց զհսկայն, աւերելով զամուրս նորա. և յափշտակեաց զզանձս նորա. և դարձեալ եմոյծ զարքունական պատկերն ի դրախտն, ուստի ելան. զեօթնեկին շնորհսն տալով զոր կորոյսն եօթնեակ յանցանօք: Քանզի շինեաց իմաստութիւնն զհօրն տուն՝ զխորանն Դաւթի, զանկեալն և զկործանեալն՝ վերստին նորոգեաց և կանգնեաց. վասն լինելոյ նորա ծաղիկ յարմատոյն Յեսսեայ. և հանգեաւ ի վերայ նորա Հոգին Սուրբ՝ որ ի մեզ խորհրդածի. հոգի իմաստութեան և հանճարոյ. հոգի գիտութեան և Աստուածպաշտութեան. և լցեալ եղև հոգւով երկիւղիւ և սրբութեամբ: Վասն զի՝ ուր երկիւղ տեառն է, անդ պատուիրանաց պահպանութիւն. և ուր պատուիրանաց պահպանութիւն, անդ և ոչ մի յանցանք. քանզի զյանցանս մեր էառ և զցաւս մեր եբարձ. և

զքեզ միայն ծանոյց մեզ հաւաստեաւ. Աստուած կեն-դանեաց և մեռելոց. առնելով խաղաղութիւն ար-եամբ խաչին իւրոյ յերկինս և յերկրի. և հանեցոյց զկամս քաղցրութեան սիրոյ քոյ առ արարածս. քան-զի բարձաւ միջնորմն, և լուծաւ կրճիմն, որ կայր. խափան և արգել մերոյ փրկութեան. և տեղի տուեալ սրովբէիցն շրջապատեալ բոցեղէն սրոյն որ պահէր զճանապարհս ծառոյն կենաց. վասն զի ընդ մեզ ե-դաւ ճանապարհն և ճշմարտութիւնն և կեանքն Քրիս-տոս Յիսուս, որ առաջնորդեաց մեզ ընդ երկնաչու ճանապարհն՝ փրկաւէտ կենացն. և անցոյց զերիվե-րոյ իշխանութեանց, և պետութեանց. և խրախոյս տուեալ հաւատացելոց՝ ասէ, քաջալերեցարո՛ւք՝ ես յաղթեցի աշխարհի. և ետու ձեզ իշխանութիւն կո-խել զօձս և զկարիճս և զամենայն զօրութիւնս թշ-նամւոյն։ Առորս և ասել մեզ համարձակապէս թէ, ո՞ւր է մա՛հ՝ յաղթութիւն քո. ո՞ւր է դժո՛խք՝ խայթոցն քո. քանզի եղաք փրկեալք և ազատեալք արեամբ Միածնի որդւոյ քոյ Յիսուսի Քրիստոսի տեառն մե-րոյ. ընդ որում քեզ Հօր և Հոգւոյդ Սրբոյ վայել է. փառք իշխանութիւն և պատիւ. այժմ և միշտ և»։

Խաղաղութիւն ամենեցուն

Աստուծոյ երկրպագեսցուք

Եւ ա՛րդ տէր Աստուած մեր բարերար և բազմա-գութ որ այսպիսի անճառ փառաց և անպատում բա-րեաց հաղորդ, զազգս մարդկան արարեր. որով մե-

ծարեցեր զմեզ ի ձեռն Միածնի քո՛յ տնօրէնութեան՝ որ եկեալ կատարեաց զամենայն գրեալսն օրինաց և մարգարէից. և քաղցրուսոյց վարդապետութեամբն իւրով ժողովեաց զցրուեալ ազգս մարդկան. և միաւորեալ միացոյց զամենեսեան միաբան սիրով՝ ի մի հաւատս և ի մի յոյս կոչման քում արարչական խնամոց գթութեանցդ. և հորդեաց ճանապարհ փրկութեան ամենայն տիեզերաց, պարգևելով զանհատաչեայ կենդանութեան Հոգւոյն Սրբոյ, Նորածնելոց ժողովրդոց՝ մանկանց աւազանի, կազմելով զդեղ և զդեղանիս ապաշխարութեան՝ իւրով առատ մարդասիրութեամբն ասելով թէ, ո՛չ եկի կոչել զարդարս, այլ զմեղաւորս յապաշխարութիւն. և դարձեալ թէ; եկա՛յք առ իս ամենայն աշխատեալք՝ և որք ունիք բեռինս ծանունս մեղաց, և ես հանգուցից զձեզ. և յորդորական Աստուածախօս ձայնիւն՝ յորդորեալ քաջալերեաց զամենեսեան ի հնազանդութիւն Աստուածահաճոյ լծոյն ծառայութեան՝ ասելով, առէ՛ք զլուծ իմ ի ձեզ, և ուսարո՛ւք յինէն, զի հեզ եմ և խոնարհ սրտիւ. և գտջիք հանգիստ անձանց ձերոց. զի լուծ իմ քաղցր է, և բեռն իմ թեթև։ Եւ արդ՝ մեք ծառայք քո և ժողովուրդք և խաշն արօտի քոյ, գինք արեան Միածնի Որդւոյ քոյ, ժողովեալքս ի գաւիթ սուրբ եկեղեցւոյ. խոնարհեալ աղաչեմք զբազմագութ և զառատ մարդասիրութիւնդ քո. և հայցեմք ի քաղցրութենէդ քումմէ՝ զքաւութիւն և զթողութիւն մեղաց

մերոց: Խոնարհեցո՛ տէր զունկն քո և լո՛ւր աղաչա-
նաց ծառայից քոց. և գթութեամբ և ողորմութեամբ
քո թո՛ղ մեզ զյանցանս մեր՝ զկամայ և զակամայ. և
արա՛ զմեզ որդիս լուսոյ, և որդիս տունջեան զորս
գրեցեր ի գիր որդէգրութեան ժառանգութեան ար-
բոցն ի լոյս. և չարին պատրանօք՝ որսացեալ եղաք
կամօք մերովք՝ ի մեղսասէր և ի կամակոր նորա կամ-
սըն. որոշելով ի հայրախնամ սիրոյ արարչական գը-
թոյ քոյ. տարագիր առնելով զանձինս մեր յորդէգ-
րութենէ ժառանգութեան հօրդ երկնաւորի. և ո՛չ
պահեցաք զգուշութեամբ զստացուածս և զգանձս հայ-
րենատուր մեծութեան քոյ, զոր սուրբ աւազանաւն
ստացաք. զմաքրութիւն, և զանմեղութիւն, և զար-
դարութիւն հոգևոր մեծաշահ փարթամութեանն. այլ՝
անառակ վարուք մերովք ծախեցաք զհոգևոր մեծու-
թիւնն, մինչև ժամանեալ եհաս մեզ յետին աղքա-
տութիւն և սովամահ չքաւորութիւն. նուաղեցան ան-
ձինք մեր, և յոյս ակնկալութեան մերոյ չիք այլ ոք
բաց ի քէն տէր. զի դու ես Աստուած մեր, և զա-
նուն քո անուանեմք զօրհանապազ: Հա՛յր երկնա-
ւոր՝ գթա՛ ի դարձումն ծառայից քոց, և ընկա՛լ ըզ-
զըղջումն խոստովանութեան մերոյ, որպէս զանառակ
որդւոյն ընկալար զդարձումն, և վերստին զարդարե-
ցեր զնա արփիազարդ և լուսեղէն զգեստիւն՝ առա-
ջին պատմուճանին ծածկութիւ՝ զոր ինքեան կամա-
կոր և անառակ վարուքն մերկացաւ: Վասնորոյ և

մեզ՝ նորին յօժարութեամբ՝ զղջացեալ սրտիւ և բեկեալ անձամբք դառնամք առ քո գթութիւնդ աղելով, հայր՝ մեղաք յերկինս և առաջի քո. ոչ եմք արժանի կոչել որդի սուրբ անուանդ քոյ. արա զմեզ իբրև զմի ի վարձկանաց քոց. հայեաց տէր ողորմութեամբ և քաղցրութեամբ կամօք քովք, և հայրական գթով և սիրով բարերարութեան քո՝ ել ընդ առաջ մեր, և զգեցո մեզ զառաջին պատմուճանին լուսափայլ վերարկուն, զոր զգեստաւորեալ զարդարեցաք աւազանին պայծառութեամբն: Մերկեա ի մէնջ տէր՝ զհնացեալ պատմուճան չարին ծածկութից՝ զոր ծուլութեամբ և անառակ վարուք մերովք զգեցաք, և օտարացաք ի հայրական խնամոց քոց: Տուր մեզ տէր Աստուած մեր զքո զուրախական և զմարդասիրական համբոյրդ, տալով զկնիք սրբութեան ի յոգիս մեր. և զմատանին արդարութեան տպաւորեա յաջոյ ձեռին մերում՝ միշտ ունելով զնշան և զդրոշմն ուխտին սրբութեան՝ զոր ուխտեցաք միջնորդութեամբ արեան որդւոյ քոյ սիրելւոյ. արբո մեզ զբաժակն ուրախարար՝ զոր խառնեցեր ի խառնարան սրբութեան Աստուածընկալ սեղանոյ քառաթեւ խաչին. յորում զեներ զկենումն ճշմարիտ պատարագին եզինն պարարակի. և հրաւիրեցեր ի պատրաստեալ ճաշ հարսանեաց Միածնի որդւոյ քոյ սիրելւոյ՝ զպակասամիտսըն ի հանճարոյ Աստուածային երկիւղին և պատուիրանին զգուշութեան. և անզգամացն պատուիրեցեր՝

թողուլ զանզգամութեան ճանապարհն ։ Եւ արդ՝ տո՛ւր մեզ զհացն անմահութեան մարմնոյ Միածնի քոյ , որով կեցցուք ․ և արբո՛ զմեզ զգինեաւ անուշութեան սուրբ բաժակին , զի արբեալ միշտ ուրախացուք յանապատ ուրախութիւնսդ ․ և վայելեսցուք զանկապուտ ճոխութիւնսդ՝ յերջանիկ օթեանսդ Հօրդ երկնաւորի ․ զոր պատրաստեցեր ի սկզբանէ աշխարհի սրբոց քոց ․ և ընդ նոսին գոհանալով փառաւորեսցուք զքեզ ընդ Որդւոյ և ընդ Սրբոյ Հոգւոյդ , այժմ և միշտ և յաւի’’ ։

Սաղմոս ՃԺԷ ․ Թիւ ասա ։

ԿՑ ․ Բացէ՛ք ինձ զդրունս արդարութեան , զի մտից ընդ այն՝ և խոստովան եղէց տեառն ։

Փխ ․ Խոստովան եղերուք տեառն , զի բարի է , զի յաւիտեան է ողորմութիւն նորա ։

(Տես ի Թիւն ․ 177 ։)

Եւ մնեալ յեկեղեցւոյն սկսանիցեն Շարական՝ Գկ ։

Զողորմութեա՛ն քո զդուռըն (Տես ի Թիւն ․ 184 ։)

Եւ ի յաւարտին , Սաղմոս՝ ՂԹ ։

Աղաղակեցէ՛ք առ տէր ամենայն երկիր , ծառայեցէ՛ք տեառն ուրախութեամբ ։

Մտէ՛ք առաջի նորա ցնծութեամբ , ծանիրո՛ւք զի նա է տէր Աստուած մեր ։

Նա՛ արար զմեզ և ո՛չ մեք էաք , մեք ժողովուրդք և խաշն արօտի նորա ։

Մտէ՛ք ընդ դրունս նորա խոստովանութեամբ, և օրհնութեամբ ի յարկս նորա։

Խոստովան եղերո՛ւք տեառն, և օրհնեցէ՛ք զանուն նորա։

Քաղցր է տէր, յաւիտեան է ողորմութիւն նորա։ յազգէ մինչև յազգ է ճշմարտութիւն նորա։

## ՔԱՐՈԶ

Սուրբ եկեղեցեաւս աղաչեսցո՛ւք զտէր՝ զի սովաւ փրկեսցէ զմեզ ի մեղաց. և կեցուսցէ շնորհիւ ողորմութեան իւրոյ։ Ամենակալ՛ տէր Աստուած մեր՝ կեցո և ողորմեա։

## ԱՂՕԹՔ

Ի մէջ տաճարիս, և առաջի Աստուածընկալ և պայծառացեալ սուրբ նշանացս, և սուրբ սեղանոյս՝ խոնարհեալ երկիւղիւ երկիրպագանեմք. զսուրբ և ըզհրաշալի և զյաղթօղ զզալուստդ քո փառաւորեմք. և քեզ մատուցանեմք զօրհնութիւն և զփառս ընդ Հօր և ընդ Սրբոյ Հոգւոյդ. այժմ և միշտ և"։

*Եւ ապա ընթեռնուցու Եպիսկոպոսն կամ աւագ երէցն զաղօթս օրհնութեան ի վերայ ապաշխարողաց։*

Աղօթք և Օրհնութիւն Սրբոյն Յօհաննու Ոսկեբերանին. զոր ասացեալ է վասն Քահանայից և ժողովրդեան։

Օրհնեալ է ամենասուրբ Երրորդութիւնն ի բարձունս՝ Հայր և Որդի և Հոգին Սուրբ. մեծ զօհութիւն

երից անձնաւորութեանց և միոյ Աստուածութեանն անեղանելւոյ՝ անփոփոխելւոյ՝ անսահմանելւոյ, ամենակալողի՝ ամենատեսողի՝ ամենապարգևողի՝ ամենակեցուցանողի, անմահի՝ անքաւի՝ անճառի, պատիւ և երկրպագութիւն և մշտնջենաւոր փառաբանութիւն յերկնաւորաց, և յերկրաւորաց. ի հրեղինաց, և ի հողեղինաց. ի սերովբէից և ի քերովբէից. ի հրեշտակաց և ի հրեշտակապետաց. էակ երրորդութեանն և մի Աստուածութեանն. որ էն յէութեան յիսկութեան համագոյական Աստուածութեանն՝ հարթ և հաւասար ի խորութիւն՝ ի բարձրութիւն՝ ի լայնութիւն և յերկայնութիւն: Որ իւրով կանխագէտ զօրութեամբն՝ արար զերկինս և զերկիր՝ և զիւրաւոր զօրս հրեշտակաց. ձգեաց զերկինս առանց հիման, խորանարգ գմբեթաձև հաստատութեամբն. և արկ ի վերայ նորա զբազմութիւն ջուրցն. գնան հրեղէնքն ընդ ջուրսըն, և ոչ շիջանին. զի նմա ամենայն ինչ կարելի է. սահմանեաց զծով աւազով. բուսոյց յերկրէ զծառըս և զծաղիկս՝ հանդերձ ամենայն սերմանեօք. զարդարեաց զերկինս աստեղօք. ճառագայթեաց ի նմա զարեգակն և զլուսին. պսակեաց չորիւք եղանակօք զբոլոր շրջանակս տարւոյն. եդ զնոսա ի հակառակ անհաշտելի և ի սէր անքակտելի. արար և ազգի ազգի զեռունս ի ծովու. բազում գազանս և անասունս և սողունս և թռչունս թեւաւորս ի վերայ երկրի: Ապա՝ յետ ամենեցուն արար զմարդն ձեռօք

իւրովք՝ ըստ պատկերի իւրում. և փչեաց ի նա շունչ կենդանի, և եղև մարդն ի հոգի կենդանի. և զամենայն ինչ հնազանդ արար՝ ի ներքոյ ոտից նորա, և կացոյց միջասահման՝ կենաց և մահու. և եդ նմա պատուէր՝ չճաշակել ի պտղոյ ծառոյն գիտութեան. և ի պահել պատուիրանին՝ խոստացաւ նմա զվերնայարկ վերինն Երուսաղէմի: Իսկ բանսարկուն գործի իւրոյ չարութեան գտեալ զօձն, և նովաւ խօսեցաւ ընդ կնոջն՝ ի պատճառ աստուածանալոյ և պատրեաց զնա և եդ ուտել ի ծառոյն գիտութեան. և եթող ամօթալից և մերկ ի լուսեղէն փառացն: Իսկ բարերարին քաղցրաձայնեալ ասէ, ո՞ւր ես Ադամ. և գալստեամբս նորա ի դրախտն, նկարեցաւ գալուստըն Միածին բանին իւրոյ յաշխարհս. և ձայն ոտից նորա՝ դրոշմեաց զՅովհաննէս Մկրտիչն. իսկ Ադամայ անզգջութեամբ դիմեալ ի մահ, զանպարտականըն Աստուած՝ պատճառ իւրոյ կորստեանն համարեալ՝ ասէր թէ, կինս զոր ետուր ցիս, սա յանցոյց զիս. իսկ դատաւորն արդարութեան անէծ զնոսա՝ և զվնասակարս նոցա. և եհան զնոսա արտաքոյ դրախտին. սակայն ո՛չ ժուժկալեալ ողորմութեամբն՝ ընկալաւ զպատարագն Աբէլի. անմահացոյց ի զաւակէ նոցա զԵնովք. պահեաց զՆոյ ի տապանին՝ բազմահոյլ կենդանեօք. և զամբարշտեալն Կայէն իւրովք ծննդովքն՝ սահանաբաց անձրևօք ջնջեաց: Օրհնելով զտասներորդն զԱբրահամ՝ խոստանալով նմա երդմամբ, եթէ բազմացուցից զզաւակն քո՝ որպէս զաս-

մեղս երկնից. բազում Նշանօք և արուեստիւք խօսեցաւ առ հարսն մեր՝ որք արարին ազգի ազգի նըշանս. և առաքեաց զհրեշտակս վերակացուս: Իսկ իբրև եկն լրումն ժամանակի, խօսեցաւ ընդ մեզ որդւովն՝ որ եկն և մարմնացաւ ի սրբոյ կուսէն՝ և եմուտ ընդ օրինօք, զի զորս ընդ օրինօքն իցեն՝ ազատեսցէ. կատարեաց զօրէնս, ելից զտառս մարգարէիցն: Արար Նշանս և արուեստս. լուսաւորեաց զկոյրս. առողջացոյց զանդամալոյծս. հալածեաց ըզդևս: Ապա՝ ի կատարումն նշանացն՝ շնորհեաց ըզյարութիւն Ղազարու՝ չորեքօրեայ կոչմամբ ի թաղմանէ. Նստաւ ի վերայ յաւանակի իշոյ, որ է խորհուրդ կոչման հրէից՝ և հեթանոսաց. վասն որոյ և մանկտին երգէին՝ ովսաննայ օրհնութիւն որդւոյ Դաւթի: Իսկ ի սերկեան աւուրս՝ գայ կամաւորութեամբ ի չարչարանս. յանձն առնու մատնիլ յանօրէն աշակերտէն: Յերեկոյ հասեալ ժամու աւուրն, երկոտասանիցն զխոնարհութիւն ուսուցանելով, զՅուդային յառաջ լուանայր զոտս. որ աշխատեցաւ մինչև ցզգաւիթ քահանայապետին. որ և ի միտս իւր ասէր՝ թէ բիւր անգամ մեծարես զիս, ո՛չ եմ մոռանալոց զերեսուն արծաթիսն: Արդ՝ ի յայսմ ահաւոր և սքանչելագործ տօնիս՝ եղև ուրախութիւն հրեշտակաց և մարդկան: Այսօր՝ բարձաւ ցանկ անիծիցն Ադամայ: Այսօր՝ ազատեցաք ի ծառայութենէ սատանայի: Այսօր՝ արարիչն արարածոց ի յերկրի երևեցաւ: Այսօր՝ Աստուածն սերօբէից՝ ծառայի զգենու զկեր-

պարանս։ Այսօր՝ անտեսն քերոբէից՝ խոնարհի և լուանայ զոտս աշակերտացն։ Այսօր՝ արկօղն զլոյս որպէս զօթոց՝ զգենու զղենջակ։ Այսօր՝ աթոռակիցըն Հօր՝ ընդ հողեղէնս բազմի։ Այսօր՝ փառակիցն Սուրբ Հոգւոյն՝ յանձն առնու մատնիլ ի դատաստան մահու։ Այսօր՝ կենագործօղն ամենեցուն՝ ընդ մահուամբ սահմանի։ Այսօր՝ վէմն առանց ձեռին հատեալ լեռնացեալ ելից զտիեզերս։ Այսօր՝ բաշխէ զմարմին և զարիւնն՝ և յայտնէ զանօրէն աշակերտին զխորհուրդն։ Այսօր՝ կապեալ լինի արձակիչն կապելոց՝ զոր երկինք ոչ բաւէին տանել։ Այսօր՝ օրհնէ զառաքեալսն ի դպրութիւն քահանայութեան։ Այսօր՝ զտանի դրամն կորուսեալ՝ այսինքն թագաւորական պատկերն։ Այսօր՝ եղև ուրախութիւն հրեշտակաց՝ վասն գիւտի մոլորեալ ոչխարին։ Այսօր՝ ճշմարտապէս հաղորդեցաք՝ մարմնոյ և արեան տեառըն։ Այսօր՝ օրհնեցան քահանայապետք՝ հանդերձ ամենայն քահանայիւք։ Այսօր՝ լուսազարդեցան թագաւորք՝ հանդերձ ամենայն զօրութեամբն իւրեանց և իշխանութեամբ՝ ընդ Դաւթի և ընդ դասագլուխս նորա։ Այսօր՝ օրհնեցան ծերք և տղայք՝ երիտասարդք և կուսանք, ի ձեռն կապողին և արձակողին։ Այսօր՝ դրախտն բանի՛ մարդկութեանս՝ և ամենայն արարածք ցնծան յանմահական կեանս։ Այսօր՝ ի հին տրտմութեանց փոխեցաք՝ և ամենեքեան նորոգեցաք ի Քրիստոս։ Այսօր՝ ետ իշխանութիւն կոխել

զօձս և զկարիճս՝ և զամենայն զօրութիւնս թշնամւոյն։
Այսօր՝ ի ձեռն աւազանին լուսազարդեալք՝ մաքրե-
ցան հաւատացեալք յաղտոյ մեղաց։ Արդ՝ եկեսցէ
մխիթարութիւնն Երուսաղէմի ի վերայ ձեր՝ որ ասէ,
մխիթարեցէ՛ք մխիթարեցէ՛ք զժողովուրդ իմ ասէ Աստ-
ուած. քահանայքդ խօսեցարո՛ւք ի սիրտ Երուսաղէ-
մի. մխիթարեցէ՛ք զազգն, զի լի եղև տառապանօք.
թողեալ լիցին նմա մեղք իւր։ Դարձեալ՝ եթէ, ըն-
ճանապարհս սրտի նորա տեսի և բժշկեցի. և ետու
նմա մխիթարութիւն. և փոխանակ մորմոյն՝ օծումն
ուրախութեան։ Արդ՝ բարեգութն Աստուած ուրա-
խացուսցէ զձեզ զամենեսեան. և երկնաւոր պարգե-
ւացն արժանի արասցէ։ Օրհնեսցէ տէր Աստուած
զհայրապետս՝ ընդ սրբոյն Գրիգորի՝ և ընդ այլ սըր-
բոց հայրապետացն մասնակիցս արասցէ։ Օրհնեսցէ
տէր Աստուած զքահանայսդ՝ ընդ քահանային Մել-
քիսեդեկի. և զարդարեսցէ՝ ընդ տեսլեանն Մովսէսի՝
ի զարդ անկողոպտելի, ըստ պատմուճանին Ահարո-
նի. և հոգիազարդեսցէ ըստ առաքելոցն խորանակ-
ցութեան. և արասցէ մշակս առանց ամօթոյ. զի յե-
րեւիլ հօտապետին՝ ընդունիցիք զանթառամ փառաց
պսակն։ Օրհնեսցէ տէր Աստուած զկրօնաւորսդ՝
ընդ սրբոյն Եղիայի և ընդ սրբոյն Անտօնի, և ժա-
ռանգակիցս և մասնակիցս արասցէ նոցա։ Օրհնես-
ցէ տէր Աստուած զծերսդ՝ որպէս զծերսն Իսրայէ-
լեան բանակին, և որպէս զծերունին Սիմէօն՝ որ

զԱստուածորդին ի գիրկս իւր ընկալաւ՝ և հայցէր արձակել ի խաղաղութիւն։ Օրհնեսցէ տէր Աստուած զերիտասարդս՝ որպէս զերանելին Յովսէփ, որ հաճոյ եղև Աստուծոյ՝ և օրհնեցաւ ի նմանէ։ Օրհնեսցէ տէր Աստուած զկանայս՝ որպէս զկանայս իւղաբերս, որք եկին ի գերեզման փրկչին՝ և լուան աւետեաց սուրբ յարութեան տեառն։ Օրհնեսցէ տէր Աստուած ըզտղայս մեր՝ որպէս զտղայս Եբրայեցւոց, որք առին ոստս արմաւենեաց՝ և ելին ընդ առաջ նորա, աղաղակէին և ասէին՝ ովսաննայ օրհնեալ որ գաս յանուն տեառն։ Օրհնեսցէ տէր Աստուած զամենեսեան՝ ըզժողովուրդս սուրբ եկեղեցւոյս մերոյ՝ առ հասարակ զարս, և զկանայս. զծերս, և զտղայս. զերիտասարդս, և զկուսանս. և փրկեսցէ զձեզ յամենայն չարեաց. և ամրացուսցէ ընդ հովանեաւ աջոյն իւրոյ՝ և երկնից արքայութեանն արժանիս արասցէ. և զանմատոյցն լոյս երես իւր երևեցուսցէ ձեզ։ Օրհնեսցէ տէր Աստուած զտունս զայս և զբնակութիւնս՝ և զհիմունս Եկեղեցւոյս, ըստ այնմ որ ասէ, այսօր եղև փրկութիւն տանս այսորիկ՝ ըստ աւետեացն Աբրահամու՝ հանդերձ ազգաւ և ժառանգակցօք իւրովք։ Օրհնեսցէ տէր Աստուած զպաշտաւոր տանս այսորիկ՝ զլուսարարս, զդռնաբացս, և անթառամ պսակացն արժանիս արասցէ։ Օրհնեսցէ տէր Աստուած զվերակացու տանս՝ զմշակս. զեզինս, զխաշինս. և զհօտըս սորա։ Օրհնեսցէ տէր Աստուած զանդաստանս մեր՝ և բուսուսցէ զամենայն բոյսս չահեկանութեան.

ի բաց արասցէ զամենայն վնաս զբիծ , զհրայրեաց և զդալուկն , զժանտ , զկարկուտ , զմարախ , զջորեակ , զսառն եղեմնածին . և զամենայն ցաւս և զխաշնաման՝ ի մարդոյ և յանասնոյ . և հալածեսցէ զչէգչօնն ամենայն զօրօքն իւրովք յանդունդս . և զհրեշտակ խաղաղութեան առաքեսցէ ։ Օրհնեսցէ տէր Աստուած զժամակոչ քաղաքիս մերոյ՝ զի որպէս ձայն հրրեշտակապետի յաղթօղ է առ ի զարթուցանել զնըննջեցեալս ի մահահանգիստ քնոյ , նոյնպէս և ձայն սորա՝ յաղթօղ է առ ի հալածել զչէգչօնն ամենայն զօրօք իւրովք ։ Օրհնեսցէ տէր Աստուած զբնակութիւն քաղաքիս մերոյ . և հալածեսցէ զամենայն չար զօրութիւն՝ բռնացեալ թշնամւոյն ։ Օրհնեսցէ տէր Աստուած զմիաբան ժողովուրդս , և թեթևացուսցէ զբեռինս մեղաց ձերոց ։ Օրհնեսցէ տէր Աստուած զխոստովանօղսդ և զապաշխարօղսդ , և թողցէ զյանցանս ձեր՝ որպէս զպոռնկին և զմաքսաւորին . և արժանի արասցէ զձեզ լուացման սուրբ առաքելոցն ի վերնատանն ։ Եւ փոխանակ սրբապահութեան ձերոյ , զերկնայինն պարգևեսցէ ձեզ կերակուր ։ Եւ փոխանակ ժուժկալութեան ծարաւակրութեան ձերոյ , յանմահական աղբերէն տացէ ձեզ ըմպել զջուր ։ Եւ փոխանակ գիշերային տքնութեան ձերոյ , ընդ հրեշտակս դասեսցէ զձեզ ։ Եւ փոխանակ լռակացութեան ձերոյ , անթառամ պսակօք զարդարեսցէ ըզձեզ ։ Եւ փոխանակ ողորմութեան ձերոյ՝ որ առ աղքատս , յաջակողմեան դասն բազմեցուսցէ ։ Արդ՝

ով Աստուածասէր ժողովուրդք՝ և հաւատացեալք Քրիստոսի, պահեցէք զպատուիրանս տեառն՝ և զհրամանս նորա. և մի՛ դադարիք և ձանձրանայք՝ առնել ողորմութիւն. մինչդեռ ժամանակս ի ձեռս է, գործեցէք զբարիս. զի զփոխարէնն՝ ի փրկչէն մերմէ Յիսուսէ Քրիստոսէ՝ զյաւիտենականն կեանսն առնուցուք: Արդ՝ հատուցօղն բարեաց՝ ամենեցուն, տացէ եկեղեցեացս շինութիւն. քահանայիցս ուղղութիւն. թագաւորաց և իշխանաց վայելչութիւն. ծերոց մխիթարութիւն. կրօնաւորաց ժուժկալութիւն. երիտասարդաց ողջախոհութիւն. մեղաց լուծումն. հիւանդաց բժշկութիւն. դիւաց խափանումն. ախտաժետաց առողջութիւն. և փրկութիւն հոգւոց և մարմնոց: Եւ արդ՝ լսելով զայս, ի բաց ընկեցէք յանձանց ձերոց զչարութիւն և զամենայն խարդախութիւն. թողէք իւրաքանչիւր եղբօր իւրում զյանցանս, և զամենայն խէթ՝ զոր ունիք ընդ միմեանս, և զամենայն չարութիւն. գործք բարիք բոլորովիմբ ի կատարումն. սիրեցէ՛ք զտէր յամենայն սրտէ, և զկամս նորա կատարեցէք. ընդ ամենայն մարդոյ զխաղաղութիւն ունիցի՛ք. հեզ լիջիք՝ և խոնարհ, ունկն դընելով ձայնին որ ասէ՝ ես յո՞ բնակեցայց, եթէ ո՛չ ի հեզս, և ի խոնարհս, և որք դողան ի բանից իմոց. խնդրեցէք զխաղաղութիւն. և երթիջի՛ք զհետ արդարութեան. յուսոյ ակնկալջի՛ք՝ յաւիտենանս յաւիտենից: Եւ տէր Աստուած արարիչն ամենայնի՝

հաստատեսցէ զձեզ. և տացէ առատաբար բարիս՝ աստ, և ի հանդերձեալսն. և արժանի արասցէ ըզձեզ դասին յաջակողմեանն. և ննջեցելոց՝ ծանօթից և անծանօթից, զերկնից արքայութիւնն պարգևեսցէ. որ է օրհնեալ և փառաւորեալ այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից. ամէն։

Ձայնի՝ Քարոզ՝ Խնդրեսցուք։ Եւ ասասցէ երեսուն
Տէր ողորմեա։ Աղօթք՝ Քում ամենազօր։
(Տես ի Թիւ. 75:)

Եւ դնիցեն զսուրբ խաչն և զԱւետարանն առաջի բեմին և համբուրեսցեն, և տացեն զչորեքդրամեանն՝ զոր կարգեաց Մովսէս Ղեւտացւոյն։ Եւ օրհնեսցէ քահանայն զապաշխարողն, և արձակեսցէ։



Իսկ ի վերջերորդ ժամուն ժողովեսցին յեկեղեցին, ծածկեսցեն զսեղանն, և ասասցեն զՄնացեալ Աղօթամատըն։

Եւ ապա սկսանիցին Խոնարհեցո և Աւրհնեցո։
(Տես ի Թիւն. 101։)

ՄԱՂԹԱՆՔ

Օրհնեալ Տէր՝ որ բնակեալդ ես՝ (Տես ի Թիւն. 176։)

Քարոզ և մաղթանք Հասարակելի՝ (Տես ի Թիւն. 107։)

Մեղեդի։

Լուացից սրբութեամբ զձեռս իմ. և շուրջ եղէց զսեղանով քո տէր։

Տէր սիրեցի զվայելչութիւն տան քո, և զտեղի յարկի փառաց քոց։

Ընթերցուած ի Ծննդոց։
Գլ՝ 22. Համ 1։

Եւ եղեւ յետ բանիցս այսոցիկ. փորձէր Աստուած զԱբրահամ՝ և ասէ ցնա. Ա՛բրահամ. Աբրահամ. և նա ասէ ահաւասիկ եմ։ Եւ ասէ ցնա. առ դու զորդին քո զսիրելի. զոր սիրեցեր զԻսահակ. և գնա դու յերկիր բարձր և հանցես զդա անդ յողջակէզ ի վերայ միոյ լերանց՝ յորոց ասացից քեզ։ Եւ յարեաւ Աբրահամ ընդ առաւօտն, համետեաց զէշ իւր. և էառ ընդ իւր երկուս ծառայս. և զԻսահակ զորդի

իւր. և պատառեաց փայտ յողջակէզ՝ յարեաւ և գնաց. և եկն ի տեղին. զոր ասաց նմա Աստուած։ Եւ յաւուրն երրորդի համբարձ Աբրահամ զաչս իւր՝ և ետես զտեղին ի հեռաստանէ։ Եւ ասէ Աբրահամ ցպատանիս իւր. Նստարո՛ք դուք այդր հանդերձ իշովդ. և ես և պատանեակս երթիցուք մինչև ցանդր, և երկիրպագցուք. և դարձցուք առ ձեզ։ Եւ էառ Աբրահամ զփայտ ողջակիզին. և եդ ի վերայ Իսահակայ որդւոյ իւրոյ. և էառ ի ձեռն զհուրն և ըզսուր. և գնացին երկոքեան ի միասին։ Եւ ասէ Իսահակ ցԱբրահամ ցհայր իւր. հա՛յր. և նա ասէ. զի՞ է որդեակ. և նա ասէ՝ ահա հուր՝ և ահա փայտ. ո՞ւր է ոչխար յողջակէզ։ Եւ նա ասէ. Աստուած տեսցէ իւր ոչխար յողջակէզ որդեակ. գնացին երկոքեան ի միասին։ Եւ եկին ի տեղին. զոր ասաց նմա Աստուած. անդ շինեաց սեղան Աբրահամ. և եդ ի վերայ զփայտն. և կապեաց զԻսահակ զորդի իւր. և եդ զնա ի սեղանն ի վերայ փայտին։ Եւ ձգեաց Աբրահամ զձեռն առնուլ զսուրն և զենուլ զորդի իւր։ Եւ կոչեաց զնա հրեշտակ տեառն յերկնից և ասէ. Ա՛բրահամ. Աբրահամ. և նա ասէ ցնա. աւասիկ եմ։ Եւ ասէ. մի՛ մխեր զձեռն քո ի պատանեակդ. և մի՛ ինչ առներ դմա. զի այժմ գիտացի թէ երկիւղած ես դու յԱստուծոյ. և ո՛չ խնայեցեր յորդւոյդ քո սիրելւոյ վասն իմ։ Համբարձ Աբրահամ զաչս իւր և ետես. և ահա խոյ մի կախեալ կայր ըզ-

ծառոյն սաբեկայ զեղջերաց. և գնաց Աբրահամ և էառ զխոյն. և եհան զնա յողջակէզ փոխանակ Իսահակայ որդւոյ իւրոյ։ Եւ կոչեաց Աբրահամ զանուն տեղւոյն այնորիկ Տէր ետես. զի ասիցեն ցայսօր. ի լերինն յայնմիկ Տէր երեւեցաւ։ Եւ կոչեաց հրեշտակ Տեառն զԱբրահամ երկիցս անգամ յերկնից՝ և ասէ։ Յանձն իմ երդուայ՝ ասէ Տէր. փոխանակ զի արարեր դու զբանդ զայդ. և ոչ խնայեցեր յորդւոյ քո սիրելւոյ վասն իմ. այո օրհնելով օրհնեցից զքեզ. և բազմացուցանելով բազմացուցից զզաւակ քո իբրև զաստեղս երկնից բազմութեամբ. և իբրև զաւազ առ ափն ծովու. և ժառանգեսցէ զաւակ քո զքաղաքս հակառակորդաց իւրոց։ Եւ օրհնեսցին ի զաւակի քում ամենայն ազգք երկրի. փոխանակ զի լուար ձայնի իմում։

*Ընթերցուած Եսայեայ Մարգարէի.*
Գլ՝ 61. Համ՝ 1։

Հոգի Տեառն ի վերայ իմ. վասն որոյ և էօծ իսկ զիս. աւետարանել աղքատաց առաքեաց զիս. բժշկել զբեկեալս սրտիւք. քարոզել գերեաց զթողութիւն՝ և կուրաց տեսանել։ Կոչել ամ Տեառն ընդունելի. և օր հատուցման Աստուծոյ մերոյ. մխիթարել զամենայն սգաւորս։ Տալ սգաւորաց Սիօնի փառս. փոխանակ մոխրոյն օծումն ուրախութեան. և սգաւորացն հանդերձ փառաց՝ փոխանակ ոգւոյն վհատութեան. և կոչեսցին նոքա ազգք արդարու-

թեան՝ տունկ տեառն ի փառս։ Եւ շինեսցեն զաւերակսն յաւիտենից. և զյառաջագոյն աւերեալսն կանգնեսցեն. և նորոգեսցեն զքաղաքս աւերեալս յազգաց մինչև յազգս։ Եւ եկեսցեն օտարածինք հովիւք խաշանց քոց. և այլազգիք մաճակալք և այգեգործք քո։ Բայց դուք քահանայք տեառն կոչիջիք. և պաշտօնեայք Աստուծոյ մերոյ անուանեսջիք. զզօրութիւնս ազգաց կերիջիք. և մեծութեամբ նոցա բաքանչելի լինիջիք։ Փոխանակ ամօթոյն ձերոյ կրկին ուրախութիւն. և փոխանակ անարգանաց ձերոց ցնծութիւն. և ապա զերկիրն յերկրորդում ժառանգեսցեն. և ուրախութիւն յաւիտենից ի վերայ գլխոց նոցա։

*Ընթերցուած ի գործոց Առաքելոց։*
Գլ՝ 1. Համ՝ 15.

Եւ յաւուրսն յայնոսիկ յարուցեալ Պետրոս ի մէջ եղբարցն ասէ՝ և էր անդ բազմութիւն անուանց հարիւր և քսանից։ Արք եղբարք՝ պարտ է կատարիլ գրոյն, զոր յառաջագոյն ասաց Հոգին Սուրբ ի բերանոյ Դաւթի՝ վասն Յուդայի. որ եղև առաջնորդ ունելեացն Յիսուսի։ Զի ի թիւս մեր էր՝ ընդ մեզ. և հասեալ էր նմա վիճակ պաշտամանս այսորիկ։ Սա ստացաւ գեօղ ի վարձուց անիրաւութեան. և ուռուցեալ հերձաւ ընդ մէջ՝ և հեղաւ ամենայն փոր նորա։ Եւ յայտնի եղև ամենեցուն՝ որք բնակեալ են յԵրուսաղէմ. մինչև կոչել զեղջն այնմիկ բարբառովն

Խուրեանց Ակեղդամայ. այսինքն՝ գեօղ արեան: Զի գրեալ է ի գիրս սաղմոսաց. եղիցի բնակութիւն նոցա աւերակ. և մի՛ ոք իցէ՝ որ բնակիցի ի նմա. և զկարգ նորա առցէ այլ: Արդ՝ պարտ է յարանցս յայսցանէ՝ եկելոցս ընդ մեզ յամենայն ժամանակի՝ յորում եմուտ և ել առ մեզ տէր Յիսուս: Սկսեալ ի մկրտութենէն Յովհաննու մինչև յօրն՝ յորում վերացաւ ի մէնջ. վկայ յարութեան նորա ընդ մեզ լինել միում ի սոցանէ: Եւ կացուցին երկուս. զՅովսէփ՝ որում Բարսաբայն կոչէին. որ անուանեցաւ Յուստոս. և զՄատաթիա: Եւ կայեալ յաղօթս՝ ասեն. դու տէր՝ սրտագէտ ամենայնի, յայտնեա՛ զմի ոք՝ զոր ընտրեցեր ի սոցանէ յերկոցունց: Առնուլ զվիճակ պաշտամանս այսորիկ՝ և զառաքելութեան, յորմէ անկաւ Յուդաս՝ գնալ ի տեղի իւր: Եւ ետուն վիճակս նոցա. և ել վիճակն Մատաթեայ. և համարեցաւ ընդ մետասան առաքեալսն:

Եւ ապա սաղմոս՝ Ծդ., ըստ ողոգէ ձայնիւ.

Կց. Կակուղ էին բանք նոցա քան զձէթ. և ինքեանք որպէս սլաք:

Փխ. Ո՛ւնկն դիր Աստուած աղօթից իմոց. և մի անտես առներ զխնդրուածս իմ:

Նայեա՛ առ իս և լո՛ւր ինձ. զի տրտմեցայ ես ի ձանձրանալ իմում և խռովեցայ:

Ի ձայնէ թշնամւոյն և ի նեղել մեղաւորին՝ խռո-

րեցան զիս անիրաւութեամբ, բարկութեամբ ոխս պահէին ինձ։

Սիրտ իմ խռովեցաւ յիս, և երկիւղ մահու անկաւ ի վերայ իմ։

Ահ և դողումն եկն ի վերայ իմ, և ծածկեաց զիս խաւար։

Ասացի՝ տայր ոք ինձ զթեւս որպէս զաղաւնւոյ. զի թռչէի վերանայի, և հեռացեալ դադարէի յանապատի։

Ակն ունէի Աստուծոյ որ փրկէր զիս ի կարճմտութենէ զայրանալոյ, և ի մրրկեալ ներգործութենէ։

Ընկղմեա Տէր և բաժանեա զլեզուս նոցա, զի տեսի զանօրէնութիւն և զհակառակութիւն ի քաղաքի։

Ի տուէ և ի գիշերի շուրջ եղեն զպարսպօք նորա անօրէնութիւնք. չարիք և նեղք են ի մէջ նոցա. և ոչ պակասեաց ի հրապարակաց նոցա վաշխ և նենգութիւն։

Զի թէ թշնամւոյն նախատեալ էր՝ համբերէի արդեօք, կամ ատելւոյն մեծաբանեալ էր ի վերայ իմ՝ թագչէի արդեօք ի նմանէ։

Իսկ դու մարդ հաւասար իմ, առաջնորդ իմ և ծանօթ իմ։

Ապաքէն ի նոյն քաղցրացուցեր ինձ և քեզ կերակուր, զի գնայաք միաբանութեամբ ի տան Աստուծոյ։

Եկեսցէ մահ ի վերայ նոցա, և կենդանւոյն իջցեն ի դժոխս. զի չարութիւն է ի բնակութեան նոցա և ի մէջ նոցա։

Ես առ Աստուած կարդացի, և Նա լուաւ ինձ յերեկոյս՝ ի վաղորդայն ի հասարակ աւուր։

Պատմեցի և ասացի և լուիցէ ձայնի իմում․ փրկեսցէ խաղաղութեամբ զանձն իմ ի մերձաւորաց իմոց, զի կարեօք հասին ի վերայ իմ։

Լուիցէ Աստուած և խոնարհ արասցէ զնոսա, որ յառաջն է քան զյաւիտեանս։

Զի ոչ գոյր նոցա փոխանակ, և ոչ երկեան յԱստուծոյ։

Ձգեաց զձեռն իւր ի հատուցանել նոցա, և նոքա պղծեցին զօրէնս նորա։

Բաժանեցան ի սրտմտութենէ երեսաց նորա․ և եհաս ի սիրտս նոցա։

Կակուղ էին բանք նոցա քան զձէթ, և ինքեանն որպէս սլաք։

Ընկեա՛ ի տէր զհոգս քո և Նա կերակրէ զքեզ, և ոչ տայ յաւիտեան սասանութիւն արդարոյ։

Դու Աստուած իջուսցես զնոսա ի գուբ ապականութեան, արք արիւնահեղք և նենգաւորք մի՛ հասարակեսցեն զաւուրս իւրեանց․ այլ ես ի քեզ տէր յուսացայ։

Ալէլուիա՜ օ՜րհնէ։

Սրբոյ Աւետարանիս Յիսուսի Քրիստոսի՝ որ ըստ Մարկոսի։

Գլ՝ 14․ համ՝ 1։

*Վասն ընթրեաց Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի։*

Եւ էր զատիկ և բաղարջակեր, յետ երկուց աւուրց. խնդրէին քահանայապետքն, և դպիրք՝ եթէ զիա՞րդ զնա նենգութեամբ կալեալ սպանանիցեն։ Բայց ասէին, թէ մի՛ ի տօնի աստ. զի մի՛ խռովութիւն լինիցի ի ժողովրդեանն։ Եւ մինչ էր ի Բեթանիա ի տան Սիմոնի բորոտի բազմեալ, եկն կին մի, որ ունէր շիշ իւղոյ նարդեան ազնուի մեծագնոյ. և բեկեալ զշիշն՝ եհեղ ի վերայ գլխոյ նորա։ Եւ աշակերտքն զչարէին և ասէին. ընդէ՞ր եղև կորուստ իւղոյդ այդորիկ։ Մարթ էր՝ զայդ իւղ վաճառել աւելի քան զերեք հարիւր դահեկանի, և տալ աղքատաց. և զայրանային նմա յոյժ։ Եւ Յիսուս ասէ ցնոսա. Թո՛յլ տուք դմա. զի՞ աշխատ առնէք. զի գործ մի բարի գործեաց դա յիս։ Յամենայն ժամ զաղքատս ընդ ձեզ ունիք. և յորժամ կամիք՝ կարող էք առնել նոցա բարիս. այլ զիս ո՛չ յամենայն ժամ ընդ ձեզ ունիք։ Դա՛ զոր ունէր, արար. յառաջագոյն խնկեաց զմարմին իմ ի նշան պատանաց։ Ամէն ասեմ ձեզ. ուր և քարոզեսցի աւետարանս այս ընդ ամենայն աշխարհ, և զոր արար դա՝ խօսեսցի յիշատակի դորա։ Եւ Յուդա Իսկարիովտացի՝ մի յերկոտասանից անտի, գնաց առ քահանայապետսն՝ զի մատնեսցէ զնա նոցա։ Նոքա իբրև լուան՝ խնդացին. և խոստացան տալ նմա արծաթ. և խնդրէր թէ զիա՛րդ պարապով մատնեսցէ զնա։ Եւ յառաջնում

աւուր բաղարջակերացն՝ յորում զպասեքն զենուին, ասեն ցնա աշակերտքն. ո՞ւր կամիս՝ երթիցուք՝ պատրաստեսցուք՝ զի կերիցես զզատիկն։ Եւ առաքէ երկուս յաշակերտաց անտի՝ և ասա ցնոսա. երթա՛յք ի քաղաք. և իբրև մտանիցէք ի քաղաքն՝ պատահեսցի ձեզ այր մի, որ սափոր ջրոյ յուսն ունիցի. երթա՛յք զհետ նորա։ Եւ յոր տուն մտանիցէ, ասասջի՛ք ցըտանուտէրն. Վարդապետն ասէ՝ ո՞ւր են իջևանքն իմ, ուր աշակերտօքս ուտիցեմ զզատիկն։ Եւ նա ցուցցէ ձեզ վերնատուն մի մեծ զարդարեալ. անդ պատրաստեսջի՛ք մեզ։ Եւ գնացին պատրաստել աշակերտքն նորա. եկին ի քաղաքն՝ և գտին որպէս ասացն նոցա. և պատրաստեցին զզատիկն։ Եւ իբրև երեկոյ եղև՝ գայ երկոտասանիւքն հանդերձ։ Եւ իբրև բազմեցան, և դեռ ուտէին, ասէ Յիսուս. ամէն ասեմ ձեզ՝ զի մի ոմն ի ձէնջ մատնելոց է զիս. որ ուտէ իսկ ընդ իս։ Եւ նոքա սկսան տրտմիլ՝ և ասել մի ըստ միոջէ՝ միթէ ե՞ս իցեմ. և միւսն՝ միթէ ե՞ս իցեմ։ Նա պատասխանի ետ և ասէ ցնոսա. մի յերկոտասանից այտի, որ մխեաց ընդ իս ի սկաւառակդ։ Այլ Որդի Մարդոյ երթայ՝ որպէս գրեալ է վասն նորա. բայց վա՜յ իցէ մարդոյն այնմիկ՝ յոյր ձեռըն Որդի Մարդոյ մատնեսցի. լաւ էր նմա՝ թէ չէր իսկ ծնեալ մարդն այն։ Եւ մինչդեռ ուտէին, առեալ Յիսուսի հաց. օրհնեա՛ց՝ և եբեկ՝ ետ նոցա և ասէ. առէ՛ք՝ այդ է մարմին իմ։ Եւ առեալ բաժակ՝ գոհացաւ, ետ նոցա. և արբին ի նմանէ ամենեքեան։

Եւ ասէ ցնոսա. այս է արիւն իմ Նորոյ ուխտի. որ փոխանակ բազմաց հեղանի։ Ամէն ասեմ ձեզ. թէ ոչ ես յաւելից ըմպել ի բերոյ որթոյ՝ մինչև ցօրն ցայն՝ յորժամ արբից զնա նոր՝ յարքայութեան Աստուծոյ։ Եւ գոհացեալ՝ ելին ի լեառն Ձիթենեաց։

*Եւ մինչ ընթեռնուն զսա. ելցէ Պատարագիչն ի սեղանն, և զգեստաւորեսցի, և քաղեսցէ զխորհուրդն մինչև ի Հաւատամքն։*

ՔԱՐՈԶ

Աղաչեսցուք՝ (Տես ի Թիւն. 215:)

*Աղօթք՝ Լոյս Ձայնից. Սուրբ Աստուած որ եկիր և այլն. ցՇարականն Համբարձի. Տես ի 110 էն ց113 Թիւն։*

Համբարձի ԱԿ

Ա՛յսօ՜ր կանգնեցա՞ւ ա՛ւազան (Տես ի Թիւն. 298:)

Քարոզ՝ Վասն խաղաղութեան։ Աղօթք՝ Հայր գըթած. (Տես ի Թիւն. 177:)

Զկնի Սաղմոս՝ ԻԲ։

ԿՑ. Պատրաստ արարեր առաջի իմ զսեղան՝ ակն յանդիման նեղչաց իմոց։

ՓԽ. Տէր հովուեսցէ զիս, և ինձ ինչ ոչ պակասեսցի։

*Ելցեն դպիրքն զգեստաւորեալք և եկեսցեն առաջի սեղանոյն. և ընթերցցին դպիրքն։*

Պօղոսի Առաքելոյն ի Կորնթացւոց Առաջին թղթոյն է ընթերցուածս։
Գլ՝ 11. Համ՝ 23։

Զի ես ընկալայ ի տեառնէ՝ զոր և ձեզն աւանդեցի. եթէ տէր Յիսուս ի գիշերին յորում մատնիւր. էառ զհաց՝ գոհացաւ՝ եբեկ՝ և ասէ։ Առէք՝ և կերայք՝ այս է մարմին իմ, որ վասն ձեր բաշխի. զայս արարէք առ իմոյ յիշատակի։ Նոյնպէս և զբաժակն, յետ ընթրեացն էառ. և ասէ. այս բաժակ՝ նոր ուխտ է իմով արեամբ. զայս արարէք քանիցս անգամ թէ ըմպիցէք՝ առ իմոյ յիշատակի։ Քանիցս անգամ եթէ ուտիցէք զհացս զայս՝ և զբաժակս ըմպիցէք՝ զմահ տեառն պատմեսցէք, մինչև եկեսցէ նա։ Այսուհետև՝ որ ուտիցէ զհացս, կամ ըմպիցէ զբաժակս տեառն անարժանութեամբ, պարտական եղիցի մարմնոյ և արեան տեառն։ Փորձեսցէ մարդ զանձն իւր. և ապա ի հացէ անտի կերիցէ. և ի բաժակէն արբցէ։ Զի որ ուտէ և ըմպէ անարժանութեամբ՝ դատաստան անձին իւրում ուտէ և ըմպէ. զի ո՛չ խտրէ զմարմինն տեառն։ Վասն այնորիկ իսկ են ի ձեզ բազում հիւանդք և ախտաժէտք. և չառք ևս այնք են, որք և ննջեցեալք իսկ իցեն։ Զի եթէ զանձինս քննէաք՝ ապա ո՛չ դատապարտէաք։ Եւ եթէ դատիմք՝ ի տեառնէ խրատիմք. զի մի՛ ընդ աշխարհի դատապարտիցուք։

Ալէլուիա ալէլուիա

Պատրաստ արարեր առաջի իմ սեղան՝ ակն յան-

դիմաց նեղչաց իմոց։

Սրբոյ Աւետարանին Յիսուսի Քրիստոսի՝ որ ըստ Մատթէոսի։

Գլ՝ 26. համր՝ 17։

Վասն Ընթրեաց Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի։

Եւ յառաջնում աւուր բաղարջակերացն մատեան աշակերտքն առ Յիսուս՝ եւ ասեն. ուր կամիս՝ զի պատրաստեսցուք քեզ ուտել զզատիկն։ Եւ նա ասէ ցնոսա. երթայք ի քաղաքն՝ առ այս անուն. եւ ասացէք ցնա. Վարդապետն ասէ՝ ժամանակ իմ մերձեալ է. առ քեզ առնեմ զզատիկս աշակերտօքս հանդերձ։ Եւ արարին աշակերտքն որպէս հրամայեաց նոցա Յիսուս. եւ պատրաստեցին զզատիկն։ Եւ իբրեւ երեկոյ եղեւ՝ կայր բազմեալ ընդ երկոտասան աշակերտսն։ Եւ մինչդեռ ուտէին նոքա՝ ասէ. ամէն ասեմ ձեզ. զի մի ոմն ի ձէնջ մատնելոց է զիս։ Եւ տրտմեցան յոյժ. սկսան ասել ցնա իւրաքանչիւր ոք ի նոցանէ՝ մի թէ ես իցեմ տէր։ Նա պատասխանի ետ եւ ասէ. որ մխեաց ընդ իս զձեռն իւր ի սկաւառակդ՝ նա մատնելոց է զիս։ Որդի Մարդոյ երթայ որպէս եւ գրեալ է վասն նորա. բայց վայ մարդոյն այնմիկ՝ յորոյ ձեռն Որդի Մարդոյ մատնեսցի. լաւ էր նմա թէ չէր ծնեալ մարդն այն։ Պատասխանի ետ Յուդա՝ որ մատնելոցն էր զնա՝ եւ ասէ. մի թէ ես իցեմ Վարդապետ. ասէ ցնա՝ դու ասացեր։ Եւ մինչդեռ ուտէին նոքա, էառ Յիսուս հաց. օրհնեաց՝

և երեկ. նա ևս աշակերտացն՝ և ասէ. առէ՛ք՝ կերա՛յք. այս է մարմին իմ։ Եւ առեալ բաժակ գոհացաւ՝ ետ նոցա՝ և ասէ. արբէ՛ք ի դմանէ ամենեքին։ Զի այդ արիւն իմ նորոյ ուխտի. որ ի վերայ բազմաց հեղանի ի թողութիւն մեղաց։ Բայց ասեմ ձեզ. ո՛չ ևս արբից յայսմհետէ ի բերոյ որթոյ՝ մինչև ցօրն ցայն՝ յորժամ արբից զդա ընդ ձեզ նոր յարքայութեան Հօր իմոյ։ Եւ օրհնեցին, և ելին ի լեառն Ձիթենեաց։

*Զայս Աւետարանս ի սեղանն ընթեռնուցու սարկաւագն։*

Ապա բացցեն զսեղանն, և տացեն զՀաղորդութիւն։

Սրբասացութիւն՝ Որ զերանաւորս։

*Իսկ յորժամ պատարագիչն հասանիցէ յայն տեղին յորում ասէ՝ Եւ տուր մեզ համարձակաձայն, երգէ աւագ երէցն ի բեմի՝ ունելով ի ձեռին զխաչն և զԱւետարանն և կարկառեալ, զեկուցանելով ժողովրդեանն զբան սրբոյն Բարսղի է յուր ամենեցուն։ Նախ ահայտուցէք բանիւ, և ապա յորդորական Հանապազորդ ասելով։*

Լուարուք ինձ որդեակք իմ. և ես զերկիւղ տեառըն ուսուցանեմ ձեզ աննախանձաբար, իբրև սիրելի և հարազատ որդւոց. քանզի հարկ ի վերայ կայ, և վա՛յ է ինձ՝ եթէ ոչ աւետարանեցից ձեզ հանապազօր. զի կարացից ծանուցանել ձեզ, եթէ զի՛նչ են կամքն Աստուծոյ, բարին՝ և հաճոյն, և կատարեալն։ Զի մարգարէն Եզեկիէլ հանապազօր զարհուրեցուցանէ զիս յաղագս խրատու բանին Աստուծոյ ի վերայ քահանայից այսպէս։ Ո՛րդի մարդոյ՝ դէտ կացուցի զք-

քեզ ի վերայ ժողովրդեանդ այդորիկ. եթէ տեսանէցես զսուրն եկեալ, և ոչ ազդ առնիցես փողով. և նոքա ոչ զգուշանայցեն. և եկեալ սուրն և գտանիցէ զոք անպատրաստ. նա յանօրէնութեան իւրում մեռցի. և զարիւն նորա ի ձեռաց քոց խնդրեցից: Արդ՛ սուրն, զեհենին սպառնալիքն են. և փողն, պատուիրանն Աստուծոյ. զոր զեկուցանեմ ձեզ ահաւասիկ եղբարք իմ. ես մարդ եմ իբրև զձեզ, և առաւել ես մեղօք զառածեալ. բայց զի կարգեցայ ձեզ տեսուչ և խրատող, արտասուօք և բազում հառաչանօք սրտի իմոյ՝ սիրով առաջի առնեմ ձեզ զհաճոյսն Աստուծոյ: Ո՛չ եթէ նորաձայն ինչ՝ մտացածին բանիւք առնել զձեզ վտարանդիս, քանզի ստուգապէս՝ և ես համարս տալոց եմ վասն ձեր առաջի Աստուծոյ. վասնորոյ և զվաղնջուցն դրոշմեալ կանոնս ի սրբոց հարցն, դիւրալուր բանիւք ձեզ զեկուցանեմ. բայց զայս նախ գիտասջիք, զի ոչ հրեշտակաց հաւատացաւ քահանայութեան պատիւն, զի անմեղք են. այլ մարդկանց. զի որպէս մեք մեղանչեմք, և յուսամք թողութեան ի Քրիստոսէ. նոյնպէս և ձեզ տացուք յոյս թողութեան և ապաշխարութեան: Եւ արդ աղաչեմ զձեզ զամենեսեան երկայնմտութեամբ լսել ինձ: Ահա բանին երկինք ի վերուստ՝ և Քրիստոս իջեալ բազմի ի վերայ սրբոյ սեղանոյս. և ամենայն զօրք երկնից՝ յերկիր ծաւալին աներևութապէս՝ ի սպաս Որդւոյն Աստուծոյ, և շուրջ զսեղանովն բոլորին. և Սուրբ Հոգին առատապէս բաշխէ զշնորհս

բարեաց, մերձեցելոցն սրբութեամբ։ Եւ արդ՝ դուք եղբարք՝ բազում զգուշութեամբ և երկիւղիւ՝ դի՛ք ի սիրտս ձեր, մի՛ զանտեսանելիդ և եթ նկատել հաց և գինի. այլ զմեծ խորհուրդն որ ծածկեալ է ի մարմնաւոր աչաց տեսութենէ. որ միայն հոգւոյ աչօք տեսանի, որք սրբութեամբ խնդրեն զնա. որով կերակրի հոգին, և ուրախանայ ի ցնծութիւնս Աստուածայինս. քանզի կարող է Աստուած ի միս հում և յարիւն դարձուցանել. որպէս եղև միում ի սրբոցն։ Այլ վասնզի զգայիքս ոչ կարեն տանել զմիս հում և զարիւն, վասն այնորիկ հացիւ և գինւով տպաւորեաց Աստուած. այլ մի՛ իբրև ի հաց հայիք, և մի՛ իբրև զգինի նկատէք. քանզի սա՛ է՝ ճշմարիտ Մարմին և Արիւն Քրիստոսի. մի՛ սովորական ընդելութեամբ ոք հարեալ արհամարհանօք մերձեսցի ի դոյզն ինչ. զի հուր կիզօղ է այրիչ և սպառիչ մեղաւորաց. ուստի պարտ է նախ սրբել ի մեղաց ի ձեռն ապաշխարութեան. զի մի՛ յոլովութեամբ մեղացն կիզիցիմք ի հուրըն. զի սպառին ոգիք այնոցիկ, որք ոչ նախ մեկնին ի մեղաց. այլ ընկռեալ կան ի նոսա։ Եւ մի՛ դարձեալ անյուսաբար ոք հեռանայցէ, և զերկիւղ անոտի ի մէջ բերիցէ, զի ոչ է այն երկիւղ՝ այլ Աստուծոյ արհամարանք. զի սա է դուռն երկնից արքայութեան, և նոյն ինքն արքայութիւն, որ է Քրիստոս Որդի Աստուծոյ և Աստուած մեր. և մերձեցելոցն սրբութեամբ՝ զորդէգրութիւն անջինջ գրէ երկնաւորի Հօրն։ Այլ ի միտ առնուլ արժանի է, զի

ամենայն որդի հարազատ, զնմանութիւն կերպարանաց հօրն բերէ յինքեան. և դու յորժամ ասես՝ Հայր մեր որ յերկինս, և զխնդրուածս մատուցանես, արժան է զնմանութիւն Նորին ի քեզ բերել. զի լսելի լինիցի. ապա եթէ զնմանութիւն ոչ ունիցիս երկնաւոր Հօրն կատարելոյ և բարերարի, ոչ լսէ նա քեզ. և ոչ խոնարհի յաղաչանս քո. այլ լսէ քեզ հայրն չարեաց, զորոյ կերպն գործոյն ունիս, որ ի սանդարամետսն է։ Արդ՝ լսելով զայս, ի բաց փարատեցէք յանձանց ձերոց զչարութիւն, և զամենայն խարդախութիւն. թողէք ի սրտէ իւրաքանչիւր ոք զյանցանս եղբօր ձերոյ, և զամենայն խէթ զոր ունիք առ միմեանս. զի և ձեզ զտեալ զողորմութիւն յերկնաւոր Հօրէն, արժանի լինիջիք զենմանս այսորիկ։ Ի բաց մերժեցէք ի ձէնջ ամենեքեան զանհաւատութիւն, և զխիղճ բծաւորութեան և զթերահաւատութիւն, իրք ի սոյնպիսեացն։ Սրբեցէ՛ք ի ձէնջ զնախանձ, զնենգութիւն, զչարութիւն, զկեղծաւորութիւն, զհպարտութիւն, զամբարտաւանութիւն, զամբարհաւաճութիւն, զմարդահաճութիւն, զհակառակութիւն, զոխըս, զվաշխս, զտոկոսիս, և զամենայն չարեաց արմատ՝ զարծաթսիրութիւնն, և զագահութիւն. և ըզկանացի փաթեթանս, և զկախարդասար դեղատուութիւնս. և զամենայն բան չար, և զթշնամութիւն. և զցաւս ցանկութեան. մանաւանդ՝ զտգեղն և զտխեղծ հայհոյիչ բանն ի բերանոյ ձերմէ, որով զմիմեանս նախատէք. և զանօրէն կռապաշտութիւն, և զան-

կարգ և զանազանս մոլորութիւնս. զորս ի քննումն ածելն՝ ապականէ և գարշեցուցանէ զմիտս, նախ՝ զիւրըն, և ապա՝ զլսողացն. քանզի յաւուրն դատաստանի՝ արդարոց լինին գարշելի բերանքն այնոցիկ՝ որք ոչ մեկնին ի նոցանէ. զի ասաց տէր, որ ասէ ցեղբայրն իւր մորոս, պարտաւոր լիցի գեհեանն հրոյն. արդ՝ պարտ է արմատախիլ առնել զնա ի մէնջ. մի՛ որք չուն, մի՛ որք պոռնիկ, մի՛ արուագէտ. մի՛ գող, մի՛ յափշտակօղ, մի՛ գէճ, մի՛ որովայնամոլ, մի՛ արբեցօղ. մի՛ չարակամ, մի՛ չարայոյզ, մի՛ սպանօղ, մի՛ խռովարար, մի՛ անողորմ, մի՛ բանսարկու, մի՛ պիղծ, մի՛ թշնամանօղ. մի՛ երդմնահար, մի՛ ուխտադրուժ. մի՛ անօրէն, մի՛ անիրաւ. մի՛ բամբասօղ, և մի՛ այլովք մեղօք. զի են մեղք որ մահու չափ են. զորս ոչ իսկ արժանի համարիմ յիշել ի տեղւոջս: Եւ ի վերայ այսր ամենայնի, մի՛ որք հերձուածօղ, զայս ասելով պատուիրեմ, ամենեքին զհին մարդն ի բաց ընկեցէք ամենայն չար գործովքն իւրովք: Այլ զգաստացեալք զգեցարուք ամենեքեան վարս պարկեշտս, սուրբս, բարեխառնս. հեզս, քաղցունս, անոխակալս, խաղաղարարս. ողորմածս ի վերայ հիւանդաց և վշտացելոց. գթածս ի վերայ տնանկաց, աղքատաց, և կարօտելոց. զարդարեալ ամենայն առաքինութեամբ. սիրով, հաւատով, յուսով. ունել զսէր կատարեալ առ Աստուած և առ մարդիկ. քանզի լըրումն ամենայն առաքինութեան սէր է. ի սուրբ սըր-

տէ և յանկեղծաւոր հաւատոց։ Պատուեցէ՛ք զհարս և զմարս ձեր. սիրեցէ՛ք զկանայս ձեր իբրև զանձինս ձեր. և դուք կանայք հնազանդ լերուք արանց ձերոց իբրև տեառն. միաբան երկերուք յԱստուծոյ, պատուեցէ՛ք զօր միաշաբաթին։ Ե՛րիտասարդք և կուսանք՝ զսրբութիւն սիրեցէ՛ք. զի ընդունելով զսրբութիւնս զայս լուսաւորեսջիք որպէս լուսափայլ հայելի, յորժամ նշողք արեգականն ճառագայթեն ի նա. և աճեցեալք սովաւ յառաքինութիւնս, կեցջիք. և ոչ դատապարտեսջիք ըստ առաքելոյն բանի. զի արդարև են մահապարտք և յոլով աշխատութիւնք անըմբերելի ցաւոց. ուրկութիւնք, և այլն ամենայն, յանարժան հաղորդութենէ լինի։ Մի՛ կեղծաւորեալ ոք ի ներքս մտցէ. կարծելով յարտաքս կացելոցն՝ եթէ ի հաղորդելոցն իցէ. վասն զի երկմիտն, ոչինչ ունի յԱստուծոյ. վասն զի Աստուած ոչ փորձի. մի՛ ըզմարդկային ամօթս պատկառիք. զի ոչ ինչ է այս իսկ ամօթ. այլ այն է մեծ ամօթ, որ ի տիեզերական հրապարակին է. զոր այժմ յինէն թագուցանես, և ոչ խոստովանիս, և ոչ ապաշխարես. անդ՝ առաջի մեծի դատաւորին հրապարակեալ բացայայտի. որ ոչ ևս կարես թագուցանել զգործս քո. քանզի հոգիդ քո՝ ինքնին լինի քեզ դատախազ։ Արդ՝ ահա ասացի ձեզ զամենայն աննախանձաբար. յայտնեալ է ես անպարտ եմ. արիւն ձեր ի գլուխս ձեր. քաւեալ եմ ես յարենէ ձերմէ. զի յիմ վերայ՝ այս և եթ կայր։ Բայց զի-

տեմ ես՝ զի են ոմանք ի ձէնջ, որ արհամարհեն զա-
ռացելովքս. վասնորոյ վկայութիւն դնեմ ձեզ զբանս
զայս՝ զոր խօսեցայ ընդ ձեզ այսօր ի վերայ բեմիս.
յաւուրն դատաստանի առաջի բեմին Քրիստոսի՝ յան-
դիման կացուցանեմ ձեզ վկայութեամբ սուրբ Աւե-
տարանիս. ապա՝ յայնժամ ոչ նա կարէ արհամարհել
արհամարհօղն. այլ կշտամբեալ պատուհասակոծ լինի,
և առաքի ի հուրն անշէջ: Այժմ բանիս աւարտումն
տարարից. զի զամենայն ինչ որ վասն խորհրդոյս էր,
ասացաք սակաւուք ըստ պատշաճի իրին: Արդ՝ որք
արժանաւորապէս հաղորդին՝ զարդարեալք գործովք
բարեաց, ընդ Պետրոսի և ընդ այլոց սրբոց առաքե-
լոցն պատուեալ պսակին ի Քրիստոսէ Աստուծոյ մեր-
մէ. և որք ապստամբութեամբ հաղորդին, կրկին ի
խաչ հանեն զՈրդին Աստուծոյ. և որք լրբենի երե-
սօք և անարժանութեամբ հաղորդին, մասն և բաժին
զՅուդայի մատնչի և զխաչահանուացն ընկալնուն.
զօգուտն ձեր՝ դուք գիտէք: Այլ Հոգին Սուրբ՝ որ
սրբոցն է բնակարան. և աղբիւր է ամենայն բարեաց.
մաքրեսցէ զհոգիս և զմարմինս ձեր, և զհաղորդու-
թիւն փրկական խորհրդոյս, ի թողութիւն մեղաց ա-
րասցէ ձեզ: Որում ընդ Հօր և ընդ Որդւոյ Միածնի
Յիսուսի Քրիստոսի տեառն մերոյ փառք յաւիտեա-
նս. ամէն:

*Եւ յաւարտելն սկսանիցեն Հայր մեր՝ բարձր ձայնիւ:*

*Իսկ յորժամ Քրիստոս պատարագեալն վճարեսցի, ասասցեն դպիրքն յորդորական ձայնիւ զտաղս զայս.*

Եկայք մարդիկք ամենայն. մատիք առ տէր սրբութեամբ. ճաշակեցէք և տեսէք. զի քաղցր է տէր բարութեան: Հացս այս մարմին Քրիստոսի. բաժակ արեան նորոյ ուխտի. ծածկեալ խորհուրդս առ յայտնի. Աստուած ի նմա երևի: Որք անմահք էք հոգւով. ի բաց կացէք դադարով. զի հուր կիզիչ է բոցով. զհոգին անարժան մարմնով: Որք աղօթիւք էք ճգնեալ. տաճար հոգւով էք մաքրեալ. յաւէլ մատիք ճաշակեալ. զմարմին զարիւն տեառն ուխտեալ: Սա է Որդին Աստուծոյ. որ ընդ աջմէ Հօր նստի. և աստ միշտ պատարագի. բաշխայ զմեզ աշխարհի: Աստուածածին սրբուհի. երկնից դշխոյ պանծալի. միջնորդ լեր տեառն Յիսուսի. ի ժամ սուրբ պատարագի: Երեսս եդեալ ի հողի. հայցեմք ի քէն Թագուհի. մատո զաղերս մեր բանի. Որդւոյ քո տեառն Յիսուսի: Գարունն է մեզ հոգւոր. եկայք մարդիկք բանաւոր. ողջոյն կուսին ճահաւոր. երգեաց հրեշտակն երկնաւոր:

*Եւ ապա հաղորդեսցին արժանաւորքն, և արձակեսցեն.*





Իսկ յերեկոյին Ժ. ժամուն՝ ժողովեսցին ի դաւիթ եկեղեցւոյն և կատարեսցեն զկարգ ոտնալուային՝ զարարեալն սրբոյն Ներսեսի, և զթարգմանեալն Մեծին Գրիգորի վկայասէրի Հայոց Հայրապետի։ Բայց յառաջագոյն պատրաստ ունելով զապաս խորհրդական լուացման. և դիցեն զՍրբութիւնն ի վերայ բազմոցին. և եկեսցեն յատեանն զգեստաւորեալք, և սկսանիցեն ողբաձայն սաղմոս՝ Ծ։

Կ8. Ցօղեա զիս մշտկաւ և սուրբ եղէց, լուա և քան զձիւն սպիտակ եղէց։

Փխ. Ողորմեա ինձ Աստուած՝ ըստ մեծի ողորմութեան քում։ (Տես ի թիւն. 56:)

Ձկնէ շարական՝ Ակ։

Ա՛յսօ՛ր կանգնեցա՛ւ (Տես ի թիւն. 298:)

Եւ յաւարտին՝ սարկաւագն քարոզեսցէ։

Եւ ես գոհութիւն և երկրպագութիւն մատուսցուք տեառն մերոյ և փրկչին Յիսուսի Քրիստոսի, որ է ճառագայթ փառաց և ծագումն էութեան՝ անսկզբնական բնութեանն Հօր։ Որ նոյն ինքն այսօր՝ անբաժանելի գոլով յէական լուսոյն, խոնարհեցոյց զինքըն յաղքատ բնութիւնս մեր. առեալ զկերպարանս ծառայի, կատարեաց զտնօրինական փրկագործութիւնըն. լուաց զոտս աշակերտացն յօրինակ մեզ։ Աղաչեսցուք և խնդրեսցուք ի նմանէ. զի և այժմ խոնարհեսցի մարդասիրութեամբ իւրով՝ ի ժողովարանս

մեր· և լուացմամբ երևելի ջրոյս այսմիկ, շնորհօք սրբեսցէ զաներևոյթ հոգիս մեր ի մեղաց մերոց· ամենակալ տէր Աստուած մեր կեցուսցէ և ողորմեսցի։

Եւ ապա Ծ· Տէր ողորմեա, Թիւ։ Եւ ի վճարելն՝ կարդասցէ Եպիսկոպոսն կամ քահանայն զաղօթս զայս։

Փառաւորեմք զքեզ տէր մեր և փրկիչ Յիսուս Քրիստոս՝ Միածին Որդի և բան Հօր· տէր և արարիչ հրեշտակաց և մարդկան, Աստուած հուր կիզելոյ· որ և հրեղէն զօրութիւնքն զարհուրեալ սարսափին նայիլ ի պատիւ փառաց Աստուածութեանդ քոյ· ուստի և սերովբէքն թևաքօղեալ ծածկեն զդէմս իւրեանց, անդադար փառաբանութիւն մատուցանելով առաջի աթոռոյ տէրութեանդ քոյ։ Դու տէր՝ և այժմ ի լրման ժամանակի փրկութեանս մերոյ, հաճեցար լինիլ մարդ՝ ի սուրբ և յանարատ կուսէն Մարիամայ· և ընդ ամենայն կիրս մարդկութեան անցանելով՝ բաց ի մեղաց, բարձեր զպարտիսն Ադամայ՝ յԱստուածագործ մարմինդ քո, զոր ի մերմէ բնութենէս ընկալար· և զամենայն կատարեցեր ըստ օրինացն՝ փրկելով զմեզ յանիծից օրինացն· եկիր ի վերնատունն՝ կատարելով զայն ևս զՄովսիսադիր ըստուերօրէնսդրութիւնն. և որ սպասաւորեալդ պաշտիս յաննիւթական հրեղինացն· ըստ որում և կրկնի քեզ ամենայն ծունր երկնաւորաց, և երկրաւորաց, և սանդարամետականաց։ Այսօր՝ տնօրինական մարդասիրութեամբ խոնարհեցար ի ծունկս քոց սրբոց առա-

Աստուած իմ՝ ողորմութիւն նորա կանխեսցէ առ իս, և Աստուած իմ ցուցցէ ինձ ի թշնամիս իմ։

Մի՛ սպանաներ զնոսա, զի մի՛ մոռասցին զժողովուրդս քո։

Ցրուեա՛ զնոսա զօրութեամբ քով և ընկեցեա՛ զնոսա. զի դու ես պաշտպան իմ տէր։

Մեղք բերանոյ նոցա և բանք շրթանց նոցա, ընկալցին նոքա յամբարտաւանութեան իւրեանց։

Ցանկէծս և ի ստութիւնս մատնեսցին, ի կատարածի բարկութեան սպառեսցին, և մի՛ գտցին։

Գիտասցեն զի Աստուած տիրէ Յակոբայ, և ամենայն ծագաց երկրի։

Դարձցին ընդ երեկոյս, սովեսցին որպէս շունք և շրջեսցին զքաղաքաւ։

Նոքա ափսեսցին յուտել, ապա թէ ոչ յագեսցին տրտնջեսցեն։

Ես օրհնեցից զօրհնութիւնս տեառն. և ցնծացայց առաւօտուց յողորմութեան քում։

Զի եղեր իմ պաշտպան և տուն ապաւինի, յաւուր նեղութեան իմոյ օգնական իմ։

Քեզ սաղմոս սացից Աստուած ապաւէն իմ, Աստուած ողորմութեան իմոյ։

Սաղմոս ԾԹ։

Աստուած մերժեցեր և աւերեցեր զմեզ, բարկացար և գթացիր ի մեզ։

Շարժեցեր զերկիր և խռովեցուցեր զսա. բժշկեա

զհարուածս սորա զի սասանեցաւ ։

Ցուցեր ժողովրդեան քում խստութիւն, և ետուր ըմպել մեզ գինի յիմարութեան ։

Ետուր երկիւղածաց քոց նշան, զի ապրեսցին յերեսաց աղեղան ։

Որպէս փրկեսցին սիրելիք քո, կեցո՛ աջով քով և լո՛ւր մեզ ։

Աստուած խօսեցաւ ի սրբութենէ իւրմէ․ ցնծացայց, բարձր եղէց՝ բաժանեցից զՍիւքէմ, և զհովիտսըն յարկաց չափեցից ։

Իմ է Գաղաադ և իմ է Մանասէ, Եփրեմ հզօրիչ գլխոյ իմոյ ։

Յուդա թագաւոր իմ, Մովաբ աւազան յուսոյ իմոյ ։

Յեդովմէ ուղղեցից զգնացս իմ, և ինձ այլազգիք հնազանդ եղեն ։

Ո՞ տարցէ զիս ի քաղաք ամուր, կամ ո՞վ առաջնորդեսցէ ինձ մինչև ցԵդոմ ։

Եթէ ո՛չ դու Աստուած որ մերժեցեր զմեզ, և ո՛չ ելեր Աստուած ընդ զօրս մեր ։

Տո՛ւր մեզ օգնութիւն ի նեղութեան, զի ընդունայն է փրկութիւն մարդոյ ։

Աստուծով արասցուք զօրութիւն, և նա արհամարհեսցէ զայնոսիկ ոյք նեղեն զմեզ ։

Սաղմոս Կ ։

Լո՛ւր Աստուած աղօթից իմոց, և նայեա՛ տէր յա-

*ղօթս իմ ։*

*Ի ծագաց երկրի կարդացի առ քեզ, մինչ ի վատակիլ սրտի իմոյ ։*

*Ի վիմէ բարձր արարեր զիս, առաջնորդեցեր ինձ, և իմ եղեր յոյս և աշտարակ հզօր եղեր ինձ յերեսաց թշնամւոյն ։*

*Բնակեցայց ես ի յարկս քո յաւիտեան, և ծածկեցայց ընդ հովանեաւ թևոց քոց ։*

*Դու Աստուած լուար աղօթից իմոց. ետուր ժառանգութիւն՝ որք երկնչին յանուանէ քումմէ ։*

*Աւուրս յաւուրս յաւելեր թագաւորի ամաց նորա, աւուրս ազգաց մինչև յազգս ։*

*Կայ և մնայ յաւիտեան առաջի Աստուծոյ ողորմութիւն, և ճշմարտութիւն որք խնդրեն ի նմանէ ։*

*Այսպէս սաղմոս ասացից անուան քում յաւիտեանս յաւիտենից, և տաց քեզ զաղօթս իմ օր ըստ օրէ ։*

*Կցորդ՝ ձայնիւ ։*

***Փրկեա զիս ի թշնամեաց իմոց Աստուած. և ի հալածչաց իմոց ապրեցո զիս ։***

***Խնամով սիրոյն յիւր սիրելեացն ըզտրտմութիւնըն փարատեաց. Թացեալ պատառ տայ Յուդայի նշաւակեալ զգողըն մատնիչ. զոր առեալ և մերկացաւ յԱստուածային հոգւոյն շնորհաց. մատնեցաւ նախաչարին ընդ մատնութեան վարդապետին ։***

Ծա°յրագո՞յն լուսո՝յն գը՛րկեա՝լ խաւարա՝սէ՛րն առ-տաքս ելեա՝լ. տէրըն յայտնէր լոյս ե՛ղելո՝ցն ըզգա՛յ-թակղելն ի՛ գիշերի. Պե՛տրոս խօսէ՞ր խրախո՝ւսե՛լի և կըշտա՝մբի՛ւր հաւախօսի. զիւրն յա՛շխարհէ զփո՝-խի՛լն ասէ՝ր և ը՛զգալուստ Հո՝գւո՛յն պատմէ՞ր։

Կե°ղրոնեա՞ն յայնկո՝յս ձո՛րո՝յ ի վերնատո՛ւնն եղ խորհրդոյ. եմո՛ւտ պարտէ՝զ ընդ պալատիցն եմո՛յծ զԱդամ յա՛դին դրախտին. մո՛ւծցես և զմե՞զ տէր ը՝նդ նը՛մին ուստի հա՝նե՛ր նախ զա՛ռաջինն. զի ժառանգել ը՝զհա՛յրենին ա՝րժա՛նասցուք մեք վե՛-րըստի՞ն։

Հո°գայր ըզկրի՞ւըն տը՝րամա՛քա՝ր երիւքն ե՛ղեալ առանձնաքա՝ր. փրկել զաշխա՝րհս հո՝գի՛ս յօժա՝ր բայց է՝ բնո՛ւթիւն մա՛րմնոյս տկա՝ր. ո՛չ ումե ու-ժե՞ղ և զօ՝րա՛ւոր և ոմն ա՛նզօր վըտանգաւո՝ր. այլ մի և նոյն զո՝լ մի՛աւո՝ր կը՝րէ՛ր ըզկիրսն կա՛մաւո՞ր։

Զա°յնիւ մաղթէ՞ր աղօ՝թա՛կա՝ն վասն իմ առ Հա՛յր իւր էական. ծո՛ւնըր դընէր խո՝նա՛րհական ո՛րո՛ւմ կըրկնի ծունր ամենայն. ե՛թէ փըրկի՞լ մարդ-կա՝ն հնա՛ր է՝ առանց մահո՛ւ իմ որ գրեալ է. բա՝-ժակ մահուս յինէ՛ն անցցէ ո՝չ ի՛մ կամաւ ա՝յլ քո՛յդ տեսցէ՞։

Ղօ°զեալ յերկի՞ւղ քըրտանց հոսմա՝ն ոլոռնաձե՛ կայլակ վիժման. ի զօրանալ հրե՝շտա՛կ մերձեա՝լ զօ-րի՛նական զի՛րըն լըցեալ. զի՛ կատարեսցի՝ էա՝ռ զընո՛ւթի՝ւն Աստուածը՝ն բա՛ն ըզմարդկութեան.

պարտ էր զերկիւղ և զտը՛րտմութի՛ւն յիւրո՛ւմըն կրել տնօրէ՛նութի՛ւն ։

Ձկնէ՝ Ո՛րթիւ ։

Սրբոյ աւետարանիս Յիսուսի Քրիստոսի՝ որ ըստ Մարկոսի ։

Գլ՝ 14 . համր՝ 27 .

Վասն Մատնութեան Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի ։

Եւ ասէ ցնոսա Յիսուս . ամենեքեան գայթակղելոց էք յինէն յայսմ գիշերի . զի գրեալ է , թէ հարից զհովիւն , և ոչխարքն ցրուեսցին ։ Այլ յետ յարութեան իմոյ յառաջագոյն երթայց քան զձեզ ի Գալիլեայ ։ Պատասխանի ետ Պետրոս և ասէ ցնա . թէպէտ և ամենեքին գայթակղեսցին , այլ ես ո՛չ ։ Եւ ասէ ցնա Յիսուս . ամէն ասեմ քեզ . թէ դու իսկ յայսմ գիշերի մինչչև հաւու խօսեալ իցէ՝ երիցս ուրասցիս զիս ։ Իսկ Պետրոս առաւել ևս պնդէր և ասէր . եթէ մեռանիլ ևս հասանիցէ ընդ քեզ , զքեզ ո՛չ ուրացայց . Նոյնպէս և ամենեքեան ասէին ։ Գան ի գեօղն՝ որում անուն էր Գեթսեմանի . և ասէ ցաշակերտսն . Նստարո՛ւք աստ՝ մինչ ես յաղօթս կացից ։ Եւ առնու ընդ իւր զՊետրոս՝ և զՅակոբոս՝ և զՅովհաննէս . և սկսաւ տրտմել և հոգալ ։ Յայնժամ ասէ ցնոսա . տրտում է անձն իմ մինչև ի մահ . մնացէ՛ք աստ՝ և արթո՛ւն կացէք ։ Եւ մատուցեալ սակաւիկ մի յառաջ , անկաւ ի վերայ երեսաց իւրոց յերկիր . և կայր յաղօթս . զի եթէ հնար ինչ է՝

անցցէ ի նմանէ ժամն։ Եւ ասէ. ա՛բբա Հայր. ամենայն ինչ քեզ հնարաւոր է. անցո՛ զբաժակս զայս յինէն. բայց ո՛չ որպէս ես կամիմ՝ այլ որպէս դու կամիս։ Եւ գայ՝ գտանէ զնոսա՝ զի ննջէին. և ասէ ցՊետրոս. Սիմոն ննջե՞ս. ո՞չ կարացեր ժամ մի արթուն կալ։ Արթո՛ւն կացէք՝ և յաղօ՛թս կացէք. զի մի՛ մտջիք ի փորձութիւն. ոգիս յօժար է՝ բայց մարմինս տկար։ Եւ դարձեալ չոգաւ՝ եկաց յաղօթս. և զնոյն բան ասաց։ Դարձաւ միւսանգամ անդրէն. և եգիտ զնոսա ի քուն. քանզի էին աչք նոցա ծանրացեալք. և ո՛չ գիտէին զինչ պատասխանի տայցեն նըմա։ Գայ երրորդ անգամ, և ասէ ցնոսա. ննջեցէ՛ք այսուհետև, և հանգերո՛ւք. զի հասեալ է վախճան. եկն ժամ. և ահա որդի մարդոյ մատնի ի ձեռս մեղաւորաց։ Օ՛ն արի՛ք գնասցուք. զի ահաւասիկ մերձեցաւ՝ որ մատնելոց է զիս։ Եւ մինչդեռ նա զայն խօսէր՝ գայ Յուդա Իսկարիովտացի՝ մի յերկոտասանից անտի. և ընդ նմա ամբոխ սուսերօք և բրօք. ի քահանայապետից՝ և ի դպրաց՝ և ի ծերոց։ Տըւեալ էր նշան մատնչին՝ և ասէր. ընդ որում ես համբուրեցից՝ նա է. կալջիք զնա՝ և տարջիք զգուշութեամբ։ Եւ մատուցեալ վաղվաղակի՝ ասէ ցնա. ռաբբի, ռաբբի. և համբուրեաց զնա։ Եւ նոքա արկին ի նա ձեռս՝ և կալան զնա։ Եւ մի ոմն յայնցանէ՝ որք զնովաւն կային՝ ձգեաց զսուր. և եհար զծառայ քահանայապետին. և ի բաց եհան զունկն նորա։ Պատասխանի ետ Յիսուս և ասէ ցնոսա. իբ-

րն ի վերայ աւազակի ելէք սուսերօք և բրօք ունել զիս ։ Հանապազ առ ձեզ էի՝ և ուսուցանէի ի տաճարին․ և ոչ կալայք զիս․ այլ զի լցցին գիրք մարգարէիցն ։ Յայնժամ թողին զնա աշակերտքն ամենեքին՝ և փախեան ։ Եւ ոմն երիտասարդ զհետ երթայր նորա՝ արկեալ զիւրև զկտաւ մի ի մերկուց․ ունէին զնա երիտասարդքն ։ Եւ նորա թողեալ ըզկտաւն՝ փախեաւ մերկ ի նոցանէ ։ Եւ տարան ըզՅիսուս առ քահանայապետն Կայիափայ․ և գային ընդ նմա ամենայն քահանայքն՝ և դպիրք և ծերք․ Եւ Պետրոս երթայր զհետ նորա մինչև ի ներքս իսկ ի գաւիթ քահանայապետին․ և նստէր ընդ սպասաւորսն և ջեռնոյր առ լուսովն ։ Իսկ քահանայապետքըն՝ և ամենայն ատեանն խնդրէին հակառակ Յիսուսի վկայութիւն ինչ․ զի սպանանիցեն զնա՝ և ոչ գտանէին ։ Զի բազումք սուտ վկայութիւն վկայէին զնմանէ․ և նման միմեանց ոչ էին վկայութիւնքըն ։ Այլք յարուցեալ վկայէին սուտ զնմանէ, և ասէին ։ Թէ մեք լուաք ի դմանէ զի ասէր․ ես քակեցից զտաճարդ զայդ ձեռագործ․ և զերիս աւուրս շինեցից զայլ՝ առանց ձեռագործի ։ Սակայն և այնպէս չէր նման վկայութիւն նոցա ։ Ապա յարուցեալ քահանայապետն ի մէջ՝ հարցանէր զՅիսուս, և ասէր․ ոչինչ տաս պատասխանի․ զի՞նչ դոքա զքէն վկայեն ։ Եւ Յիսուս լուռ և եթ կայր, և ոչ տայր ինչ պատասխանի․ դարձեալ քահանայապետն հարցանէր զնա կրկին անգամ և ասէր․ դո՞ւ ես Քրիստոս Որդի Աս-

տուծոյ օրհնելոյն։ Պատասխանի ետ Յիսուս և ասէ ցնա. դու ասացեր՝ թէ ես եմ. բայց տեսանիցէք զորդի մարդոյ նստեալ ընդ աջմէ զօրութեան Աստուծոյ. և եկեալ ընդ ամպս երկնից։ Եւ քահանայապետն պատառեաց վաղվաղակի զպատմուճան իւր և ասէ. զինչ եւս պիտոյ են մեզ վկայք։ Ահա լուայք ամենեքեան զհայհոյութիւն ի բերանոյ դորա. զիա՞րդ թուի ձեզ. և ամենեքեան դատապարտեցին զնա՝ թէ մահապարտ է։ Եւ ոմանք սկսան թքանել ընդ երեսս նորա. ձորձս զգլխով արկանել՝ կռփել և ասել. մարգարէա՛ց մեզ Քրիստոսդ. ո՞վ է այն՝ որ եհարզքեզ. և ապտակօքն ապտակս հարկանէին նմա։ Եւ Պետրոս մինչդեռ էր ի խոնարհ ի գաւթին, գայ աղախին մի քահանայապետին։ Եւ տեսանէ զնա՝ զի ջեռնոյր. հայեցաւ ընդ նա և ասէ. և դու ընդ Յիսուսի Նազովրեցւոյ էիր։ Նա ուրացաւ և ասէ. ո՛չ ճանաչեմ և ո՛չ գիտեմ զինչ դուդ ասես. և ելեալ ել յառաջագոյն գաւիթն, և հաւ խօսեցաւ։ Դարձեալ ետես զնա աղախինն. և սկսաւ ասել ցայնոսիկ՝ որք շուրջն կային, թէ և սա ի նոցանէ է։ Եւ նա դարձեալ ուրացաւ. և յետ սակաւ միոյ՝ դարձեալ որք շուրջն կային, ասեն ցՊետրոս. արդարև դու ի նոցանէ ես. քանզի Գալիլեացի ես՝ և խօսքդ իսկ քո նման են։ Եւ սկսաւ նզովել՝ երդնուլ և ասել թէ. ո՛չ գիտեմ զորմէ դուքդ ասէք։ Եւ նոյն ժամայն կրկին հաւ խօսեցաւ. և յիշեաց Պետրոս զբանն՝ զոր ասաց ցնա Յիսուս, թէ չև իցէ հաւու երկիցս խօսեալ. զի դու երիցս ուրասցիս զիս. և սկսաւ լալ։

Աղօթք հանդերձ ծունր դնելով զտէր աղաչեսցուք.
Տէր ողորմեա։ (Երիցս կրկնեա)
Եւ նա խաղաղութեան"։ Օրհնութիւն և փառք"։

Չորրորդ ձայն. Սաղմոս ՀԸ։

Աստուած, մտին հեթանոսք ի ժառանգութիւն քո. պղծեցին զտաճար սուրբ քո։

Արարին զԵրուսաղէմ որպէս զհիւղս մրգապահաց. արկին զդիակունս ծառայից քոց զէշ թռչնոց երկնից, և զմարմինս սրբոց քոց գազանաց երկրի։

Հեղին զարիւն նոցա որպէս զջուր շուրջ զԵրուսաղէմաւ, և ոչ ոք էր որ թաղէր զնոսա։

Եղաք մեք նախատինք դրացեաց մերոց. ծաղր և այպն կատականաց այնոցիկ՝ որք շուրջ էին զմեօք։

Մինչև յերբ տէր բարկանաս դու իսպառ, բորբոքեսցի որպէս հուր նախանձ քո։

Հեղ զբարկութիւն քո ի վերայ ազգաց՝ որք զքեզ ոչ ճանաչեցին, ի վերայ թագաւորաց՝ որք զանուն քո ոչ կարդացին. զի կերին զՅակոբ և զտեղի նորա աւերեցին։

Մի յիշեր զմեղս մեր զառաջինս, վաղվաղ եկեսցէ առ մեզ ողորմութիւն քո տէր զի աղքատացաք յոյժ։

Օգնեա մեզ Աստուած փրկիչ մեր, վասն փառաց յանուան քոյ։

Տէր փրկեա զմեզ և քաւեա զմեղս մեր վասն անուան քոյ։

Մի երբէք ասասցեն ի հեթանոսս, թէ ուր է Աստ-

տուած նոցա։

Այլ յայտնի լիցի ի վերայ հեթանոսաց առաջի աչաց մերոց, առ ի խնդրել զվրէժ արեան ծառայից քոց որ և հեղաւ։

Մտցէ առաջի քո հեծութիւն կապելոց. ըստ մեծութեան բազկի քո չահեա՛ դու զորդիս սպանելոց։

Հատո՛ դրացեաց մերոց եօթնպատիկ ի ծոց նոցա, զնախատինս իւրեանց զոր նախատեցին զքեզ տէր։

Մեք ժողովուրդք և խաշն արօտի քոյ խոստովան եղիցուք առ քեզ յաւիտեան, ազգէ յազգ պատմեսցուք զօրհնութիւնս քո։

Սաղմոս ՀԹ։

Որ հովուես Իսրայէլի նայեա՛ց, որ առաջնորդես որպէս խաշին Յովսէփ։

Որ նստիս ի քրովբէս յայտնեա՛ց առաջի Եփրեմի Բենիամինի և Մանասէի։

Զարթո՛ զզօրութիւնս քո, և եկ ի կեցուցանել զմեզ։

Աստուած զօրութեանց դարձո՛ զմեզ, երևեցո՛ զերեսս քո ի մեզ և կեցցուք։

Տէր Աստուած զօրութեանց մինչև յե՞րբ բարկանաս յաղօթս ծառայից քոց։

Ջամբեցեր մեզ հաց արտասուաց, և արբուցեր մեզ արտասուս չափով։

Արարեր զմեզ նախատինս դրացեաց մերոց, այպն կատականաց թշնամեաց մերոց։

Աստուած զօրութեանց դարձո զմեզ, երեւեցո զե-րեսս քո ի մեզ և կեցցուք։

Այգի յԵգիպտոսէ փոխեցեր. հաներ զհեթանոսս և զնոսա տնկեցեր, և առաջնորդեցեր նմա։

Հաստատեցեր զարմատս նորա և ելից զերկիր. ծածկեաց զլերինս հովանի նորա, և բարունակ նորա զմայրս Աստուծոյ։

Ձգեաց զորթ իւր մինչև ի ծով, մինչև ի գետս են շառաւիղք նորա։

Ընդէր քակեցեր զցանկ նորա, և կթեն զնա ան-ցաւորք ճանապարհի։

Ապականեաց զնա խոզ անտառի, և երէվայրի ա-րածեցաւ ի նմա։

Աստուած զօրութեանց դարձ հայեաց յերկնից և տես, այց արա այգւոյս այսմիկ և դարման տար զն-մա՝ զոր տնկեաց աջ քո։

Ի վերայ որդւոյ մարդոյ զոր զօրացուցեր դնա ի քեզ, այրեցեալ ի հուր և աւերեալ, ի սաստէ քումմէ կորիցէ։

Եղիցի ձեռն քո ի վերայ առն, աջ քո ի վերայ որդւոյ մարդոյ զոր զօրացուցեր դնա ի քեզ։

Ո՛չ ևս ի բացեայ եղիցուք մեք ի քէն. կեցուսցես դու զմեզ, և զանուն քո անէր կարդասցուք։

Աստուած զօրութեանց դարձո զմեզ, երեւեցո զե-րեսս քո ի մեզ և կեցցուք։

Սաղմոս Ձ։

Ցնծացէք առ Աստուած՝ օգնական է մեր, պաղա-

ղակեցէք առ Աստուած Յակոբայ։

Առէք սաղմոս և տուք օրհնութիւն, սաղմոս ասացէք նմա ի ձայն քաղցրութեան։

Փո՛ղ հարէք ի գլուխ ամսոց, յաւուր նշանաւորի տարեկանաց մերոց։

Հրաման է այս Իսրայէլի, և իրաւունք են Աստուծոյ Յակոբայ։

Վկայութիւն Յովսեփու զոր եդ ընդ նմա․ որպէս ելանէր նա յերկրէն Եգիպտացւոց, լեզու զոր ո՛չ գիտէր լուաւ։

Ի բաց արար ի բեռանց զթիկունս նորա, և զձեռըս նորա յորթ և ի թի ծառայելոյ։

Ի նեղութեան կարդացեր առ իս և փրկեցի զքեզ, լուայ քեզ ի գաղտնութենէ մրրկին, և փորձեցի զքեզ ի վերայ ջուրցն հակառակութեան։

Լո՛ւր ժողովուրդ իմ և վկայեմ քեզ, և Իսրայէլ թէ լուիցես ինձ։

Մի՛ ևս եղիցին քեզ Աստուածք առ ժամայնք․ և մի՛ երկիրպագանիցես դու Աստուծոյ օտարի։

Ես եմ տէր Աստուած քո որ հանի զքեզ յերկրէն Եգիպտացւոց, բա՛ց զբերան քո և լցից զդա։

Ժողովուրդ իմ ո՛չ լուաւ ձայնի իմում, և Իսրայէլ յիս ինչ ո՛չ նայեցաւ։

Բարձի թողի զնոսա երթալ զհետ կամաց սրտից իւրեանց, զի գնացին նոքա ըստ կամս անձանց իւրեանց։

Զի թէ ժողովրդեան իմոյ լուեալ էր ինձ, կամ Իս-

բայէլի զճանապարհս իմ գնացեալ էր ։

Որպէս զոչինչ խոնարհ արարեալ էր իմ զԹշնամիս նորա, և ի վերայ նեղչաց նորա արկեալ էր զձեռն իմ ։

Թշնամիք տեառն ստեցին նմա, և եղիցին ժամանակք նոցա յաշխարհի ։

Կերակրեաց զնոսա ի պարարտութենէ ցորենոյ, և ի վիմէ մեղր յագեցոյց նոցա ։

Կցուրդ՝ ձայնիւ ։

Նոքա ի ձե՛ռանէ քումմէ՝ մե՛րժե՛ցա՞ն․ մե՜ք ժո՝ղո՛վուրդք և խա՜՛չն ա՝րօ՛տի՜ քո՜յ ։

Ճա°ռագա՜յթ փառա՝ց է՛ին որ ըստ բնութեա՛նըս մարդկային․ տաղնապեցա՝ր ի՛ գիշերին աղօ՛թեցե՝ր ա՛ռ Հայր յերկինս․ ծա՛գեա ի մե՜զ զլոյս ե՝րկնա՛յին և փարա՝տեա՛ զերկիւղ չարին․ մասունք հոգւոյ մե՝ր և՛ մարմին յե՝րկի՛ւղ քո սուրբ բե՝ւե՛ռեցի՞ն ։

Մե°րձեալ Յուդա՜ս որ մա՝տնե՛լո՝ց հանդերձ դա՝սո՛ւն փարիսեցւո՝ց․ անկան նըմա՝ն ստո՝րա՛նկելո՝ցն որք յաւիտեան չե՛ն կանգնելո՝ց․ Յո՛ւդաս նենգա՜ւ համբո՝ւրե՛լո՝վ առիթ մա՝հո՛ւ նըշան տալո՝վ․ փոխան սիրոյ զնա՝ մա՛տնելո՝վ չա՝ր ը՛նդ բարւոյ վըճա՛րելո՞վ ։

Յա°յնժամ առ գո՞ւթ սիրո՝յն Պե՛տրո՝ս ըզծա՝ռա՛յին անուն Մաղքոս․ եհատ սուսերբ զա՝կա՛նջն աջո՝յ ո՝ր ո՛չ լուաւ տեառըն իւրո՝յ․ Ի՛սկ տէրըն մե՜ր ա-

րագապէս յունկըն մերձեալ բըժըշկապէս. առողջացոյց Աստուածապէս զոր ոչ տեսին կուրացն հանդէս:

Նոր հոտի՛ն փոքու ցըրուեալ քանզի զհովիւըն քաջ հարեալ. Պետրոս միայն ընդհետ երթեալ ի յաղջկանէ վիմին շարժեալ. ներշանուեալ հաւըն խօսէր առ ի Պետրոս աչըն ակնարկէր. զբանըն յիշէր, դառն արտասուէր ի գլորմանէն գործեալ կանգնէր:

Շնորհեալ վիմի՛ն եկեղեցւոյ զոր պահեցեր ի հոսելոյ. և կանգնեցեր ի գլորելոյ վասըն սըր-տիւն արտասուելոյ. կանգնեա և զիս տէր ընդ նըմին ի գլորմանէ տայթաքողին. տալով աչացս յորդ արտասուս և ջուր նըման ծովու գըլխոյս:

Ով կամաւ զանկապելին կապեալ ընդձեռս ար-ձակողին. ի յապարանսըն տանէին Կայիափայ և Աննային. ծառայն զերեսն այն ապտակէր յորմէ սրովբէն թեւապքօղէր. թուք արձակեալ պիղծ եբ-րանովն յայն որ կուրին լոյս ծագեաց թքովն:

Ձայն՝ Որթիւ:

Սրբոյ աւետարանիս Յիսուսի Քրիստոսի՝ որ ըստ Մատթէոսի:

Գլ՝ 26. համր՝ 31:

Տէրն մեր Յիսուս Քրիստոս:

Յայնժամ ասէ ցնոսա. ամենեքին դուք գայթակ-

ղելոց էք յինէն յայսմ գիշերի. զի գրեալ է՝ թէ հարից զհովիւն՝ և ցրուեսցին ոչխարք հօտին։ Եւ յետ յարութեան իմոյ՝ յառաջեսցից քան զձեզ ի Գալիլեա։ Պատասխանի ետ Պետրոս և ասէ ցնա. թէպէտ և ամենեքեան գայթակղեսցին ի քէն. սակայն ես ոչ գայթակղեցայց։ Ասէ ցնա Յիսուս՝ ամէն ասեմ քեզ՝ զի յայսմ գիշերի մինչչև հաւու խօսեալ իցէ՝ երիցս ուրասցիս զիս։ Ասէ ցնա Պետրոս. թէ և մեռանիլ հասանիցի ընդ քեզ. զքեզ ոչ ուրացայց. նոյնպէս և ամենայն աշակերտքն ասէին։ Յայնժամ գայ Յիսուս ընդ նոսա ի գիւղ մի՝ որում անուն էր Գեթսեմանի. և ասէ ցնոսա. նստարուք աստ. մինչև երթայց կացից յաղօթս։ Եւ առեալ ընդ իւր զՊետրոս՝ և զերկուս որդիսն Զեբեդեայ՝ սկսաւ տրտմիլ և հոգալ։ Յայնժամ ասէ ցնոսա. տրտում է ոգի իմ մինչև ի մահ. կացէք աստ՝ և հսկեցէք ընդ իս։ Եւ մատուցեալ յառաջ սակաւիկ մի՝ անկաւ ի վերայ երեսաց իւրոց. եկաց յաղօթս և ասէ. Հայր իմ. եթէ հնար է՝ անցցէ բաժակս այս յինէն. բայց ոչ որպէս ես կամիմ, այլ որպէս դու։ Գայ առ աշակերտսն՝ և գտանէ զնոսա ի քուն. և ասէ ցՊետրոս. այդպէս ոչ կարացիք մի ժամ արթուն կալ ընդ իս։ Արթուն կացէք. և աղօթս արարէք, զի մի՛ անկանիցիք ի փորձութիւն. ոգիս յօժար է՝ բայց մարմինս տկար։ Դարձեալ երկրորդ անգամ չոգաւ՝ եկաց յաղօթս Յիսուս՝ և ասէ. Հայր իմ. եթէ հնար իցէ անցանել յի-

նէն բաժակիս այսմիկ. ապա թէ ոչ՝ արբից զդա. եղիցին կամք քո։ Եւ եկեալ միւսանգամ եգիտ ըզնոսա ի քուն. զի էին աչք իւրեանց ծանրացեալք։ Եթող զնոսա՝ և գնաց. եկաց յաղօթս երրորդ անգամ. և դարձեալ զնոյն բան ասաց։ Յայնժամ գայ առ աշակերտսն՝ և ասէ ցնոսա. Ննջեցէք այսուհետև՝ և հանգերո՛ւք. զի ահա հասեալ է ժամ. և որդի մարդոյ մատնի ի ձեռս մեղաւորաց։ Արի՛ք երթիցուք աստի. զի ահաւասիկ եհաս՝ որ մատնելոց է զիս։ Եւ մինչդեռ նա զայն խօսէր՝ ահա Յուդաս մի յերկոտասանիցն եկն. և ընդ նմա ամբոխ բազում սրօք՝ և բրօք, ի քահանայապետիցն և ի ծերոց ժողովրդեանն։ Եւ որ մատնելոցն էր զնա՝ ետ նոցա նշան և ասէ. ընդ որում ես համբուրեցից՝ նա է, զնա ունիցիք։ Եւ վաղվաղակի մատուցեալ առ Յիսուս՝ ասէ. ո՛ղջ եր վարդապետ. և համբուրեաց ընդ նմա։ Եւ Յիսուս ասէ ցնա. ընկեր, վասն որո՞յ եկիր. յայնժամ մատուցեալ արկին ձեռս ի Յիսուս. և կալան զնա։ Եւ ահա մի ոմն յայնցանէ՝ որք էին ընդ Յիսուսի, ձգեաց զձեռն, և եհան զսուր իւր՝ և եհար զծառայ քահանայապետին՝ և ի բաց եհան զունկն նորա։ Յայնժամ ասէ ցնա Յիսուս. դարձո՛ զսուր քո ի տեղի իւր. զի ամենեքեան՝ որք զսուր առնուցուն՝ սրով անկանիցին։ Թէ համարիցիս՝ թէ ո՞չ կարեմ աղաչել զՀայր իմ. և հասուցանիցէ ինձ այսր՝ աւելի քան զերկոտասան գունդս հրեշտակաց։

Այլ զիա՞րդ լնանիցին գիրք՝ թէ այսպէս պարտ է լինիլ։ Յայնժամ ասաց Յիսուս ցամբոխն. իբրև ի վերայ աւազակի ելէք սուսերօք՝ և բրօք ունել զիս. հանապազ առ ձեզ ի տաճարին նստէի և ուսուցանէի. և ոչ կալայք զիս։ Այլ այս ամենայն եղև՝ զի լցցին գիրք մարգարէիցն. յայնժամ աշակերտքն ամենեքին թողին զնա և փախեան։

Աղօթք հանդերձ ծունր դնելով զտէր աղաչեսցուք։
Տէր ողորմեա։ (Երիցս կրկնեա։)
Եւ ես խաղաղութեան"։ Օրհնութիւն և փառք"։

Հինգերորդ փոխ. Սաղմոս Ճը։

Աստուած օրհնութեան իմոյ մի՛ լռեր, զի բերան մեղաւորի բերան նենգաւորի բացաւ ի վերայ իմ։

Խօսեցան զինէն լեզուաւ նենգաւորաւ, և բանիւ ատելութեան պաշարեցին զիս։

Մարտեան ընդ իս ի տարապարտուց, փոխանակ սիրոյ իմոյ մատնէին զիս, այլ ես յաղօթս կայի։

Հատուցին ինձ չար փոխանակ ընդ բարւոյ, ատելութիւն փոխանակ սիրոյ իմոյ։

Կացո՛ ի վերայ նորա մեղաւոր, սատանայ կացցէ ընդ աջմէ նորա։

Ի դատաստանէ իւրմէ ելցէ դատապարտեալ, և աղօթք նորա ի մեղս դարձցին։

Եղիցին աւուրք նորա նուազ, և զայցելութիւն նորա զայն այլ տարցէ։

Եղիցին որդիք նորա որբ և կին նորա այրի. տա-
հեսցին փոփոխեսցին, որդիք նորա մուրօղք եղիցին,
և ելցեն ի բնակութենէ իւրեանց։

Քննեսցէ փոխատու զամենայն ինչս նորա, և յա-
փշտակեսցեն օտարք զվաստակս նորա։

Մի՛ գտցի օգնական նմա, և մի՛ ոք ողորմեսցի ի
վերայ որբոց նորա։

Եղիցին որդիք նորա ի սատակումն, և յազգէ ջըն-
ջեսցի անուն նորա։

Յիշեսցին մեղք հօր նորա առաջի տեառն, և մեղք
մօր նորա մի՛ ջնջեսցին, և եղիցին առաջի տեառն
յամենայն ժամ։

Սատակեսցի յերկրէ յիշատակ նորա. փոխանակ զի
ոչ յիշեաց առնել ողորմութիւն։

Հալածեաց զայր աղքատ և զտնանկ, սպանանել
զայն որ խոնարհ է սրտիւ։

Սիրեաց զանէծս և ելցէ նմա. ոչ կամեցաւ զօրհ-
նութիւն, հեռի եղիցի ի նմանէ։

Զգեցաւ զանէծս որպէս հանդերձ, մտցէ որպէս
ջուր ի փոր նորա, և որպէս ձէթ ընդ ոսկերս նո-
րա։

Եղիցի նմա որպէս հանդերձ զի ագանի, որպէս
գօտի որ ածի հանապազ ընդ մէջ։

Այս գործ է այնոցիկ՝ ոյք չարախօս կային զինէն
առ տէր, և ոյք խօսէին չար զանձնէ իմմէ։

Այլ դու տէր տէր՝ արա՛ ընդ իս ըստ անուան քում,

զի քաղցր է ողորմութիւն քո, և փրկեա զիս զի աղքատ և տնանկ եմ ես։

Սիրտ իմ խռովեցաւ ի փորի իմում, և ես որպէս ստուեր ի խոնարհիլ իմում պակասեցայ, և թօթափեցայ որպէս մարախ։

Ծունկք իմ տկարացան ի պահոց, և մարմին իմ այլագունեցաւ յիւղոյ։

Եղէ ես նախատ նոցա, տեսին զիս և շարժեցին զգլուխս իւրեանց։

Օգնեա ինձ տէր Աստուած իմ, և փրկեա զիս ըստ ողորմութեան քում։

Ծանիցեն զի ձեռն քո այս է, և դու տէր արարեր զայս։

Նոքա անիծանեն և դու օրհնեսցես. որք յարուցեալ են ի վերայ իմ զամօթ կրեսցեն. այլ ծառայ քո ուրախ եղիցի ի քեզ։

Զգեցցին զամօթ որք չարախօս կային զանձնէ իմմէ, և արկցեն որպէս կրկնոց զամօթ իւրեանց զիւրեամբք։

Այլ ես խոստովան եղէց առ տէր յոյժ բերանով իմով, և ի մէջ բազմաց օրհնեցից զքեզ։

Զի եկաց նա ընդ աջմէ տնանկին, ի փրկել զիս յայնցանէ՝ որք հալածեն զանձն իմ։

Սաղմոս ՃԹ.

Ասաց տէր ցտէր իմ նիստ ընդ աջմէ իմմէ, մինչև եղից զթշնամիս քո պատուանդան ոտից քոց։

Գաւազան զօրութեան առաքեսցէ քեզ տէր ի Սիօնէ, և տիրեսցես դու ի մէջ թշնամեաց քոց։

Ընդ քեզ է սկիզբն աւուր զօրութեան. ի վայելչութիւն սրբոց քոց յարգանդէ յառաջ քան զարուսեակ ծնայ զքեզ։

Երդուաւ տէր և ոչ եւս զղջասցի, թէ դու ես քահանայ յաւիտեան ըստ կարգին Մելքիսեդեկի, և տէր ընդ աջմէ քումմէ։

Խորտակեսցէ յաւուր բարկութեան զթագաւորս. դատէ զհեթանոսս և բազում առնէ զհարուածս, և խորտակեսցէ զգլուխս բազմաց յերկրի։

Ջուրս ի ճանապարհի արբուսցէ. վասն այսորիկ և բարձր արասցէ զգլուխս։

Սաղմոս ՃԺ։

Խոստովան եղէց քեզ տէր բոլորով սրտիւ իմով, ի խորհուրդս ուղղոց ի ժողովուրդս մեծ են գործք տեառն, և քննեալ են յամենայնի կամս նորա։

Խոստովանութիւն և վայելչութիւն են գործք նորա. արդարութիւն նորա մնայ յաւիտեանս յաւիտենից։

Յիշատակ արար սքանչելեաց իւրոց ուղղոց. ողորմած գթած է տէր, կերակուր տայ երկիւղածաց իւրոց։

Յիշեաց յաւիտենից զուխտ իւր, զզօրութիւն գործոց իւրոց պատուիրեաց ժողովրդեան իւրում։

Տալ նոցա զժառանգութիւն հեթանոսաց, և գործք ձեռաց նորա արդարութիւն և իրաւունք են։

Հաւատարիմ են յամենայնի պատուիրանք նորա, հաստատեալ են յաւիտեանս յաւիտենից, արարեալ են ճշմարտութեամբ և ուղղութեամբ։

Փրկութիւն առաքեաց տէր ժողովրդեան իւրում. պատուիրեաց յաւիտենից զուխտ իւր, սուրբ և ահեղ է անուն նորա։

Սկիզբն զգօնութեան երկիւղ տեառն, իմաստութիւն բարի ամենեցուն որք առնեն զնա, և օրհնութիւն նորա մնայ յաւիտեանս յաւիտենից։

Կցորդ՝ Ձայնիւ։

Խօսե՝ցա՛ն զինէն լեզուաւ նենգա՛ւո՞րա՜ւ. և բանիւ ա՛տելութեա՜ն զիս պաշարե՛ցի՜ն։

Զա՞ր կապանա՜ց մարդկան լո՛ւծիչ որ կապե՛ցար ընդ կապելո՝ցն. զիս արձակեա յինքնա՛կապէ՝ս մե՛ղաց կապից դը՛ժոխայնո՝յն. ո՛ր ընդ մեղօ՞ք պարտաւո՛րին կացեր անմե՛ղդ ի յատենի. յորժամ փառօք գաս հա՛յրենի մի՛ դա՛տեսցես զիս ը՛նդ նոսի՜ն։

Գա՞տկառանօ՜ք հինն Ադա՛մայ որ ձաղե՛ցար վասըն նորա՝. ջընջեա զամօթ մե՝ղա՛ց լըրբին որով գերեաս իմ ծածկե՝ցին. որ ներեցե՞ր չար ծառա՛յին ածել ձեռօ՛ք քեզ ապտակին. հար ուժգնակի զդէ՛մըս չարին որպէ՛ս և զիս եհա՛ր ուժգի՜ն։

Զա՞հըն լուսո՜յ յառա՝ւօ՛տին ի յուրբա՛թուն հընոյ զատկին. կայր առաջի դա՝տա՛ւորին ծառայն նը՝ստէ՛ր ի յատենին. ի՛ հարցանե՞լ Պիղա՝տոսի տէրն ոչ ա՛ռնէ՛ր պատասխանի. զի կանխաւաց գիրը՛ն

Լըցցի ե՝ղէ՛ ես մա՝րդ որ ոչ խօսի՜ ։

Ռա՞մկակա՜ն դասք զինուորա՝ցն արկին հա՛նգե՝րձ նախատանա՝ց. այնմ որոյ զգեստն է՝ լոյս փառաց էբրև՝ զօ՛թոց զինքեա՛մբ արկա՝ծ. ի՛ ծունր իջեա՞լ կատա՝կէ՛ին զգլուխն եղե՝գա՛մբ հարկանէին. պըսակ ի փշոց բոլորէ՝ին՛ ը՝զփուշ մեղացըն բա՛րձողի՜ն ։

Սո՞սկալի՜ն քերովբէ՛ից բառնալը ինքեա՛մբ ը՝զփա՛յտ խաչին. մինչ ի տեղի Գողգոթային յորում եդեալ մա՛րդն առաջին. ե՛տուն ըմպե՞լ գինի զմը՛ռսեա՝լ և կերա՝կուր լեղեաւ խառնեալ. որով զպըտղոյն դա՝ռը՛ն ճաշա՝կ փոխեա՛ց մեզ քաղցր և ա՛խորժա՜կ ։

Վե՞րնակա՜նքըն զա՝րհո՛ւրեա՝լ տեսին ը՝զտէ՛րըն մերկացեա՝լ. և զհանդերձսըն բա՛ժանեա՝լ պա՝տմո՛ւճանին վի՛ճակ արկեա՝լ. ը՛զձեռսն և զո՞տսն ծ՝ակե՛ցին ըստ յայտնա՝պէ՛ս Դաւթեան ձա՝յնին. ընդ փա՛յտ խաչին բե՝ւե՛ռեցին զմա՝տո՛ւնսն որք գրեաց ի տա՛խտակի՜ն ։

Ձձնէ՝ Ո՞ղթիւ ։

Սրբոյ աւետարանիս Յիսուսի Քրիստոսի՝ որ ըստ Մատթէոսի ։

Գլ՝ 26. հմր՝ 57 ։

Վասն Զարչարանաց Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի ։

Իսկ նոցա կալեալ զՅիսուս ածին առ Կայիափայ քահանայապետ՝ ուր դպիրք և ծերք ժողովեալ էին ։ Եւ Պետրոս զհետ նորա երթայր բացագոյն մինչև ի

որահ քահանայապետին. և մտեալ ի ներքս նստէր ընդ սպասաւորսն տեսանել զկատարածն։ Իսկ քահանայապետն՝ և ամենայն ատեանն խնդրէին սուտ վկայութիւն զՅիսուսէ. զի սպանցեն զնա։ Եւ ոչ գտանէին ի բազմաց սուտ վկայիցն մատուցելոց. յետոյ մատուցեալ երկու սուտ վկայք։ Ասէին թէ, սա ասէր՝ կարող եմ քակել զտաճարն Աստուծոյ. և զերիս աւուրս շինել։ Եւ յարուցեալ քահանայապետըն ասէ ցնա. չտա՞ս ինչ պատասխանի. զի՞նչ դոքա ամբաստանեն զքէն։ Եւ Յիսուս՝ լուռ կայր. պատասխանի ետ քահանայապետն և ասէ ցնա. երդմընեցուցանեմ զքեզ յԱստուած կենդանի. զի ասասցես մեզ՝ թէ դո՞ւ ես Քրիստոսն Որդի Աստուծոյ։ Ասէ ցնա Յիսուս. դու ասացեր. բայց ասեմ ձեզ. յայսմհետէ տեսանիցէք զՈրդի մարդոյ նստեալ ընդ աջմէ զօրութեանն՝ և եկեալ ընդ ամպս երկնից։ Յայնժամ քահանայապետն պատառեաց զհանդերձս իւր, և ասէ. հայհոյեաց. զի՞ ևս պիտոյ են մեզ վկայք. ահա արդ լուայք զհայհոյութիւն նորա։ Զի՞նչ հաճոյ է ձեզ. նոքա պատասխանի ետուն և ասեն. մահապարտ է։ Յայնժամ թքին ընդ երեսս նորա. և կռուփեցին զնա. և ոմանք ապտակեցին, և ասեն. Մարգարէա՛ց մեզ Քրիստոսդ՝ ո՞վ է՝ որ եհարն զքեզ։ Իսկ Պետրոս նստէր արտաքոյ ի գաւթին. մատեաւ առ նա աղախին մի, և ասէ. և դու ընդ Յիսուսի Գալիլեացւոյ էիր։ Նա ուրացաւ առաջի ամենեցուն և ասէ՝ թէ ոչ գիտեմ զինչ խօսիս։ Եւ իբրև ել նա,

արտաքս քան զդուռն. ետես զնա այլ կին մի. և ասէ ցայնոսիկ՝ որք անդն կային. և սա ընդ Յիսուսի Նազովրեցւոյ էր։ Եւ դարձեալ ուրացաւ երդմամբ. թէ ո՛չ գիտեմ զայրն։ Եւ յետ սակաւ միոյ մատուցեալ որք կայինն անդ՝ ասեն ցՊետրոս՝ արդարև և դու ի նոցանէ ես. քանզի և խօսք քո յայտ առնեն զքեզ։ Յայնժամ սկսաւ նզովել և երդնուլ. թէ ո՛չ գիտեմ զայրն. և իսկոյն հաւ խօսեցաւ։ Եւ յիշեաց Պետրոս զբանն Յիսուսի՝ զոր ասաց՝ թէ մինչչև հաւու խօսեալ իցէ՝ երիցս ուրասցիս զիս. և ելեալ արտաքս՝ ելաց դառնապէս։

Աղօթք հանդերձ ծունր դնելով զտէր աղաչեսցուք։
Տէր ողորմեա՛։ (Երիցս կրկնել։)

Եւ ես խաղաղութեան"։ Օրհնութիւն և փառք"։

Վեցերորդ փոխ. Սաղմոս ՃԺԷ։

Խոստովան եղերուք տեառն, զի բարի է, զի յաւիտեան է ողորմութիւն նորա։ (Տես ի Թիւն. 177 :)

Կցորդ՝ ձայնիւ։

Խո՝ստովա՛ն եղե՝րո՛ւք տեա՝ռը՛ն զի բա՛րի՜ է՛, զի յաւի՝տեա՛ն է՝ ո՞ղորմո՛ւթիւն նորա՛։

Տա՛րածեա՜լ ձեռք ը՝նդ ձե՛ռա՝ց ոտք ընդ ոտի՛ց ընթանալեա՝ց. փայտ ընդ փայտի դա՝ռը՛ն պլտո՝յ կեանք ը՛նդ մահու փո՛խարկելո՝վ. ի՛ մէջ երկո՞ւց անօ՝րինա՝ց կա՝յր մերկա՝ցեա՛լ տուո՛ղն օրինա՝ց. զոր ոչ տեսին ա՝զգը՛ն կուրա՝ց բա՝ց ի՛ միոյն յաւա՛զակա՜ց։

Ր°պէ՜ս արե՝գա՛կանն զտիւն տրա՛ր գիշերանման. զը՝ստուե՛րըն քօղ արկ մե՛րկութեա՝ն զի մի՛ տեսցէ ա՛կն անա՝րժան. ի՛ մէջօրեա՝յն նըսեմա՛ցա՝ւ յորժամ Ա՝դա՛մ մեղօք մեռա՛ւ. ի յիններորդն ի՝ լո՛յս դարձաւ յո՝րժա՛մ մահուա՝մբ մա՛հըն լուծա՜ւ։

Ցօ°ղէր արտօ՜սըր ցա՝ւա՛գին մա՝յր տեառն ո՝ր կա՛յր մերձ առ խաչին. յորժամ լըսէր ը՝զծա՛րաւին բարբառե՛լոյ ի՛ւր Միածնին. ետուն քացա՞խ խառնեա՝լ լե՛ղի այնմ որ բը՝ղխեա՛ց զետ յա՛դենի. և ի վիմէն վը՝տա՛կ բարի ա՝րբո՛յց առհմին դա՛ռնացողի՜։

Իւ°ծեալ յերրո՜րդ ժամու՝ օ՛ձին զմիտըս նախնւո՛յ մօրն Եւայի. ի վերջն անկեալ մա՝րդն ա՛ռա՝ջին հա՝ւա՛նական բա՛նիւ նորին. ի՛ սոյն ժամո՞ւ տէրն ի խա՛չին զի քաւե՝սցէ՛ զմեղըս նոցին. և յորժամ ե՛լ Ա՝դա՛մըն հետն ե՝դ զա՛ւազակն ի մէ՛ջ դրախտի՜ն։

Փա°րեալ՜ բարբա՛ռ ընդ իմ է՛լի է՛լի առ Հայր գոչէ՝ր. զհոգին կամաւ Հօ՝ր ա՛ւանդէ՝ր զհո՝գի՛ս մարդկան նո՛յն ընծայէ՝ր. ե՛րկիր հիմա՞մբք սասանե՛ցա՝ւ և վարագո՛յրն ընդ մէջ հերձա՝ւ. վէմք ի յինքեանց պա՝տա՛ռեցան և՝ գե՛րեզմանք մա՝հո՛ւ բացա՜ն։

Քա°րոզի՜ ի սքանչե՛լեա՝ցս Աստուած մա՝րմնո՛վ վասն իմ խաչեա՝լ. մերով բնութեամբը՝ս մե՛ռանի Աստուած ա՛նմահ խո՛ստովանի. կը՛րկնավըտա՞կ կո՛ղին ա՛ղբե՝րբք եկեղե՝ցի՛ իւր հաստատի. ջրովըն մաքրի զա՝րի՛ւնն ըմպէ՝ զՈ՝րդի՛ ընդ Հօր փառա՛ւորէ՜։

Ձայն՝ Օ՜րհն.

(Զայս Աւետարանս ի բեմն ընթեռնուցուն։)

Սրբոյ աւետարանին Յիսուսի Քրիստոսի՝ որ ըստ Յոհաննու։

Գլ՝ 18. համր՝ 2։

Վասն Մատնութեան Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի։

Գիտէր և Յուդա, որ զնա մատնելոց էր՝ զտեղին. զի բազում անգամ ժողովեալ էր անդր Յիսուսի աշակերտօքն հանդերձ։ Եւ Յուդայի առեալ ընդ իւր զգունդն, և ի քահանայապետիցն և ի փարիսեցւոցն սպասաւորս, գայ անդր ջահիւք՝ և լապտերօք՝ և զինուք։ Իսկ Յիսուս իբրև ետես զայն ամենայն եկեալ ի վերայ նորա, ել և ասէ ցնոսա. զո՞ խնդրէք։ Պատասխանի ետուն նմա, զՅիսուս Նազովրեցի. ասէ ցնոսա Յիսուս, ես եմ. կայր ընդ նոսա և Յուդա՝ որ մատնէրն զնա։ Իբրև ասաց՝ թէ ես եմ, յետս յետս չոգան՝ և զարկան զգետնի։ Դարձեալ եհարց զնոսա. զո՞ խնդրէք. նոքա ասեն, զՅիսուս Նազովրեցի։ Պատասխանի ետ նոցա Յիսուս. ասացի ձեզ թէ ես եմ. արդ՝ եթէ զիս խնդրէք՝ թո՛յլ տուք դոցա երթալ։ Զի լցցի բանն՝ զոր ասաց. թէ զոր՝ ետուր ցիս՝ ո՛չ կորուսից ի նոցանէ՝ և ո՛չ զոք։ Իսկ Սիմոն Պետրոս քանզի ունէր սուր, ձգեաց զնա. և եհար զքահանայապետին ծառայ՝ և ի բաց եհատ զունկն նորա զաջոյ. և էր անուն ծառային Մաղքոս։

Ասէ Յիսուս ցՊետրոս. արկ զսուրդ անդրէն ի պատեանս իւր. զբաժակն, զոր ետ ինձ Հայր՝ ո՞չ ըմպիցեմ զնա։ Իսկ գունդն, և հազարապետն, և սպասաւորքն Հրէից կալան զՅիսուս՝ և կապեցին։ Եւ ածին զնա նախ առ Աննա՝ որ էր աներ Կայիափայի. որ քահանայապետն էր տարւոյն այնորիկ։ Այս այն Կայիափայ էր՝ որ խրատն ետ Հրէից, թէ լաւ է առն միում մեռանել ի վերայ ժողովրդեանն։ Եւ երթային զհետ նորա Սիմոն Պետրոս՝ և միւս աշակերտն. և աշակերտն այն՝ քանզի ծանօթ էր քահանայապետին՝ եմուտ ընդ Յիսուսի ի գաւիթ քահանայապետին։ Եւ Պետրոս կայր առ դրանն արտաքոյ. ել միւս աշակերտն՝ որ էր ծանօթ քահանայապետին՝ և ասաց ցդռնապանն՝ և եմոյծ ի ներքս զՊետրոս։ Ասէ աղջիկն՝ որ դռնապանն էր, ցՊետրոս. մի թէ և դու յաշակերտաց առնն այնորիկ իցես. և նա ասէ՝ ո՛չ եմ։ Կային անդ ծառայքն և սպասաւորք խարոյկ արկեալ՝ քանզի ցուրտ էր՝ և ջեռնուին. կայր ընդ նոսա և Պետրոս՝ և ջեռնոյր։ Եւ քահանայապետն եհարց զՅիսուս՝ վասն աշակերտացն՝ և վասն վարդապետութեան նորա։ Պատասխանի ետ նմա Յիսուս. ես յայտնապէս խօսեցայ աշխարհի. ես յամենայն ժամ ուսուցի ի ժողովրդեանն. և ի տաճարի անդ՝ ուր ամենայն Հրէայքն ժողովեալ էին. և ի ծածուկ ինչ ո՛չ խօսեցայ։ Զի՞ հարցանես զիս. հա՛րց զայնոսիկ՝ որք լուանն, եթէ զի՞նչ ասացի ցնոսա. ահաւանիկ նոքա գիտեն զինչ ասացի ես։ Իբրև նա

զայս ասաց, մի ոմն ի սպասաւորացն՝ որ անդ կայր, եհած ապտակ Յիսուսի՝ և ասէ. ա՞յդպէս պատասխանի տաս քահանայապետիդ: Եւ Յիսուս ասէ ցնա. եթէ չար ինչ խօսեցայ՝ վկայեա վասն չարին. իսկ եթէ բարի, ընդէ՞ր հարկանես զիս: Եւ առաքեաց զնա Աննա կապեալ առ Կայիափայ քահանայապետ: Եւ Սիմոն Պետրոս կայր անդ՝ և ջեռնոյր. ասեն ցնա. մի՞թէ և դու յաշակերտաց անտի նորա իցես. նա ուրացաւ և ասէ՝ թէ չեմ: Եւ ասէ մի ոմն ի ծառայից քահանայապետին՝ ազգական այնորիկ, զորոյ զունկն եհատ Պետրոս. ո՞չ ես իսկ տեսի զքեզ ի պարտիզի անդ ընդ նմա: Դարձեալ ուրացաւ Պետրոս. և վաղվաղակի հաւ խօսեցաւ:

Եւ ապա մաղթանք՝ Հոգւոցն": Քարոզ՝ Վասն հանգուցեալ": Աղօթք՝ Քրիստոս Որդի Աստուծ":
(Տես ի Թիւն. 36:)

Կանոնագլուխ ԴՁ: Ողբաձայն:

Իշխանք հալածեցին զիս ի նանիր. ա՛լէՁլո՜ու-իա՜. և ի բանից քոց երկեաւ սիրտ իմ. ա՛լէՁլո՜ու-իա՜:

- Ցնծացայ ես ի բանս քո, որպէս այն՝ որ գտանէ աւար բազում:

Զմեղս ատեցի և անարգեցի, և զօրէնս քո սիրեցի:

Եօթն անգամ յաւուր օրհնեցից զքեզ, վասն իրաւանց և արդարութեան քո:

Խաղաղութիւն բազում է այնոցիկ, ովք սիրեն զօ-

րէնս քո, և ոչ գոյ ի նոսա գայթակղութիւն ։

Սպասեցի փրկութեան քում տէր, և զպատուիրանս քո սիրեցի ։

Պահեաց անձն իմ զվկայութիւնս քո, և սիրեաց զնոսա յոյժ ։

Պահեցից զպատուիրանս՝ և զվկայութիւնս քո. զի ամենայն ճանապարհք իմ առաջի քո են ։

Մերձեսցին խնդրուածք իմ առաջի քո տէր. ըստ բանի քում իմաստուն արա զիս ։

Մտցեն աղօթք իմ առաջի քո տէր. և բանիւ քո փրկեա զիս ։

Բղխեսցեն շրթունք իմ զօրհնութիւնս քո, յորժամ ուսուսցես ինձ զարդարութիւնս քո ։

Խօսեսցի լեզու իմ զբանս քո. զի ամենայն պատուիրանք քո արդարութեամբ են ։

Եղիցի ձեռն քո ի կեցուցանել զիս. զի զպատուիրանս քո ընտրեցի ։

Ցանկացայ փրկութեան քում տէր. և օրէնք քո խօսք իմ էին ։

Կեցցէ անձն իմ, օրհնեսցէ զքեզ. և իրաւունք քո օգնեսցեն ինձ ։

Մոլորեցայ ես որպէս զոչխար կորուսեալ. խնդրեա զծառայս քո, զի զպատուիրանս քո ես ոչ մոռացայ ։

Փառք Հօր և"։ Այժմ և միշտ"։ ա՛լէ՝. ա՛լէ՝ ։

Ձկնէ Քարոզ

Եւ ես խաղաղութեան"։ Օրհնութիւն և փառք"։

հո՛ք քո զարդարեաց. մա՜քրեա՛"։

Թա՛գաւոր անմա՟հ արարի՛չ յաւիտենի՜ց, մար-դասիրութեամբըդ քո՟ խնայեա յա՛նձինս մեր. ստեղծի՛չ կենդա՛նեաց և հա՛նդուցի՜չ ննջեցելո՜ց. Ի՛ խաչին բեւեռե՛ցար զմահու լուծե՛ր զիշխանու-թիւն. յա՛ւիտենից զննջե՛ցեալսն վերածեր յա՛ն-մահ ի կեանս. ստե՛ղծի՛չ"։ Ա՛րժանաւորաց քոց աղօթիւք յիշեա զմե՛ք զննջե՛ցեալսն; յորժամ գայցե՛ս անձա՜ռ փառօք հատուցանել մա՛րդկան ըստ գործս. և՜ մեր ննջեցելոցն շնորհեա՛ գասի՜լ ը՛նդ սուրբըս քո՜։

Ըզքե՜զ կոյս և մա՛յր և բնակա՛րան Աստուա՛-ծային ներմարդո՛ւթեանն, գոհա՛բանեմք և վերօ՛րհ-նեմք զեղեալ փը՛րկող կենդա՛նութեան ազգի մարդ-կա՛ն. վասն որո՛յ ըզքեզ Աստա՛ծածին և կո՛յս՝ բա՜-րեբանեմք ըզմա՛յր և զաղախին փրկչի՜ն մե՟րո՜յ. Ծընո՛ւնդըն Հօր և հին ա՛ւուրց անժա՟մանակն յաւի-տենի՛ց. ժամանակա՛ւ յորովայնի՛ քում բնա՟կեցաւ և ի՛ Հօրէ ո՛չ մեկնեցաւ. վասն որոյ"։ Ծնեա՛լն ի քէն ի խաչ ե՛լեալ, ե՛ւ ի յաթոռ փառա՛ց ընդ Հօ՜ր. անարգեա՛լ ի մարդկանէ, փառա՛ւորութեա՟մբ էու-թեա՛մբ երկը՛րպագեալ. վասն որոյ"։ Ըզքե՜զ ոչ միա՛յն որդիք մարդկա՛ն, այլեւ վե՛րի՟ն զօրութիւնք.

Դա՛սք անմարմնոց հոգեղինա՞ց հրեղինա՞ց զօ՛ւարթ-նոց և հրե՛շտակաց, զօ՜հաբանե՛ն և վերօրհնե՛ն և փա՛ռաւորեն ըզմայր և զաղա՛խին փըրկչի՜ն մե՞-րո՜յ։

Ա՛պաւինեցաք ի խա՛չ քո՞ արարի՛չ յաւիտենի՜ց, որ ետո՛ւր մեզ պահա՛պան յա՛ղթօղ ընդդէ՛մ թըշ-նամւոյն. ա՛ղաչե՛մք սովաւ փը՛րկի՞չ պահպանեա՞ զանձինըս մե՜ր։ Բա՛րձրեա՜լ թագա՛ւոր ո՛ր վասըն մե՛ր ելեր ի խա՜չ, և՛ բարձեր սովաւ զյա՛նցանս նախաստե՛ղծի՛ն Ա՛դամայ. ա՛ղա”։ Գլո՛ւխ սո՛ւրբ հաւատոյ և փա՛յտ կենա՛ց մարդկան յայտնեա՜լ. զօ՛ր տեսեա՛լ այսոյն պը՛ղծոյ կործանեցաւ ա՛նկանգնելի. ա՛ղա”։ Դո՛ղացա՜ւ թըշնա՛մի՞ն ընդ յայտնի՛լ սըր-բոյ խաչին, և՛ ի յահէ՛ փառաց նո՛րա կործանեցաւ յա՛նդունդս երկրի. ա՛ղա”։ Ե՛րկինըք ցընծա՛յի՞ն և երկի՛րս ուրախանայր, քա՛նզի փըրկի՛չ ցուցաւ սո՛ւրբ խաչն և լո՛ւսատու տի՛եզերաց. ա՛ղա”։

Փառք Հօ՜ր եւ Որդւո՜յ եւ Հոգւոյն Սըրբոյ.

Ի՛սկ անօրէն աշակե՛րտին թողեալ ըզգո՛ւթ սիրոյ նորա՜, և փութա՛յր ա՞ռ քահա՛նայսն. ասէր ի՛նձ զի՞նչ կամի՛ք տալ, զի մա՛տնեցի՞ց ըզվա՛րդա-պե՜տն։

Այժմ եւ մի՜շտ եւ յաւիտեանս յաւիտենից. ամէն:

Ժո՛ղովեա՜լ Հըրէ՛կըցըն կըրչաւեցի՛ն արծաթ բազում. տուեալ տարա՛ն առ Պիղատոս, ասեն ի՛ խա՛չ հա՛ն ի խաչ. զի հա՛յհոյի՞չ է՛ օրինա՜ց:

МАՂԹԱՆՔ

Փառք հրաշափառ չարչարանաց": (Տես ի Թիւն. 42:)

Քարոզ՝ Վասն զատնելոյ": Աղօթք՝ Գոհանամք զքէն": (Տես ի Թիւն. 191:)

Ալէլուիա. ալէլուիա. ալէ՞լուիա:

Զարթեա՜ւ աղեղն քո, զնետս կապարճից քոց արբեցուցեր. զգետս ցրուեցեր. զերկիր դողացուցեր ի սաստկութենէ անձրևի, որք անցանեն ընդ սա: Անդո՜ւնդք աղաղակեցին մեծապէս. լոյս փայլման արեգականն արգելաւ. և ծագումն լուսնին դադա՞-րեցա՜ւ:

Ալէ. Մատնեցա՜յ և ոչ ելանէի. աչք իմ տկարացան յաղքատո՞ւթենէ: Աղաղակեցի՜ առ տէր զօր-հանապազ. և համբարձի առ քեզ ը՞զձեռս ի՜մ:

Փա՜ռք և եր". Ա՜յժմ և միշտ և":

Ալէլուիա. ալէ՛լուիա. ալէլո՛ւիա՜:

Մաղթանք՝ Գոհութեամբ և ճշմարիտ": (Տես ի Թիւն. 192:)

Կարգաւորութիւն հասարակաց աղօթից առաւօտու ժամուն ։ Որ կատարի ի գէմս Որդւոյն Աստուծոյ. որ երեւեցաւ իւղաբերիցն ։

---

Օրհնեալ Տէր մեր Յիսուս Քրիստոս. ամէն ։
Հայր մեր որ յերկինս ես" ։

Լցաք առաւօտու ողորմութեամբ քով. ցնծացաք և ուրախ եղաք զամենայն աւուրս կենաց մերոց ։
Ուրախ եղաք փոխանակ ։ (Տես ի Թիւն. 46 ։)

ՀԱՐՑ ԳՁ

Իջեր յերկնից անըսկիզբն որդի. ի հողեղէն ի բնութենէ մարդկան զչարչարանըս յանձն առեր. օրհնեմք ըզքեզ ո՜վ էիր յառաջ քան զամենայն յաւիտեան ։ Որ առաքեր բանիւ լինել ամենայն երկրի, ի յերկրի յառնել կացեալ տեսանելի արարածք. օրհն" ։ Յորմէ դողան զըւարթունք երկնից, այսօր եկիր կամաւ ի խաչ գերեզմանըն խոցեցար. օրհն" ։

Գ. Ըզտէր օրհնեցէք բարձր արարէք յաւիտեան ։

Փառք Հօր եւ Որդւոյ եւ Հոգւոյն Սրբոյ ։

Եւ զինուորըն գերեզմանըն յարձակեալ, խոցեալ զկող կենարարին. բարձր" ։

Այժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւիտենից. ամէն ։

Ուստի աղբիւր կենդանարար բըղխեալ, լըւաց

դտիճ՛գերս ի մե՜ղաց . բարձր" :

ՔԱՐՈԶ

Եկեալքս ամենեքեան ի սուրբ" : (Տես ի Թիւն 52 :)

Մեծացուսցէ ԳՁ

Լո՛յս լուսո՛յ մայր, և կենարա՛ր բանին բնա՛կարա՜ն. քեզ երանի՛ցեն ա՜զգ. և ազի՛նք ամենա՜յն : Սաեղծո՛ղի՜ն մայր, և հը՛նութեան կե՛րպի նորո՛գո՜ղին. քեզ" :

Փառք Հօր եւ". Այժմ եւ միշտ" :

Լո՜յս ծագե՛ցաւ ի քէն, նըստե՛լոցս ի խաւա՜րի. քեզ" :

Քարոզ՝ Սուրբ զԱստուած : Աղօթք՝ Ընկալ տէր" : (Տես ի Թիւն. 55 :)

Ողորմեա ԳՁ

Եկեա՛լ ի փրրկութիւն ա՛զգի՜ մարդկան, ի ծառա՛յէ՝ յա՛նձն առնու մատնիլ ի՛ դատաստան. համբե՛րելո՜վ վասն ը՛զմե՜զ կե՛ցուցանե՜լ : Մատնեա՛լ Պիղատո՛սի որպէս մա՛հապարտ, ի յԱննայէ՛ և ի Կայի՛ափայ դատա՛պարտեալ. համբե՛" :

Փառք Հօր եւ". Այժմ եւ միշտ" :

Կացեա՛լ ի յատենի ե՛րկրո՛րդ Ադամ վա՛սն առաջի՛նն Ա՛դամայ պա՛րտեացը՛ն թողութեան. համբե՛" :

ՔԱՐՈԶ

Երկրպագեմք"։ (Տես ի Թիւն․ 58։)

Տէր յերկնից Գ Զ

Ո՛վ ըսքա՛նչելի՚ և տեսի՛լ ահաւոր, զարարի՛չն երկնի և երկրի՜ այսօ՜ր տեսա՛ք ի խաչի՜։ Տե՛սեա՜լ ըզտէ՛րն ի խաչին խաւարեցա՛ւ արեգակն․ և վարագո՛յր տաճարի՜ն ցելո՜յր վերուստ մի՛նչ ի վա՜յր։

Փառք Հօր եւ"․ Այժմ եւ միշտ":

Ա՛նա՜րգարա՛ր խաչեցաւ տէ՛րն ի մէ՜ջ ի յա՛նօրինաց․ զի լըցցի՛ զի՜րն որ ասէ՜, թէ ը՞նդ ա՛նօրէնս համա՞րե՜ցա՜ւ։

*Իսկ յորժամ է Տէր յերկնից շարականն հասանիցի, Թագուսցեն զմի մեծ մնացեալ մոմեղէնն, մինչև վճարեսցի Փառք ի բարձունսն, և ապա հանցեն։*

Փառք ի բարձունս՝ (Տես ի Թիւն․ 61։)

ԿՐԳ

Մատնեցայ և ոչ ելանէի․ աչք իմ տկարացան յաղքատութե՞նէ՜։

Աղաղակեցի առ տէր զօրհանապա՛զ․ և համբարձի առ քեզ զձե՜ռս իմ։

*Քարոզ՝ Փառաւորեսցուք․ Աղօթք՝ Գոհանամք․ Սուրբ Աստուած՝ որ Մատնեցար․ և այլն․ ցՄանկունքի Շարականն (Տես է 63 էն ց66 էջն։)*

Մանկունք. ԲՁ

Ո՛ր թագաւորդ ես թագա՛ւորաց Քրի՛ստոս, ի ծառայէ՛ դատապարտեալ համբերեցե՛ր վասն մեր. Ե՛րկա՞յնամի՞տ տէ՜ր քե՞զ փա՜ռք: Ո՛ր պատուական խաչի՛ւրդ քո Քրի՛ստոս և սուրբ արեա՛մբդ քո հեղմամբ կեցուցանել ըզմե՛զ կամեցար. Ե՛րկա՞յ":

Փառք Հօր. եւ". Այժմ. եւ միշտ":

Ո՛ր մարդասի՛րապէ՜ս վասն ամենեցո՛ւն ամենայնի՛ համբերեցեր, և՛ ի մահու զմա՛հ կոխեցեր. Ե՛րկա՞յ":

Քարոզ՝ Վասն խաղաղութեան: Աղօթք՝ Սուրբ ես տէր. (Տես ի թիւն. 67 :)

Եւ ապա ասէ սառղոզէ. Սաղմոս Ճը:

Կ8. Փոխանակ սիրոյ իմոյ մատնէին զիս, այլ ես յաղօթս կայի:

Փխ. Աստուած օրհնութեան իմոյ մի՛ լռեր, զի բերան մեղաւորի": (Տես ի թիւն. 441 :)

Ձկնի՝ Ալէլուիա օ՜րթի:

Սրբոյ աւետարանիս Յիսուսի Քրիստոսի որ ըստ Յօհաննու:

Գլ՝ 18. համր 28:

Վասն Չարչարանաց Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի:

Եւ ածեն զՅիսուս ի վանաց Կայիափայ յապարանսն դատաւորին. և էր այգուց. և նոքա ոչ մտին

յապարանան զի մի՛ պղծեսցին․ այլ զի ուտիցեն զզատիկն։ Ել առ նոսա Պիղատոս արտաքս՝ և ասէ․ զի՞նչ չարախօսութիւն մատուցանէք զառնէն զայնմանէ։ Պատասխանի ետուն և ասեն ցնա․ եթէ չէր չարագործ այրն այն, ապա ո՛չ մատնէաք զնա քեզ։ Ասէ ցնոսա Պիղատոս․ առէ՛ք զնա դուք․ և ըստ ձերոց օրինացն դատեցէ՛ք․ ասեն ցնա Հրէայքն․ մեզ ո՛չ է արժան սպանանել զոք։ Զի լցցի բանն Յիսուսի, զոր ասաց․ նշանակելով՝ թէ որով մահու մեռանելոց իցէ։ Եմուտ միւսանգամ յապարանան Պիղատոս․ կոչեաց զՅիսուս՝ և ասէ ցնա․ դո՛ւ ես թագաւորն Հրէից։ Պատասխանի ետ Յիսուս․ ի քէ՞ն ասես զայդ՝ եթէ այլք ասացին քեզ զինէն։ Պատասխանի ետ Պիղատոս․ միթէ և ես Հրէա՞յ իցեմ․ ազգն քո և քահանայապետք մատնեցին զքեզ ինձ․ զի՞նչ գործ գործեալ է քո։ Պատասխանի ետ Յիսուս․ իմ արքայութիւն չէ՛ յայսմ աշխարհէ․ եթէ յաշխարհէ աստի էր արքայութիւնն իմ, սպասաւորքն իմ մարտնչէին արդեօք՝ զի մի՛ մատնեցայց Հրէից․ բայց արդ թագաւորութիւնն իմ չէ՛ աստի։ Ասէ ցնա Պիղատոս․ ապա թէ այդպէս իցէ, թագաւոր ոմն ես դու․ պատասխանի ետ Յիսուս․ դու ասես՝ թէ թագաւոր իցեմ․ բայց ես յայդ իսկ ծնեալ եմ․ և ի դոյն իսկ եկեալ եմ յաշխարհ, զի վկայեցից ճշմարտութեանըն․ ամենայն որ ի ճշմարտութենէ է՝ լսէ բարբառոյ իմոյ։ Ասէ ցնա Պիղատոս․ զի՞նչ է ճշմարտութիւն․ զայս իբրև ասաց, դարձեալ ել առ Հրէայսն՝

և ասէ ցնոսա. ես՝ և ոչ մի ինչ պատճառս գտանեմ ի նմա։ Բայց է ձեր սովորութիւն, զի մի ոք արձակեցից ձեզ ի զատկիս. արդ՝ կամիք զի արձակեցից ձեզ զԹագաւորն Հրէից։ Աղաղակեցին ամենեքեան՝ և ասացին. մի՛ զդա, այլ զԲարաբբայ. և էր Բարաբբայն այն աւազակ։ Յայնժամ էառ Պիղատոս զՅիսուս՝ և գան եհար։ Եւ զինուորացն արարեալ պսակ ի փշոց՝ եդին ի գլուխ Նորա. և զգեցուցին Նմա զհանդերձ ծիրանի։ Եւ գային առ Նա, և ասէին. ողջ եր արքայ Հրէից. և հանէին Նմա ապտակս։ Ել դարձեալ Պիղատոս արտաքս՝ և ասէ ցնոսա. ահա ածեմ զՆա արտաքս առ ձեզ. զի գիտասջիք թէ ես վնաս ինչ ի Նմա ոչ գտանեմ։ Ել Յիսուս արտաքս. և ունէր պսակ ի փշոց և զհանդերձ ծիրանի. և ասէ ցնոսա. ահա այրդ ցձեզ։ Իբրև տեսին զՆա քահանայապետքն և սպասաւորք, զաղաղակ բարձին՝ և ասեն. ի խաչ հան. ի խաչ հան զդա. ասէ ցնոսա Պիղատոս. առէք զդա ի ձեզ. և ձեզէն հանէք ի խաչ. զի ես ի դմա վնաս ինչ ոչ գտանեմ։ Պատասխանի ետուն Նմա Հրէայքն. մեք օրէնս ունիմք. և ըստ օրինաց մերոց պարտի մեռանիլ. զի զանձն իւր Որդի Աստուծոյ արար։ Իբրև լուաւ ըզբանս զայս Պիղատոս, առաւել ևս երկեաւ։ Եմուտ դարձեալ անդրէն յապարանսն, և ասէ ցՅիսուս. ուստի՞ ես դու. և Յիսուս ոչ ետ Նմա պատասխանի։ Ասէ ցՆա Պիղատոս. ընդէ՞ր ոչ խօսիս. ո՞չ գիտես եթէ իշխանութիւն ունիմ հանել զքեզ ի խաչ. և իշ-

խոնարհութիւն ունիմ արձակել զքեզ։ Պատասխանի ետ Ցիտուս. ոչ ունէիր դու իշխանութիւն ի վերայ իմ, և ոչ մի. եթէ ոչ էր տուեալ քեզ ի վերուստ. վասն այսորիկ որ մատնեաց զիս քեզ, նորա մեծ մեղք են։ Եւ յայնմհետէ Պիղատոս խնդրէր արձակել զնա. և Հրէայքն աղաղակէին, և ասէին. եթէ զդա արձակես՝ չես բարեկամ կայսեր. ամենայն որ թագաւոր կոչէ զանձն իւր, հակառակ է կայսեր։ Իսկ Պիղատոս իբրև լուաւ զբանս զայս, էած զՅիսուս արտաքս. և նստաւ ի վերայ բեմին, ի տեղւոջն որ կոչիւր քարայատակ. և Եբրայեցերէն Կապպաթա. էր ուրբաթն զատկի։ Եւ էր ժամ իբրև վեցերորդ. և ասէ ցՀրէայսն. ահա թագաւոր ձեր ցձեզ։ Եւ նոքա աղաղակէին, բարձ ի մէնջ. բարձ ի մէնջ՝ և հան զդա ի խաչ. ասէ ցնոսա Պիղատոս. ես զթագաւորդ ձեր ի խաչ հանիցեմ. պատասխանի ետուն քահանայապետքն. չիք մեր թագաւոր բաց ի կայսերէ։ Յայնժամ ետ զնա ի ձեռս նոցա, զի ի խաչ ելանիցէ։

## ԵՐԳ

Զըհանդուրժեա՜լ բնութեամբ բարու՞յն ունե՛լ միայն զանճառ բարին. այլ ստեղծեալ զմա՜րդ յիւր պա՛տկերի՞ն ի վեցերորդն առաւօտի՛ն. և ի յերրո՜րդ ժամ զկողածի՞նն ի յօգնո՛ւթիւն ետ հողածնին. զորս ի դրախտի՜ն եդ վայելե՞լ բայց ի պտղոյն մահու ա՞րգե՜լ։

Պապանձեա՜լ առ դա՛տողի՞ն յետ յանցա՛նացն

Աղա՛մըն հին. զկենն պատճա՜ռ եղեա՛լ խաբմա՞նն և կինը՛ն զօձն դա՛ւաճան. որով երկի՜րս այս ա՛նի-ծա՞ւ փուշ և տա՛տասկ ի սմա՛ բուսաւ. վըճիռ մա-հո՜ւ մարդո՛յն տըւա՞ւ դառնալ ի հող ուստի՛ առե՛ղ-ծա՜ւ։

Զնջել փութա՜յր հայրըն փառա՞ց ըզգիր պարտեաց մեր յանցանաց. որով զգեցա՛ւ որդին զը՛թա՞ծ ի վեց դարուն զմարմին մեղաց. Հօր հաճութեա՛մբ ի մահ խաչին եկն կամաւ ի յո՛ւրբաթին. գառն զենա՛ւ ի հին զատկի՞ն փոխան գառանցն օրի՛նա՞կի՛ն։

Ռահիւ լուսո՜յ պատուի՞րանի՞ն արդարութեան ճանապարհին. բարձրանալով քո ի խաչին բարձրա-ցուցեր զմեզ ի յերկինս. քո անպատո՛ւմ խոնարհու-թեա՞մբդ և կամաւոր խաչելութեամբդ. հաշտեաց ընդ մե՛զ տէր զթութեա՛մբ և թող զմեղս ողորմո՛ւ-թեա՛մբ։

Սոսկալի՜դ սերովբէից և ահաւորըդ քրովբէից. խո-նարհեցա՛ր ի չարչարա՞նս չարչարելի բնութեամբ մարդկան. ի խաչի՛ն զմեղս սպանե՞ր և զդատակ-նիք մահու լուծեր. հաշտեա"։

Վեհագո՜յն բնութեանց էի՞ց և արարիչըդ բոլո-րից. յորժամ ծագե՛ս զխաչիդ նշա՛ն ի գալստեան քո միւսանգամ. զերկրպագո՛ւս այժմ հաւատո՞վ լու-սաւորեա նորին լուսով. զի համաձայն խաչազգե-ցիցն զքեզ օրհնեմք յաւի՛տե՞նի՛ց։

Քարոզ. Խնդրեսցուք. Կեցո։ Աղօթք՝ Քում ամե-նազօր և հրաշալի մատնութեանդ։ (Տես ի Թիւն. 75 ։)

Եւ ապա երգեալ զՍուրբ խաչն և զԱւետարանն է վերայ գրքակալին՝ և քահանայքն պար առեալ. Եպիսկոպոսն կամ Աւագ քահանայն խնկարկեսցէ. և այլքն սկսանիցեն շարականն՝ ԲԿ։

Խաչի քո Քրիստոս երկիրպագանեմք. և ըզսուրբ զմատնութիւնըդ քո մեծացուցանեմք. և զսուրբ չարչարանսդ քո փառաւորեմք. Եկայք հաւատացեալք երկրպագեսցուք Քրիստոսի Աստուծոյ մերոյ. վասըն զի եկն ի ձեռըն խաչին իւրոյ շնորհեաց պարգևս աշխարհի։ Սուրբ Աստուած. սուրբ և հզօր. սուրբ և անմահ՝ որ մատնեցար վասն մեր ողորմեա մեզ։

(Այսպէս երիցս կրկնելով. և ապա)

ԱԿ. Փառք սուրբ խաչիդ ալէլուիա. սուրբ մատնութեանդ ալէլուիա. չարչարանացդ ալէլուիա։ Երջանկացաւ առ մեզ լոյս երեսաց քոց և ետուր ուրախութիւն սրտից մերոց։ Ի պտղոյ ցորենոյ՝ գինւոյ և ձիթոյ իւրեանց լցուցեր ըզնոսա։ Փառք սուրբ խաչիդ և այլն նոյնպէս։ Փառք և երկրպագութիւն Հօր և Որդւոյ և սրբոյ Հոգւոյն. այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից ամէն։ Փառք սուրբ խաչիդ և այլն նոյնպէս։

ԲԿ. Խաչըն կենարար որ եղեւ մեզ փրկութիւն. սովաւ ամենեքեան ըզքեզ բարեբանեմք։ Որ ի Հօրէ լուսոյ լոյս ճառագայ-

թեա՛լ ի՛ յերկրի, և գաւազան զօրութեան հաւատացելոց. սովաւ": Որ լուսափայլ ծագմամբ հրաշափառապէս մեզ ցուցաւ ի յօգնութիւն ընդդէմ թշնամւոյն. սովաւ":

Փառք Հօր եւ". Այժմ եւ միշտ":

Որ յատենի կացեր անպարտ կողին պատրանօք, և արբուցեր մեզ ի կողահոս աղբերէդ. Նորոգեա և զիս զապականեալս մեղօք:

Ձկնի Քարոզ՝ Սուրբ խաչիւս: Աղօթք՝ Պահպանեա

(Տես ի Թիւ. 147:)

Եւ ապա ընթերցուցուն զկտակն մեծի Ուրբաթու՝ որ յաղագս խաչելութեանն Քրիստոսի:

Եւ արձակին ի խաղաղութիւն:



Այսօր է ցերեկին՝ ծունր կրկնելոյ հրաման ոչ գոյ, մինչև ցերեկոյի ժամն:



Եւ ի ցերեկեան երեք ժամուն՝ եկեալ ասասցեն զերիս ողորմեայն հանդերձ մեծ քարոզիւքն և աղօթիւք: Ձկնի՝ Հոգւոցն հանգուցելոց:





*Իսկ ի վեցերորդ ժամուն ժողովեսցին ի դուռն եկեղեցւոյն, և կատարեսցեն զկարգ խաչելութեանն։ Սկսանիցին ընթեռնուլ զութ փոխ Սաղմոսն և զվեշտասան ընթերցուածս գրոց, և զչորս գլուխ Աւետարանաց։*

*Առաջին ընթերցուածն՝ աշակերտի դասուն է։*

Առաջին սաղմոս ԼԴ։

Կց. Յարեան ի վերայ իմ վկայք չարաց. և զոր ինչ ոչ գիտէի՝ հարցանէին ցիս։

Փխ. Դատեա՛ տէր զոյնոսիկ՝ որք դատեն զիս. մարտի՛ր ընդ այնոսիկ՝ որք մարտնչին ընդ իս։

Ա՛ռ զզէն և զասպար քո, և արի՛ օգնել ինձ. հա՛ն զսուր քո ընդդէմ հալածչաց իմոց, արգե՛լ զնոսա. և ասա՛ դու ցանձն իմ՝ թէ փրկութիւն քո եմ ես։

Ամաչեսցեն և յամօթ լիցին որք խնդրէին զանձն իմ. դարձցին յետս և ամաչեսցեն, որք խորհէին ինձ չա՛ր։

Եղիցին նոքա որպէս փոշի առաջի հողմոյ. և հրեշտակ տեառն նեղեսցէ զնոսա։

Եղիցին ճանապարհք նոցա ի խաւար և ի գայթակղութիւն. և հրեշտակ Աստուծոյ հալածեսցէ զնոսա։

Ի նանիր թագուցին ինձ որոգայթ. յապականութեան իւրեանց, և ի նանիր նախատեցին զանձն իմ։

Հասցէ ի վերայ նոցա որոգայթ՝ զոր ոչ գիտացին. և որսն զոր թագուցին՝ առցէ զնոսա, և յորո-

գայթ ի նոյն անկցին։

Այլ անձն իմ ցնծասցէ ի Տէր, ուրախ եղիցի ի փրկութեան Նորա. և ամենայն ոսկերք իմ ասասցեն, Տէր՝ ո՞ նման է քեզ։

Զի փրկեաց զաղքատն ի ձեռաց հզօրի, զաղքատն և զտնանկն յայնցանէ՝ որք յափշտակեն զնա։

Յարեան ի վերայ իմ վկայք չարաց. և զոր ինչ ոչ գիտէի՝ հարցանէին ցիս։

Հատուցին ինձ չար փոխանակ ընդ բարւոյ. անժառանգել զանձն իմ խորհեցան յորդւոց ի մարդկանէ։

Ես ի նեղել նոցա քուրձ զգենուի, խոնարհ առնէի պահօք զանձն իմ, և աղօթք իմ ի ծոց իմ դարձցին։

Որպէս զեղբայր և զընկեր՝ այսպէս հաճոյ լինէի, որպէս զսգաւոր և զտրտում այնպէս խոնարհ առնէի։

Ի վերայ իմ ուրախ եղեն և ժողովեցան, ժողովեցան յիս տանջանք և ես ոչ ծանեայ. ցրուեցան, և ոչ զղջացան։

Փորձեցին զիս և արհամարհեցին, արհամարհանօք կրճտեցին ի վերայ իմ զատամունս իւրեանց, Տէր ե՞րբ տեսցես։

Ի բա՛ց արա զանձն իմ ի խորամանկութենէ նոցա, և յառիւծուց զմիամօրութիւն իմ։

Խոստովան եղէց քեզ Տէր յեկեղեցիս մեծս, և ի ժողովս բազմաց օրհնեցից զքեզ։

Մի՛ ուրախ եղիցին յիս թշնամիք իմ՝ որք ատէին զիս ի տարապարտուց. ակնարկել առնէին յիս աչօք իւրեանց։

Ընդ իս զխաղաղութիւն խօսէին, և ինքեանք բարկութեամբ զնենգութիւն խորհէին։

Բացին ի վերայ իմ զբերանս իւրեանց, և ասացին՝ այո՛ այո՛ տեսին աչք մեր։

Տեսեր Տէր և մի՛ լռեր, Տէր՝ մի՛ ի բացեայ առներ յինէն։

Զարթի՛ր և հայեա՛ց Տէր յիրաւունս իմ, Աստուած իմ և Տէր իմ ի դատաստանս իմ. և իրա՛ւ արա ինձ ըստ արդարութեան քում Տէր Աստուած իմ։

Մի՛ ուրախ եղիցին յիս թշնամիք իմ, և մի՛ ասասցեն ի սիրտս իւրեանց՝ թէ վա՛շ վա՛շ անձանց մերոց մի՛ ընկլուզաք զնա։

Ամաչեսցեն և յամօթ լիցին՝ որք խնդան ընդ չար իմ. զգեցցին զամօթ և զանարգանս՝ որք մեծաբանեն ի վերայ իմ։

Ցնծասցեն և ուրախ լիցին ի քեզ ամենեքեան, որք կամին զարդարութիւն իմ։

Ասասցեն յամենայն ժամ, մեծ է Աստուած. և որք կամին զխաղաղութիւն ծառայի քո։

Լեզու իմ խօսեսցի զարդարութիւնս քո, զօրհնապազ զգովութիւնս քո։

*Ընթերցուած ի Զաքարիայ Մարգարէէ։*
Գլ՝ 11. համ՝ 11։

Եւ ծանիցեն Քանանացիքն զխաշինս պահեալք

իմոյ. զի բան տեառն է։ Եւ ասացի ցնոսա, թէ բարւոք թուի յաչս ձեր. տուք զվարձս իմ. ապա թէ ոչ՝ զլո՛յց տարարէք։ Եւ կշռեցին զվարձս իմ երեսուն արծաթի։ Եւ ասէ ցիս տէր՝ ա՛րկ դու զայդ ի բովս. եւ քննեա՛ թէ փորձ իցէ՝ որպէս ես զատայ փորձ վասն նոցա. եւ առի զերեսուն արծաթին. եւ արկի ի տուն տեառն ի բովս։ Եւ ընկեցի զգաւազանն երկրորդ զվիճակին. ցրել զուխտ իմ ի մէջ Յուդայ եւ ի մէջ Իսրայէլի։

Պօղոսի Առաքելոյն ի Գաղատացւոց Թղթոյն է ընթերցուածս։
Գլ՝ 6. Համ՝ 14։

Այլ ինձ քա՛ւ լիցի պարծիլ՝ բայց միայն ի խաչն տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի. որով ինձ աշխարհ ի խաչ ելեալ է՝ եւ ես աշխարհի։ Զի ի Քրիստոս Յիսուս, ո՛չ թլփատութիւն ինչ է՝ եւ ո՛չ անթլփատութիւն, այլ նոր արարած։ Եւ որք միանգամ այսմ կանոնի միաբան լինին, խաղաղութիւն ի վերայ նոցա, եւ ողորմութիւն՝ եւ ի վերայ Իսրայէլին Աստուծոյ։ Այսուհետեւ աշխատ ոք զիս մի՛ արասցէ. զի ես ըզ-չարչարանսն Քրիստոսի ի մարմնի իմում կրեմ։ Շնորհ տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի՝ ընդ հոգւոյդ ձերում եղբարք. ամէն։

Աղօթք հանդերձ սաղմոսերգով զտէր աղաչեսցուք։
Տէր ողորմեա։ (Երիցս կրկնեա։)
Եւ եւս խաղաղութեան”։ Օրհնութիւն եւ փառք”։

Երկրորդ սաղմոս ԼԷ·

ԿՑ. Ես ի տանջանս պատրաստ եմ. և ցաւք իմ առաջի իմ են յամենայն ժամ:

ՓԽ. Տէր մի՛ սրտմտութեամբ քով յանդիմաներ զիս. և մի՛ բարկութեամբ: (Տես ի Թիւն. 319:)

Ընթերցուած յԵսայեայ Մարգարէէ:
Գլ՝ 3. Համ՝ 9:

Վասնորոյ խոնարհեցան փառք նոցա. և ամօթ երեսաց նոցա ծածկեաց զնոսա. և զմեղս իւրեանց իբրև զՍոդոմացւոցն պատմեցին՝ և յայտ արարին. վա՜յ անձանց նոցա. զի խորհեցան զխորհուրդ չար առանձինն: Եւ ասեն՝ կապեսցուք զարդարն՝ զի դժպհի եղև մեզ. այսուհետև զարդիւնս գործոց իւրեանց կերիցեն: Վա՜յ անօրինին. չարիք ըստ գործոց ձեռաց իւրոց անցցեն ընդ նա: Ժողովուրդ իմ. հարկահանք ձեր ճռաքաղ առնեն զձեզ. և պահանջողք տիրեն ձեզ. ժողովուրդ իմ, որք երանեն ձեզ՝ խաբեն զձեզ. և զշաւիղս ոտից ձերոց խռովեցուցանեն: Այլ արդ հասցէ տէր ի դատաստան. և կացուսցէ յատենի զժողովուրդ իւր: Ինքնին տէր ի դատ եկեսցէ, ընդ ծերս ժողովրդեանն իւրոյ՝ և ընդ իշխանս նոցա. դուք զի՛ հրկէզ արարէք զայգի իմ. և յափշտակութիւն տնանկին է ի տունս ձեր: Դուք զի՛ զրկէք զժողովուրդ իմ. և զերեսս տնանկաց մի՛ առնէք ամօթով՝ ասէ տէր՝ տէր զօրութեանց:

Պօղոսի Առաքելոյն ի Փիլիպպեցւոց Թղթոյն է
ընթերցուածս։
Գլ՝ 2. համ՝ 5։

Զայն խորհեսցի իւրաքանչիւր ոք ի ձէնջ, որ և ի Քրիստոս Յիսուս։ Որ ի կերպարանս Աստուծոյ էր, ոչինչ յափշտակութիւն համարեցաւ զլինելն հաւասար Աստուծոյ։ Այլ զանձն ունայնացոյց՝ զկերպարանս ծառայի առեալ, ի նմանութիւն մարդկան եղեալ՝ և կերպարանօք գտեալ իբրև զմարդ։ Խոնարհեցոյց զանձըն, լեալ հնազանդ մահու չափ՝ և մահու խաչի։ Վասնորոյ և Աստուած զնա առաւել բարձրացոյց. և շնորհեաց նմա անուն՝ որ ի վեր է քան զամենայն անուն։ Զի յանուն Յիսուսի Քրիստոսի ամենայն ծունր կրկնեսցի, երկնաւորաց՝ և երկրաւորաց՝ և սանդարամետականաց։ Եւ ամենայն լեզու խոստովան լիցի, թէ տէր Յիսուս Քրիստոս է ի փառս Աստուծոյ Հօր։

Աղօթք հանդերձ սաղմոսելով՝ զտէր աղաչեսցուք։
Տէր ողորմեա։ (Երիցս կրկնել։)

Եւ ևս խաղաղութեան"։ Օրհնութիւն և փառք"։

Երրորդ սաղմոս Խ։

Կց. Մտանէր տեսանել զնանրութիւն, Խօսէր ի սրտի իւրում. և ժողովէր զանօրէնութիւն յանձն իւր։
Փխ. Երանի որ խորհի զաղքատն և զտնանկն, յաւուր չարի փրկէ զնա տէր։ (Տես ի թիւն. 324։)



## ԱՒԱԳ

# ՇԱԲԱԹ

Ի գիշերին վառեսցեն լոյս յառաջ խորանն միայն։ Կանոնագլուխ՝ դէ. Սիրեցէք". (Տես ի Ընթ. 25)։

### Հանգստեան Շարական. Դկ։

Հայր անըսկիզբըն բարեխնամ մարդասէր. որ ստեղծիչդ ես հոգւոց և մարմնոց. յիշեա զնընջեցեալսըն մեր և հանգո ընդ սուրբըս քո։ Որդիդ միածին որ գթածդ ես առ ամենեսեան. և խնայիչ և արեամբ գնեցեր ըզքո ժողովուրդս. յիշեա զգինս արեան քո տէր, և հանգո"։ Հոգիդ ճըշմարիտ որ աղբիւրդ ես անըսպառելի, և լըցուցիչ ամենայն բարութեանց. յիշեա"։

Խընդըրեմք ի քէն Թագաւոր փառաց փառաւորեալդ ի զուարթնոց. ըզնըննջեցեալսըն մեր ընկալ մարդասէր տէր, և հանգո ընդ սուրբըս քո։

Յորժամ գաս փառօք Հօր դատել զերկիր արդա-
րութեան արեգակն. ըզնըն": Ի նըստիլ քո
յատենի դատաւոր անեղ Քրիստոս փըրկիչ մեր և
յոյս. ըզնըն":

Որ արարիչդ ես արարածոց հանգուցեալդ ի
հրեղէն կառս. յիշեա զհոգիս ննջեցելոց մե-
րոց, և հանգո ընդ սուրբըս քո: Որ երկայնա-
միտդ ես առ ամենեսեան և ներող յանցանաց
մերոց. յիշ":

Աստուածածին մայր և կոյս ծագող արեգա-
կանն արդարութեան, որ լուսաւորեացն ըզմեզ.
հոգևոր երգով զքեզ բարեբանեմք, և փառաւո-
րեմք ըզմիածին քո զորդին: Ի լոյծ զօրէնս
բընութեան մարդկան հրաշափառ քո ծընունդ,
և զէութիւն բնութեանն ամբողջ պահեալ, և կու-
սութեանդ քո ոչ խախտեցան կընիք. հոգե":
Զքեզ մորենի անկէզ, լեառըն վիմածին դուռըն
փակեալ և աղբիւր կընքեալ: Նախատեսացըն գու-
շակեալ մայր և կոյս. հոգե":

Խաչի քո Քրիստոս երկըրպագեն արարածք ա-
մենայն որ ի փըրկութիւն մեզ կանգնեցաւ. սա
եղիցի մեզ պահապան յաղթող, ապրեցուցանել ըզ-

մեզ ի պատրա՛նա՛ց թը՚շնամու՜յն ։ Ի՛ սմա բա՛րձրացար բարձո՛ղդ անիծից որ փառաւորեա՛լդ ե՚ս ընդ հօ՜ր․ ժողովե՜լ ըզհեռացեա՛լսըն կենսաբե՛ր փա՛յտիւն․ ապրե՛”։

Փառք Հօր եւ Որդւոյ եւ Հոգւո՜յն Սրբոյ․

Սովաւ լուսաւորեցա՛ն արարա՛ծք ամենայն․ սմա՜ սպասէին արգելեա՛լքն ի մեղսասէ՛ր բա՛նտին․ որ ազատեա՛ց ըզմեզ ի պատրա՛”։

Այժմ եւ մի՜շտ եւ յաւիտեանս յաւիտենից․ ամէն։

Ո՞ր միւսանգամ գալո՛ց ես հայրենի փա՛ռօ՜ք նորոգե՛լ զնախաստեղծին ծընունդ․ յի՛շեա՜ զհո՛գիս ննջեցելո՛ց մե՛րո՛ց, և հանգո ը՛նդ սո՚ւրբըս քո՜։

Սաղմոս Աւետարանին

Դ Կ

Ալէ՜լուիա Ալէ՜լուիա։

Տէր լուր աղօթից իմոց․ ունկնդիր խնդրուածաց իմոց ճշմարտութեամբ քով։

Լուր ինձ արդարութեամբ քով, և մի՛ մտանէր ի դատաստան ընդ ծառայի քում․ զի ոչ արդարանայ առաջի քո ամենայն կենդանի։

Հալածեաց թշնամին զանձն իմ․ խոնարհ արար յերկիր զկեանս իմ․ և նստոյց զիս ի խաւարի որպէս մեռեալ յաւիտենից։

Ձանձրացաւ յիս հոգի իմ․ և սիրտ իմ խռովեցաւ յիս ։

Յիշեցի զաւուրսն զառաջինս․ խորհեցայ յամենայն գործս քո․ յարարածս ձեռաց քոց խորհեցայ, և համբարձի առ քեզ զձեռս իմ ։

Անձն իմ որպէս երկիր ծարաւի է առ քեզ․ վաղվաղակի լուր ինձ տէր, զի նուաղեցաւ յինէն հոգի իմ ։

Մի՛ դարձուցաներ զերեսս քո յինէն․ նմանիցիմ այնոցիկ, ոյք իջանեն ի գուբ ։

Լսելի արա ինձ առաւօտու զողորմութիւնս քո․ զի ես ի քեզ տէր յուսացայ ։

Ցոյց ինձ ճանապարհ՝ յոր և գնացից․ զի առ քեզ տէր համբարձի զանձն իմ ։

Փրկեա զիս ի թշնամեաց իմոց տէր․ զի զքեզ ապաւէն ինձ արարի ։

Ուսո ինձ առնել զկամս քո․ զի դու ես Աստուած իմ ։

Հոգի քո բարի՝ առաջնորդեսցէ ինձ ի յերկիր ուղիղ ։

Վասն անուան քո տէր՝ կեցուսցես զիս, արդարութեամբ քով հանցես ի նեղութենէ զանձն իմ ։

Ողորմութեամբ քով սատակեա զթշնամիս իմ․ և կորո զամենայն նեղիչս անձին իմոյ, զի ես ծառայ քո եմ ։

Ալէլուիա օ՜րթի ։

Սրբոյ Աւետարանիս Յիսուսի Քրիստոսի՝ որ ըստ Մատթէոսի։

Գլ՝ 13. համ՝ 86։

Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի։

Յայնժամ թողեալ Յիսուսի զժողովուրդսն՝ եկն ի տուն. մատեան առ նա աշակերտքն նորա՝ և ասեն. մեկնեա մեզ զառակ որոմանցն ագարակի։ Նա պատասխանի ետ՝ և ասէ ցնոսա. որ սերմանէ զսերմն բարի՝ է որդի մարդոյ։ Եւ ագարակն աշխարհս է, սերմն բարի նոքա են՝ որ որդիքն արքայութեան են. իսկ որոմն որդիք չարին են։ Եւ թշնամին որ վարեաց զայն՝ սատանայ է. և հունձքն կատարած աշխարհիս է. և հնձողքն հրեշտակք են։ Որպէս ժողովի որոմնն՝ և ի հուր այրի, այնպէս եղիցի ի կատարածի աշխարհիս։ Առաքեսցէ որդի մարդոյ զհրեշտակս իւր, և ժողովեսցեն յարքայութենէ նորա զամենայն գայթակղութիւնս, և զայնոսիկ ոյք գործեն զանօրէնութիւն։ Եւ արկցեն զնոսա ի հնոց հրոյ. անդ եղիցի լալ՝ և կրճել ատամանց։ Յայնժամ արդարքն ծագեսցեն իբրև զարեգակն յարքայութեան երկնից, որ ունիցի ականջս լսելոյ լուիցէ։ Դարձեալ՝ նման է արքայութիւն երկնից գանձի ծածկելոյ յագարակի, զոր գտեալ մարդոյ՝ թագոյց. և ի խնդութենէ անտի երթայ վաճառէ զամենայն ինչ զոր ունի, և գնէ զագարակն զայն։ Դարձեալ՝ նման է արքայութիւն երկնից առն վաճառականի՝ որ խնդրի-

ցէ մարգարիտս գեղեցիկս։ Եւ գտեալ մի պատուական մարգարիտ՝ երթեալ վաճառեաց զամենայն զոր ինչ ունէր՝ և գնեաց զայն մարգարիտ։ Դարձեալ նման է արքայութիւն երկնից ուռկանի արկելոյ ի ծով և յամենայն ազգաց ժողովելոյ։ Զոր՝ իբրև լըցաւ, հանեալ ի ցամաք՝ և նստեալ ժողովեցին զբարի բարին յամանս, և զխոտանն ի բաց ընկեցին։ Այնպէս եղիցի ի կատարածի աշխարհիս. ելցեն հըրեշտակք՝ և մեկնեսցեն զչարս ի միջոյ արդարոց, և արկցեն զնոսա ի հնոց հրոյն. անդ եղիցի լալ և կըրճել ատամանց։ Ասէ ցնոսա Յիսուս. իմացարո՞ւք զայս ամենայն, ասեն ցնա. այո՛ տէր։ Եւ նա ասէ ցնոսա. վասն այսորիկ ամենայն դպիր աշակերտեալ արքայութեան երկնից՝ նման է առն տանուտեառն, որ հանէ ի գանձէ իւրմէ զնոր և զհին։

Երգ փառաց Ներսէսի ասացեալ ձայն·տա— ի Քրիստոս ննջեցելոց

ԲԿ ԴԿ

Ա՚ստուած անե՜ղ անժա՝մա՛նա՝կ հայր ա՝նըսկիզբն և անքանա՝կ. Որդւոյ պատճա՝ռ ծննդեա՛մբ անճա՝ռ Հոգւոյն բըղ՛խմամբ անքննաբա՝ր. ա՛ղաչե՚մք ըզքեզ գը՛թած երկայնա՝միտ և ողորմա՝ծ. ո՛ղորմեա քո՝ ստե՛ղծուածո՝յս յուսո՝վ ի քեզ ննջե՛ցելոյս։

Բա՚նդ որ ի ծո՜ց Հօր միա՝ծին և կե՝նդա՛նի ըս-

Հրեղէնա՛տորդին. որով Ե՛րկինք գո՛յա՝ցան աշխարհ ջրրիւ հա՝ստա՛տեցան. հա՛յցեմք ի քէն տէր և՝ փր՛րկիչ ամենա՛զօրմ և կե՜ցուցիչ. ո՛ղոր” ։

Գե°րագո՜յն շնորհա՝ց բա՛շխո՝ղ երկնաւո՛րաց և երկրայնո՝ց. կեանք և կենա՝ց աղ՝ւո՛ր Հոգի Հօր և Ո՛րդւոյ ա՝բարչա՝կից. խը՛նդրեմք ի քէն՝ աղբիւր բա՛րեա՝ց արբո՝ւցա՛նողըդ ծարաւեա՝ց. ո՛ղոր” ։

Դա°ւանի՜մք ընդ սրո՝վբէ՛ից զկենդա՝նեա՛րարըդ համայնից. երեքսրբեան մի տէ՛րութի՝ւն զՀայր և զՈ՛րդի և Սուրբ զՀոգիդ. յո՛ր հանգուցեալըս մըկըրտեա՝լ և հաւա՛տով խոստովանեա՝լ. ո՛ղոր” ։

Ե°րրակի՜ թիւ կա՝տա՛րեա՝լ յե՝րի՛ս անձինըս բաժանեա՝լ. երրորդութեամբ միա՝ւո՛րեա՝լ մի՛ով բնութեա՝մբ հա՛ւասարեա՝լ. յո՛րմէ կապեալք և ա՝րձա՛կիմք և վե՝րը՛ստին անլոյծ կապիմք. ո՛ղոր” ։

Ձէ°ակի՜ցըդ Հօ՝ր զՈ՛րդի փառա՝ւո՛րեմք անըրւելի. որ իջեր յա՝րգա՛նդ կուսին զա՝դա՛մայինն առեր մարմին. ա՛ղաչանօք Աստուածա՛ծնին անապա՝կա՛ն քում ծընողի՝ն. ո՛ղոր” ։

Է°րեւեցա՜ր մարմնո՝վ յե՛րկրի որ ի Հօ՝րէ՛ անմեկնելի. ընդ հողեղէնը՝ս բնա՛կեցա՝ր ի հրեղինա՛ց երկըրպագեա՝լդ. պա՛ղատանօք երկնա՝ւո՛րա՝ց փառա՛բանի՛չ քոց հրեշտակա՜ց. ո՛ղոր” ։

Ը՞ստ օրինա՜ցըն Մովսէ՛սի ընծա՝յե՛ցար ի տաճարին. զի ըզբնութի՛ւնըս մա՛րդկային ընծա՝յե՛սցես Հօր ի յե՛րկինս. խը՛նդրուածովք սուրբ ծե՝րո՛ւնւոյն քեւ ի կա՛պից արձակելո՝յն. ո՛ղոր” ։

Թագաւոր ըղձ հրեղինաց որ ընդ մարդկան հոգեղինաց․ շըրջեցար անօրինաբար կրեցեր ըզկիրըս մարդկաբար․ որ վասըն մեր զայս ամենայն ի յանձն առեր խոնարհութեամբ․ ողոր՛՛ ։

ԵՐԳ.

Յանմահից մեռանելոյ զմեռեալ հոգիս կենդանացո․ թաղմամբ ի նոր գերեզմանի զթաղեալս ի մեղս վերածեա․ ի դըժ ներքնումն իջանելով ի դրոյն մեղաց վերաբերեա․ ի սուրբ մահու քո ընկելով լուսաւորեա և զիս հոգւով․ ողորմած տէր՛՛ ։

ՄԱՂԹԱՆՔ

Հոգւոցն հանգուցելոց ։ Եւ եւ խաղաղ ։
Քրիստոս Որդի ։ (Տես ի Թիւ. 36 ։)

---

Իսկ յառաջ քան զՕրհնութիւնն՝ զձայն Դատեւանդ յասեւանն ասա ։ (Տես ի Թիւ. 16) ։

Օրհնեալ Տէր մեր Յիսուս Քրիստոս ամէն ։
Հայր մեր որ յերկինս ես՛՛ ։

---

ՄԱՂԹԱՆՔ

Տէր Յիսուս Քրիստոս․ քո սուրբ և պնապակաս Թաղման չնորհիւ՛՛ ։ (Տես ի Թիւ. 37 ։)

ՔԱՐՈԶ

Եւ եւ խաղաղութեան՛՛ ։ Օրհնութիւն և փառք՛՛ ։

երկայնամիտ տէր քեզ փառք։ Որ պատուական խաչիւդ քո Քրիստոս և սուրբ արեամբդ քո հեղմամբ կեցուցանել ըզմեզ կամեցար. երկայ"։ Որ մարդասիրաբար վասն ամենեցուն ամենայնի համբերեցեր, և ի մահու ըզմահ կոխեցեր. երկայ"։

Արծաթսիրութեամբն մոլեալ Յուդա, զքեզ ըզմեծ ըզվարդապետն ընդ երեսուն արծաթոյ հը-րէիցըն մատնէր։ Ընդ որում ես համբուրեցից ասէ ըզնա կալարուք. ով համբոյր նենգութեան, նըշան և առիթ մահու։ Մերկացաւ յինքենէ զԱստուածային Սուրբ Հոգին. և ըզգեցաւ ըզսատանայ, որպէս հանդերձ արկաւ զիւրեաւ։

Որ նըստիս ի քըրովբէս Աստըւած բանդ. այսօր վասըն մեր խոնարհութեամբ նըստար ի լերինըն ձիթենեաց. օրհնեմք ըզքեզ անդադար երգով։ Որ համագոյդ ես խորհըրդոցըդ հայրենի, աշակերտացդ քոց ծանուցեր ըզխորհուրդ քո գալըստեանն. օրհ"։ Որ ամենայն ես արարիչ և ըստեղծիչ կենդանութեան. այսօր ըզծածկեալ խորհուրդ երրորդութեանըդ յայտնեցեր եկեղեցւոյ սըրբոյ քո. օրհ"։

Հոգ. Նոյն և նըման Հօր և Որդւոյ, Հոգիդ անեղ և համագոյ, բըղխումըն. Հօր անքըննաբար, առող

յՈրդւոյ անճառաբար. ի վերնատունն այսօր իջեր, զհոգիդ շնորհաց քոց արբուցեր. արբո և մեծ ողորմութեամբ ի բաժակէդ իմաստութեան: Էից ստեղծող արարածոց որ շրջէիր ի վերայ ջրոց, նոյն և ի ջուրսն աւազանին ի շնորհել մեզ քում էակցին, զըզգուես սիրով ազատնակերպ, զմարդիկ ծնանիս Աստուածակերպ. արբո": Բաբուն վերնոցն իմանալեաց, և ըստորին այսր ըզգալեաց, որ մարգարէս տաս ի հովուաց, և առաքեալս ի ձըկնորսաց. աւետաւոր ըզմաքսաւորս, քարոզ բանի քում զհալածողս. արբո":

Ի ձայն փողոյ գալըստեան քո տէր, ամենայն հոգիք զարթիցեն կալ ի դատաստանի քում Քրիստոս Աստուած մեր: Յորժամ հընչէ բարբառն ահագին, և հարկանի փող յարութեան մերոյ. եւ մեք գոչելով ասեմըք փառըք գալըստեան քո տէր: Յորժամ առնես հատուցումըն տէր, և սուրբըք քո պարծեսցին ի քեզ. և մեզ շնորհեսցես փըրկիչ կալ ի յաջմէ քումմէ:

Զքեզ Հայր յառաջ քան զյաւիտեանս բարեբանեն դասք անմարմնոց հրեշտակաց, ձայնիւ երգով գոչեն եւ աղաղակեն, Աստուած աստուծոց

է տէր տէրանց փրկիչ գոլով։ Առաքեցեր զքո միածինըդ մարմնանալ ի սուրբ կուսէն, և անարատ ծընանելով յորովայնէ անապականն, բառնալով ըզմեր նեղութիւնս. Աստուած"։ Շնորհք բարի յԵրուսաղէմ երևեցաւ հեթանոսաց. զի արարիչն յաւիտենից տըղայ եղեալ բարեգործութեան կենաց կոչէ. Աստուած"։

Գիտելով սուրբ հաւատոյ ի փայտ կենաց մարդկան յայտնեալ, զոր տեսեալ այսոյն պըղծոյ կործանեցաւ անկանգնելի. աղաչեմք սուրբ փրկիչ պահպանեա զանձինըս մեր։ Դողացաւ թըշնամին ընդ յայտնելն սըրբոյ խաչին, և ի յահէ փառաց նորա կործանեցաւ յանդընդս երկրի. ասա"։ Երկինք ցընծային և երկիրս ուրախանայր, քանզի փրկիչն ցուցաւ սուրբ խաչն և լուսաւոր տեղեկաց. ասա"։

Փառք Հօր եւ Որդւոյ եւ Հոգւոյն Սրբոյ.

Երրորդութեան բնութեամբ արարիչն ամենեցուն այսօր ննջէ ի մէջ մանկանց. որ պահէր զիսրայէլ անքուն պահապանի ի զինուորացն։

Այժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւիտենից ամէն:

Ցընծութիւն արարածոց Քրիստոս այսօր ար-

տասուք՝ որպէս մեռեալ ի տըրտմագնեցիցն. և բու-
բումն անմահութեան խընկի ի զգաստիցն ի շղա-
քերից։

## ՄԱՂԹԱՆՔ

Փառք հրաշափառ և անապական թաղման”։
(Տես ի Թիւն. 42։)

Քարոզ՝ Վասն ի վերուստ։ Աղօթք՝ Տէր տանջեանն։
(Տես ի Թիւն. 224։)

Ալէլուիա. ալէլուիա. ալէլուիա։

Եղէն զիս ի գբի ներքնումն. ի խաւարի և ի ստուերս մահու։ Ցիս հաստատեցաւ սրտմտութիւն քո. զամենայն զբօսանս քո ածեր ի վերայ իմ։

Այլ. Եղէ ես որպէս մարդ առանց օգնականի. և ի մեռեալս ազատ։ Որպէս զվիրաւորս ոք ննջեն ի գերեզմանի։

Փառք և եր”. Այժմ և միշտ և”։
Ալէլուիա. ալէլուիա. ալէլուիա։

Մաղթանք՝ Սաղմոսիւք և օրհնութեամբ և”։
(Տես ի Թիւն. 226):

Կարգաւորութիւն Հասարակաց աղօթից առաւօտու ժամուն ։ Որ կատարի ի դէմս Որդւոյն Աստուծոյ․ որ ե-րեւեցաւ իւղաբերիցն ։

---

Օրհնեալ Տէր մեր Յիսուս Քրիստոս․ ամէն ։
Հայր մեր որ յերկինս ես”։

Լցաք առաւօտու ողորմութեամբ քով․ ցնծացաք եւ ուրախ եղաք զամենայն աւուրս կենաց մերոց ։ Ուրախ եղաք փոխանակ”։ (Տես ի Թիւն․ 46)։

ՀԱՐՑ ԳԶ ։

Զքեզ օրհնեմք Թագաւոր յաւիտենից․ ամենայն Աստուած հարցն մերոց ։ Զոր ոչ բնութիւնք արարածոց զԱստուած տանիւր, մահուամբ սահմանեալ դընի ի նոր գերեզմանի․ նորա զիս ընդունելով մարդ․ զովեմք զքեզ Տէր հայր”։ Որ անփակ գրով հաստատեալ քարատեղ, կընքի մատանեաւ անկորուստ պահելով ընդմեզ հաւատով երրորդութեան ծնդ․ զովեմք ընդքեզ”։

Գ․ Ըզտէր օրհնեցէք եւ բարձր արարէք զնա յաւիտեան ։

Փառք Հօր եւ Որդւոյ եւ Հոգւոյն Սրբոյ ։

Օրհնեցէք զՔրիստոս Թագաւորն յիմանա-

լի զօրացն ահիւ պատուեալ. և՟. բար"։

Այժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւիտենից. ամէն:

Օրհնեացէ. Զանյաղթելի զթագաւորն որ պահի ի զինուորաց գանձն անմահութեան. և՟ բարձր"։

ՔԱՐՈԶ

Եկեալքս ամենեքեան ի սուրբ. (Տես ի Թիւն. 52):

Մեծացուսցէ ԳՁ։

Աստուածածին երկնային։ (Տես ի Թիւն. 266):

Քարոզ՝ Սուրբ զԱստուած։ Աղօթք՝ Ընկալ տէր։
(Տես ի Թիւն. 55):

Ողորմեա ԳՁ։

Որ բաշխողդ ես բարութեանց և պարգեւատու արարածոց քոց. այսօր հաճեցար խնդրել ի պարգեւի մասին ի Պիղատոսէ. զի և մեզ շնորհեսցես զպարգեւս ողորմութեան քո։ Որ զանճառ ըզլոյս փառաց իբրեւ զօթոց ըզքեւ արկար. այսօր անճառ խոնարհութեամբ պատեցար ի Յովսեփայ ի գերեզմանի տըքնեալ. զի ըզհնութիւն մեղաց մերոց նորոգեսցես ի կեանս անմահս։

Փառք Հօր եւ". Այժմ եւ միշտ":

Որ յէութեանդ ես ընդ Հօր անպարագրելի

բանդ, այսօր մպտանեաւ քահանայիցըն պարագրել ի յանձն առեր անկողոպտելի գանձ. զի ընդ մեզ փրկեսցես ի յանցանաց մեղաց մերոց։

### ՔԱՐՈԶ

Երկրպագեմք՝ (Տես ի Թիւն. 58)։

Տէր յերկնից ԳՁ

Յովսէփ ճշմարիտ և արդար հայցէր ի Պիղատոսէ զհասարակաց ըզպարգևատուն. որ տուաւ մեզ գանձ անկողոպտելի։ Պատեալ սուրբ կտաւովք զմարմինըն տէրունական զարկողն ընդ լոյս որպէս զօթոց. որ ըզգեցոյց մեզ ըզգեստ անկողոպտելի։

Փառք Հօր և". Այժմ և միշտ"։

Եդաւ ի նորափոր ի վիմի և մատանեաւ կնքեցաւ. որ զնախաստեղծըն կենդանացոյց, և ըզմարդկան կապանս մահու եղոյծ։

Փառք ի բարձունս՝ (Տես ի Թիւն. 61)։

ՆՐԳ

Եդին զիս ի գբի ներքնումն. ի խաւարի և ի ստուերս մահու։

Ցիս հաստատեցաւ սրտմտութիւն քո. զամենայն զբօսանս քո ածեր ի վերայ իմ։

Եղէ ես որպէս մարդ առանց օգնականի, և ի մեռեալս ազատ։

Որպէս զվիրաւորս, որք ննջեն ի գերեզմանս։

Զորս դու ոչ յիշեցեր, նոքա ի ձեռանէ քումմէ մերժեցան։

Եդին զիս ի գբի ներքնումն, ի խաւարի և ի ըստուերս մահու։

Ցիս հաստատեցաւ սրտմտութիւն քո, զամենայն զբօսանս քո ածեր ի վերայ իմ։

Հեռի արարեր յինէն զծանօթս իմ, և եդին զիս նշաւակ իւրեանց։

Մատնեցայ և ոչ ելանէի, աչք իմ տկարացան յաղքատութենէ։

Աղաղակեցի առ տէր զօրհանապազ, և համբարձի առ քեզ զձեռս իմ։

Միթէ մեռելոց առնիցես զսքանչելիս քո, կամ բըժիշկք յարուցեալ՝ խոստովան առնիցին առ քեզ։

Միթէ պատմեսցէ ոք երբէք ի գերեզմանի զողորմութիւնս քո, կամ զճշմարտութիւնս քո ի կորստեան։

Միթէ ճանաչիցին ի խաւարի սքանչելիք քո, կամ արդարութիւն քո յերկրի մոռացեալ։

Ես առ քեզ տէր աղաղակեցի, առաւօտու աղօթք իմ ժամանեսցեն առ քեզ։

Ընդէ՞ր տէր մերժես զանձն իմ, կամ դարձուցանես զերեսս քո յինէն։

Տնանկ և վաստակաւոր եմ ես ի մանկութենէ իմ-

մէ. ի բարձրութենէ խոնարհեցայ և ափշեցայ։

Յիս հաստատեցաւ բարկութիւն քո, արհաւիրք քո խռովեցուցին զիս։

Շրջեցան զինև որպէս ջուր, զօր ամենայն պաշարեցին զիս ի միասին։

Հեռի արարեր յինէն զբարեկամս իմ և զծանօթս իմ, վասն թշուառութեան իմոյ։

Ալէլուիա օ՛ ըԹէ։

Սրբոյ Աւետարանիս Յիսուսի Քրիստոսի՝ որ ըստ Մատթէոսի։
Գլ՝ 27. համր՝ 62։

Վասն կնքեցման գերեզմանի Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի։

Եւ ի վաղիւ անդր՝ որ է յետ ուրբաթուն. ժողովեցան քահանայապետքն և փարիսեցիք առ Պիղատոս։ Եւ ասեն, տէր, յիշեցաք զի մոլորեցուցիչն այն ասէր, մինչ կենդանին էր. թէ յետ երից աւուրց յառնեմ։ Արդ՝ հրամայեա՛ զգուշանալ գերեզմանին մինչև ցերիս աւուրս. գուցէ եկեալ աշակերտքն գիշերի՝ գողանայցեն զնա՝ և ասիցեն ժողովրդեանն՝ թէ յարեաւ ի մեռելոց. և լինիցի յետին մոլորութիւնն չար քան զառաջինն։ Ասէ ցնոսա Պիղատոս. ունիք ըզզօրականս. երթա՛յք զգուշացարո՛ւք՝ որպէս և գիտէք։ Եւ նոքա երթեալ զգուշացան գերեզմանին, և կնքեցին զվէմն հանդերձ զօրականօքն։

Որդ՝ Տէրն յետ սանդղմա՜ն": (Տես ի Թիւն. 73):

Քարոզ. Խնդրեսցուք. Կեցո: Աղօթք՝ Քում ամե-նազօր և հրաշալի Թաղմանդ: (Տես ի Թիւն. 75):

Ու ապա Շարական. ԲԿ:

Խաչի քո Քրիստոս": (Տես ի Թիւն. 467):
((Ըստ Ձեղեկոյն կանոնին՝) զսուրբ խաչելութիւնդ քո մե-ծացուցանեմք. և զսուրբ Թաղումնդ քո փառաւո-րեմք: Սոյնպէս՝ Փառք սուրբ խաչիդ, այէ. խաչե-լութեանդ, այէ. սրբոյ Թաղմանդ, այէ. և այլն: Շարականն՝ ԲԿ, Խաչն կենարար.

Փառք Հօր եւ". Այժմ եւ միշտ":

Եդար Տէ՜ր ի նո՜րափոր ի վիմի, և մատանեաւ կնքեցա՜ր զանձր՜ք կենաց ա՜շխա՞րհի՜:

Ջկնի Քարոզ՝ Սուրբ Խաչիւս: Աղօթք՝ Պահպանիչ. (Տես ի Թիւն. 147):

Ու համբուրեսցեն զսուրբ Խաչն և զԱւետարանն. և արձակեն ի խաղաղութիւն:



Եւ յերեկոյի Ճրագալուցի սրբոյ Զատկի քննաբար-ժամուն՝ ժողովեսցին ի սուրբ եկեղեցին, ծածկեալ ուներով զգեղանն. և լուցցեն զերկս կանթեղս, և ասասցեն զերգս ողորմութեան։ Իսկ Խոստովանեցո և Ապրեցո ոչ գոյ։ Սաղմոս՝ ՃԺԲ., ձայնիւ, յաջակողմեան դասէն։

48. Եղիցի անուն տեառն օրհնեալ, յայսմ հետէ մինչև յաւիտեան։

Փխ. Օրհնեցէք մանկունք զտէր. և օրհնեցէք զանուն տեառն։ (Տես ի Թիւն. 66)։

Զկնի Շարական ԳԶ։

Այսօր Աստուածութիւնըն զուարճանայ նոր հաստատելով զերկիր. զորս ըրք սուրբք փառաբանեն զուարթնոց. և մեք ձայնիւ օրհնութեամբ զարդարեցուք սուրբ զտօնս։ Այսօր և մեք ցընծամք տօնիւս ընդհանուր հրճուամբ. մեծապէս փայլմամբ երեւեցաւ յաշխարհի. առ Աստուած գոհութիւնք ընթանան. պատմեն անդադար ըզբան կենդանի։ Խնդա և զուարճացիր եկեղեցի կոյս սուրբ և հարսն երկնաւոր փեսային, ահա տեսանեմք զօծեալն ըզՔրիստոս, գոլով առ քեզ կոչեալն հեթանոսաց։

Եւ ևս խաղաղութեան"։ Օրհնութիւն և փառք"։

Դարձեալ սաղմոս ՃԺէ ։

կց․ Այսօր է զոր արար տէր, եկայք ցնծասցուք և ուրախ եղիցուք ի սմա ։

փխ․ Խոստովան եղերուք տեառն զի քաղցր է, զի յաւիտեան է ողորմութիւն նորա ։

Ասասցէ տունն իսրայէլի, զի յաւիտեան է ողորմութիւն նորա ։

Ասասցէ տունն Ահարօնի, զի յաւիտեան է ողորմութիւն նորա ։

Ասասցեն երկիւղածք տեառն, զի յաւիտեան է ողորմութիւն նորա ։

Ի նեղութեան իմում ես առ տէր կարդացի, և լուաւ ինձ յանդորր ։

Տէր է իմ օգնական և ես ոչ երկեայց, զի՞ արասցէ ինձ մարդ ։

Տէր է իմ օգնական, և ես տեսից ի թշնամիս իմ ։

Բարի է յուսալ ի տէր քան յուսալ ի մարդիկ, բարի է յուսալ ի տէր քան յուսալ յիշխանս ։

Ամենայն ազինք շրջեցան զինև, և անուամբ տեառն յաղթեցի նոցա ։

Շրջելով շրջեցան զինև, և պաշարեցին զիս ի միասին, և անուամբ տեառն վանեցի զնոսա ։

Շուրջ եղեն զինև որպէս մեղուք, վառեցան բորբոքեցան որպէս փուշք ի հուր, և անուամբ տեառն մերժեցի զնոսա ։

Ի մերժելն դրդուեցայ և եղէ մերձ ի գլորել․ և տէր ընկալաւ զիս ։

Զօրութիւն իմ և օգնութիւն իմ Տէր, և եղև ինձ ի փրկութիւն։

Ձայն ցնծութեան փրկութեան՝ ի յարկս արդարոց։

Աջ տեառն արար զօրութիւն, աջ տեառն բարձր արար զիս, և աջ տեառն արար զօրութիւն։

Ո՛չ մեռայց, այլ կեցից և պատմեցից զգործս տեառն։

Խրատելով խրատեաց զիս Տէր, և ի մահ ոչ մատնեաց։

Բացէ՛ք ինձ զդրունս արդարութեան, զի մտից ընդ այն, և խոստովան եղէց տեառն։

Այս դուռն տեառն է, և արդարք մտանեն ընդ սա։

Խոստովան եղէց քեզ Տէր, զի լուար ինձ, և եղեր ինձ ի փրկութիւն։

Վէմն զոր անարգեցին շինողքն, նա եղև գլուխ անկեան։

Ի տեառնէ եղև այս, և է սքանչելի առաջի աչաց մերոց։

Այսօր է զոր արար Տէր, եկա՛յք ցնծասցուք և ուրա՛խ եղիցուք ի սմա։

Ո՛ Տէր փրկեա՛, ո՛ Տէր աջողեա՛. օրհնեալ որ գալոց ես յանուն տեառն, և օրհնեցաք զքեզ ի տանէ տեառն։

Տէր Աստուած մեր երևեցաւ մեզ, արարէ՛ք տօնս ուրախութեան կանխաւ, մինչև յանկիւնս սեղանոյ։

Աստուած իմ ես դու՝ և խոստովան եղէց քեզ,

Աստուած իմ ես դու՝ և բարձր արարից զքեզ։

Խոստովան եղէց քեզ տէր՝ զի լուար ինձ, և եղեր ինձ ի փրկութիւն։

Խոստովան եղերուք տեառն, զի քաղցր է զի յաւիտեան է ողորմութիւն նորա։

Ընթերցուածս ի ծննդոց։
Գլ՝ 1։ Համր՝ 1։

Ի սկզբանէ արար Աստուած"։ (Տես ի Թիւն. 206):

Աղօթք հանդերձ ծնրադրութեամբ զտէր աղաչեսցուք։ Տէր ողորմեա։ (Երիցս կրկնեա։)

Եւ ես խաղաղութեան"։ Օրհնութիւն և փառք"։

Ընթերցուածս ի ծննդոց։
Գլ՝ 22. Համր՝ 1։

Եւ եղև յետ բանիցս"։ (Տես ի Թիւն. 357 :)

Աղօթք հանդերձ ևայլն։

Ընթերցուածս յԵլից։
Գլ՝ 12. Համր՝ 1։

Եւ խօսեցաւ տէր ընդ Մովսէսի և ընդ Ահարոնի յերկրին Եգիպտացւոց,. և ասէ։ Ամիսս այս եղիցի ձեզ սկիզբն ամսոց. առաջին եղիցի ձեզ յամիսս տարւոյ։ Խօսեաց ընդ ամենայն ժողովրդեան որդւոցն Իսրայէլի՝ և ասասցես. ի տասներորդում ամսեանս այսորիկ առցեն իւրեանց իւրաքանչիւր ոչխար ըստ տունս ազգացն. ոչխար ըստ երդ։ Եւ եթէ սակաւ իցէ ի տանն, որպէս թէ չիցէ բաւական լինել ոչխա-

րին, առցէ ընդ իւր զդրացի իւր և զընկեր իւր ըստ մարդաթիւ. իւրաքանչիւր ըստ բաւականի իւրում համարեսցի յոչխարն։ Ոչխար կատարեալ՝ արու՝ տարեւոր՝ անարատ լիցի ձեզ. յօդեաց և յայծեաց առնուցուք։ Եւ եղիցի ձեզ պահեալ մինչեւ ի չորս և ի տասն աւուր ամսոյս այսորիկ. և զենցեն զնա ամենայն բազմութիւն ժողովրդեանն որդւոցն Իսրայէլի ընդ երեկս։ Եւ առցեն յարենէ անտի. և դիցեն ի վերայ երկուց սեմոցն և բարաւորի տանցն. յորս ուտիցեն զնա ի նոսա։ Եւ կերիցեն զմիսն ի գիշերիս յայսմիկ խորովեալ հրով. բաղարջ ընդ եղեգի կերիցեն։ Եւ մի ուտիցէք ի նոցանէ հում. և մի պախ եփեալ ջրով՝ այլ խորովեալ հրով, զգլուխն ոտիւքն հանդերձ և զփորոտիքն նորա։ Եւ մի թողուցուք ի նմանէ յայգ. և ոսկր մի բեկանիցէք ի նմանէ. և որ ինչ մնայցէ ի նմանէ յայգ, հրով այրեսջիք։ Եւ այսպէս ուտիցէք, գօտիք ձեր ընդ մէջ. և կօշիկք ձեր յոտս. և ցուպք ձեր ի ձեռին. փութանակի ուտիցէք. զի զատիկ տեառն է։ Եւ անցից ընդ ամենայն երկիրդ Եգիպտացւոց ի գիշերի յայսմիկ. և հարից զամենայն անդրանիկ յերկրին Եգիպտացւոց ի մարդոյ մինչեւ յանասուն. և յամենայն դիսն Եգիպտացւոց արարից զվրէժխնդրութիւն. զի ես եմ տէր։ Եւ եղիցի ձեզ արիւնդ նշանակեալ ի վերայ տանց. յորս իցէք դուք անդ. և տեսից զարիւնդ. և ապրեցուցից զձեզ. և մի լինիցին ի ձեզ հարուածք ի սատակել, յորժամ հարկանիցեմ յերկրին Եգիպտացւոց։ Եւ ե-

դիցի ձեզ արիւնդ այդ ի յիշատակ. և տօնիցէք զդա տօն տեառն յազգս ձեր. օրէն յաւիտենական տօնիցէք զդա: Զեօթն օր բաղարջ ուտիցէք. յառաջնմէ իսկ օրէ անտի անհետ առնիջիք զխմոր ի տանց ձերոց. ամենայն որ ուտիցէ խմորեալ՝ սատակեսցի անձըն այն յԻսրայէլէ: Յառաջնմէ օրէ անտի մինչև ցօրն եօթներորդ նուիրեալ եղիցի ձեզ սուրբ. զամենայն գործ սպասու մի՛ գործիցէք ի նմա, բայց միայն որ գործիցի ամենայն անձին, այն միայն գործեսցի ձեզ: Եւ պահեսջիք զպատուիրանս զայս, զի յաւուր յայսմիկ հանից զզօրութիւն ձեր յերկրէս Եգիպտացւոց. և առնիցէք զօրս զայս յազգս ձեր օրէն յաւիտենական: Ի սկսանիլ չորեքտասաներորդի աւուր ամսոյն առաջնոյ՝ յերեկորեայ բաղարջ ուտիցէք, մինչև ցքսան և մի օր ամսոյն ցերեկոյ: Զեօթն օր մի՛ գտցի խմոր ի տունս ձեր, ամենայն որ ուտիցէ խմորեալ՝ սատակեսցի անձն այն ի ժողովրդենէ Իսրայէլի, յեկաց և բնակաց երկրին: Խմորեալ մի՛ ուտիցէք. յամենայն բնակութեան ձերում ուտիցէք բաղարջ: Եւ կոչեաց Մովսէս զամենայն ծերակոյտ որդւոցն Իսրայէլի, և ասէ ցնոսա. երթայք առէք ձեզ ոչխար ըստ ազգաց ձերոց, և զենջիք ի զատիկ: Եւ առնուցուք մշտիկ զոպայի թաթաւեալ յարեան. որ առ դրօքն իցէ. և սրսկեսջի՛ք զբարաւորաւն և զերկոքումբք սեմօքն յարենէ անտի որ առ դրօքն. բայց դուք մի՛ ելանիցէք իւրաքանչիւր ըստ դուռն տան իւրոյ մինչև ցառաւօտ: Եւ անցցէ տէր հար-

կանել զԵգիպտացիսդ. և տեսանիցէ զարիւնն որ ի վերայ բարաւորին և ի վերայ երկուց սեմոց՝ և զանց առնիցէ տէր զդրօքն, և ո՛չ տայցէ թոյլ սատակչին մտանել ի տունս ձեր, և հա՛րկանել: Եւ պահեսջի՛ր զբանս զայս՝ օրէն քեզ և որդւոց քոց մինչև յաւիտեան:

Աղօթք հանդերձ ևայլն:

Ընթերցուածս ի Յովնանու Մարգարէէ:
Գլ՝ 1. հմր՝ 1:

Եւ եղև բան տեառն առ Յովնան որդի Ամաթեայ՝ և ասէ: Արի՛, և գնա՛ ի Նինուէ քաղաք մեծ. և քարոզեսջիր անդ. զի ել աղաղակ չարութեա՛ն նորա առ իս: Եւ յարեաւ Յովնան փախչել ի Թարսիս յերեսաց տեառն. էջ ի Յոպպէ՝ և եգիտ նաւ՝ որ երթայր ի Թարսիս. ետ գինս՝ և եմուտ ի նա՝ նաւել ընդ նոսա ի Թարշիշ յերեսաց տեառն: Եւ տէր յարոյց ըդհողմ ի ծովուն. և նաւն ի վտանգի կայր ի խորտակել: Եւ երկեան նաւավարքն յերկիւղ մեծ. և աղաղակէին առ իւրաքանչիւր աստուածս իւրեանց. և ընկեցին զկարասին ի ծով անդր՝ զի թեթևացուսցեն յինքեանց. և Յովնան իջեալ ի խորշ մի նաւին՝ ննջէր, և խորդայր: Մատեաւ առ նա նաւապետն՝ և ասէ. զի՞նչ է այդ՝ զի խորդաս. արի՛, կարդա՛ զտէր Աստուած քո. թերևս ապրեցուսցէ զմեզ Աստուած՝ և մի՛ կորիցուք: Եւ ասեն իւրաքանչիւր ցընկեր իւր. եկա՛յք, արկցո՛ւք վիճակս՝ և տեսցուք. վասն ո՞յր են

չարիքս այս ի վերայ մեր. արկին վիճակս՝ և ել վի-
ճակն Յօնանու։ Եւ ասեն ցնա. պատմեա մեզ. վա-
սըն էր են չարիքս այս մեծ. ուստի՞ գաս՝ կամ յո՞
երթաս. յորմէ՞ աշխարհէ ես՝ կամ յորմէ՞ ժողովրդե-
նէ։ Ասէ ցնոսա. ծառայ տեառն եմ ես՝ և զտէր
Աստուած երկնից պաշտեմ. որ արար զծով և զցա-
մաք։ Եւ երկեան արքն յերկիւղ մեծ. և ասեն ցնա.
զի՞նչ գործեցեր զայդ. զի գիտացին եթէ յերեսաց
տեառն փախուցեալ էր. քանզի պատմեաց նոցա։
Եւ ասեն ցնա. զի՞նչ արասցուք քեզ՝ և դադարեսցէ
ծովս ի մէնջ. զի ծովն առաւել ևս խռովիւր՝ և յա-
րուցանէր զմրրիկ ի վերայ նոցա։ Եւ ասէ ցնոսա
Յօնան. առէ՛ք՝ ընկեցէ՛ք զիս ի ծովդ՝ և դադարեսցի
ի ձէնջ ծովդ. գիտեմ ես եթէ վասն իմ է մրրիկս
այս մեծ ի վերայ ձեր։ Եւ ջանային արքն դարձու-
ցանել զնաւն ի ցամաք՝ և ո՛չ կարէին. զի ծովն ևս
քան զևս խռովիւր. և սաստկանայր ի վերայ նոցա։
Աղաղակեցին առ տէր՝ և ասեն. քա՛ւ լիցի տէր. մի՛
կորիցուք վասն անձին առնս այսորիկ. և մի՛ ածեր
ի վերայ մեր արիւն արդար. զի դու տէր որպէս կա-
մեցար՝ և արարեր։ Եւ առին զՅօնան՝ և ընկեցին ի
ծովն. և դադարեաց ծովն ի խռովութենէ իւրմէ։
Եւ երկեան արքն յերկիւղ մեծ ի տեառնէ. զենին
զոհս տեառն՝ և ուխտեցին ուխտս։ Եւ հրաման ետ
տէր կիտին մեծի կլանել զՅօնան. և էր Յօնան ի
փոր կիտին զերիս տիւս և զերիս գիշերս։ Եւ եկաց

Յովնան յաղօթս առ տէր Աստուած՝ ի փորոյ կիտին։ Եւ ասէ՝ ի նեղութեան իմում աղաղակեցի առ տէր Աստուած իմ. և լուաւ ինձ յորովայնէ դժոխոց աղաղակի իմում. լո՛ւր տէր ձայնի իմում։ Եւ ընկեցեր զիս ի խորս սրտից ծովու. և գետք պաշարեցին զիս. ամենայն զբօսանք քո՝ և ալիք քո անցին ի վերայ իմ։ Եւ ասացի՝ թէ մերժեցայ յաչաց քոց. արդ՝ իցէ թէ յաւելից հայիլ ի տաճար սուրբ քո։ Հեղան զինև ջուրք մինչև յոգիս՝ անդունդք անհնարինք պաշարեցին զիս. եմուտ գլուխ իմ ընդ փապարս լերանց. էջի յերկիր՝ որոյ նիգք իւր ախք յաւիտենից. ելցեն յապականութենէ կեանք իմ։ Առ քեզ տէր Աստուած ի նուաղիլ հոգւոյ իմոյ կարդացի. զտէր յիշեցի. և եկեսցեն աղօթք իմ ի տաճար սուրբ քո։ Որք պահեն զունայնութիւն՝ և զստութիւն՝ զողորմութիւն իւրեանց թողին։ Այլ ես ի ձայն օրհնութեան՝ և խոստովանութեան մատուցից քեզ պատարագ՝ զոր ուխտեցի, և հատուցից փրկութեան տեառն։ Եւ հրամայեցաւ ի տեառնէ վիշապ ձկանն՝ և եթուք ըզնա ի ցամաք։ Եւ եղև բան տեառն առ Յովնան երկրորդ անգամ, և ասէ։ Արի՛, և գնա՛ ի Նինուէ քաղաք մեծ. և քարոզեսջիր ի նմա ըստ առաջնոյ քարոզութեանն. զոր խօսեցայ առ քեզ։ Յարեաւ Յովնան՝ և գնաց ի Նինուէ. որպէս խօսեցաւ ընդ նմա տէր. և Նինուէ էր քաղաք մեծ Աստուծոյ, իբրև գնաց երից աւուրց ճանապարհ։ Եւ սկսաւ Յովնան

մտանել ի քաղաքն իբրև աւուր միոյ ճանապարհի․ քարոզեաց՝ և ասէ․ այլ ևս երեք աւուրք՝ և Նինուէ կործանեսցի։ Եւ հաւատացին արքն Նինուէացիք յԱստուած՝ և քարոզեցին պահս՝ և զգեցան քուրձ ի մեծամեծաց մինչև ցփոքունս իւրեանց։ Եհաս բանըն առ թագաւորն Նինուէացւոց․ յարեաւ յաթոռոյ իւրմէ՝ և մերկացաւ զպատմուճան իւր․ զգեցաւ քուրձ՝ և նստաւ ի վերայ մոխրոյ։ Եւ քարոզեցաւ՝ և պատմեցաւ ի Նինուէ ի թագաւորէն և ի մեծամեծաց իւրոց․ թէ մարդ՝ և անասուն՝ խաշն՝ և արջառ․ մի՛ ինչ ճաշակեսցեն՝ և մի՛ ճարակեսցեն․ և մի՛ ջուր արբցեն։ Եւ զգեցան քուրձ մարդ՝ և անասուն․ և աղաղակեցին առ Աստուած արագ մտօք․ և դարձան իւրաքանչիւր ի ճանապարհաց իւրեանց չարաց․ և յանիրաւութենէ՝ որ ի ձեռս իւրեանց։ Եւ ասեն՝ ո՞ գիտէ՝ ապաշաւեսցէ Աստուած՝ և դարձցի ի բարկութենէ սրտմտութեան իւրոյ, և մի՛ կորիցուք։ Եւ ետես Աստուած զգործս նոցա․ զի դարձան իւրաքանչիւր ի ճանապարհաց իւրեանց չարաց․ և զղջացաւ Աստուած ի վերայ չարեացն՝ զոր խօսեցաւ առնել նոցա՝ և ոչ արար։ Եւ տրտմեցաւ Յովնան տրտմութիւն մեծ՝ և խռովեցաւ։ Եւ եկաց յաղօթս առ տէր Աստուած՝ և ասէ․ ով տէր՝ ո՞չ այս այն են բանք իմ․ մինչ էի անդէն յերկրին իմում․ վասն այնորիկ աճապարեցի փախչել ի Թարշիշ․ զի գիտէի՝ թէ ողորմած ես դու՝ և գթած․ երկայնամիտ՝ և բազում

ողորմ. և զղջանաս ի վերայ չարեաց։ Եւ արդ՝ տէր տէ՜ր՝ առ զոգի իմ յինէն. զի լաւ է ինձ մեռանիլ՝ քանթէ լինել կենդանի։ Եւ ասէ տէր ցՅովնան՝ թէ արդարև յոյժ տրտմեալ իցես։ Եւ ել Յովնան ի քաղաքէ անտի՝ և նստաւ յանդիման քաղաքին. և արար իւր հովանի՝ և նստաւ ընդ հովանեաւն. մինչև տեսանիցէ, թէ զինչ լինիցի ի քաղաքին։ Եւ հրաման ետ Աստուած դդմենւոյն. և ել ի վերայ գլխոյն Յովնանու՝ լինել հովանի ի վերայ գլխոյ նորա. զովացուցանել զնա ի տառապանաց իւրոց. և ուրախ եղև Յովնան ի վերայ դդմենւոյն ուրախութիւն մեծ։ Եւ հրաման ետ Աստուած որդանն առաւօտու ի վաղիւ անդր. եհար զդդմենին՝ և ցամաքեցաւ։ Եւ եղև ի ծագել արևուն. հրամայեաց Աստուած հողմոյ խորշակի տապախառնի. և անկաւ արև զգլխովն Յովնանու. և կայր ի տարակուսի՝ և քաղէին ոգիք նորա. և ասէր՝ լաւ էր ինձ մեռանիլ քան զայս կեանս իմ։ Եւ ասէ տէր Աստուած ցՅովնան. թէ արդարև յոյժ տրտմեալ իցես ի վերայ դդմենւոյն. և ասէ՝ յոյժ տրտմեալ եմ մինչև ցմահ։ Եւ ասէ տէր՝ դու խնայեցեր ի դդմենին՝ յոր չեղեր ինձ աշխատ. և ոչ սնուցեր զնա. ի գիշերի ել՝ և ի միւս գիշերի կորեաւ։ Եւ ես ոչ խնայեցից ի Նինուէ քաղաք մեծ. յորում բնակեալք են աւելի քան զերկոտասան բիւր մարդիկք. որք ոչ ծանեան զաջ և զահեակ իւրեանց. և անասուն բազում։

Աղօթք հանդերձ եայլն ։

Ընթերցուածս յԵլից ։
Գլ՝ 14 . համ՝ 24 ։

Եւ եղև յառաւօտու պահուն հայեցաւ տէր ի բանակն Եգիպտացւոց սեամբ հրոյն և ամպոյ . և խռովեաց զբանակն Եգիպտացւոց ։ Եւ կապեաց զանիւըս կառաց նոցա . և վարէր զնոսա բռնութեամբ . ասեն Եգիպտացիքն , փախիցուք յերեսաց Իսրայէլի . զի տէր պատերազմի վասն նոցա ընդ Եգիպտացիսն ։ Եւ ասէ տէր ցՄովսէս՝ ձգեա՛ զձեռն քո ի վերայ ծովուդ և կարկատեսցի անդրէն ջուրդ . և ծածկեսցէ զԵգիպտացիսդ . զկառս դոցա՝ և զհեծեալս իւրեանց ։ Եւ ձգեաց Մովսէս զձեռն իւր ի վերայ ծովուն . և դարձաւ ջուրն ընդ առաւօտն ի տեղի իւր . և Եգիպտացիքն փախեան յերեսաց ջրոցն . և թօթափեաց տէր զԵգիպտացիսն ի մէջ ծովուն ։ Եւ դարձուցեալ զջուրսն՝ ծածկեաց զկառս՝ և զհեծեալս՝ և զամենայն զօրութիւն Փարաւոնի , որք մտեալ էին զհետ նոցա ի ծով անդր . և ո՛չ մնացին ի նոցանէ , և ո՛չ մի ։ Եւ որդիքն Իսրայէլի գնացին ընդ ցամաք ի մէջ ծովուն . և ջուրն պարիսպ էր ընդ աջմէ նոցա , և ընդ ահեկէ իւրեանց ։ Եւ ապրեցոյց տէր զԻսրայէլ յաւուր յայնմիկ ի ձեռաց Եգիպտացւոցն ։ Եւ ետես Իսրայէլ զԵգիպտացիսն մեռեալս առափն ծովուն . և ետես Իսրայէլ զձեռն մեծ՝ զոր արար տէր ընդ Եգիպտացիսն , և երկեաւ ժողովուրդն ի տեառնէ . և հաւա-

տացին յԱստուած՝ և ի Մովսէս ծառայ նորա։ Յայնժամ երգեաց Մովսէս՝ և որդիքն Իսրայէլի զօրհնութիւնս զայս Աստուծոյ, և ասեն. օրհնեսցուք զտէր, զի փառօք է փառաւորեալ. զերիվարս և զհեծեալս նոցա ընկէց ի ծով։ Օգնական և ընդունող իմ տէր, և եղև ինձ ի փրկութիւն. սա՛ է իմ Աստուած և փառաւո՛ր արարից զսա. Աստուած հօր իմոյ՝ և բա՛րձր արարից զսա։ Տէր խորտակէ զպատերազմունս՝ տէր անուն նորա։ Զկառս Փարաւոնի՝ զզօրութիւնս նորա ընկէց ի ծով. զընտիրս հեծելոց՝ և զպատուազէնս, ընկղմեաց ի ծով կարմիր։ Խորք ծածկեցին զնոսա. ընկլան յանդունդս իբրև զվէմ։ Աջ քո տէր փառաւորեալ է զօրութեամբ, աջ քո տէր խորտակեաց զթշնամիս։ Եւ բազմութեամբ փառաց քոց մանրեցեր զհակառակորդս, առաքեցեր զբարկութիւն քո՝ և եկեր զնոսա իբրև զեղէգն։ Եւ հողմով սրտմտութեան քոյ բաժանեցան ջուրք. պաղեցան իբրև պարիսպ ջուրք. պաղեցան ալիք ի մէջ ծովու։ Ասաց թշնամին, հալածեցից՝ և հասից. բաժանեցից զաւար, լցուցից ի նոցանէ զանձն իմ. սատակեցից սրով իմով. տիրեսցէ նոցա ձեռն իմ։ Առաքեցեր զհողմն քո. և ծածկեաց զնոսա ծով. ընկղմեցան իբրև զկապար ի ջուրս սաստիկս։ Ո՞վ իցէ նման քեզ յԱստուածս տէր. և կամ ո՞վ նմանիցի քեզ փառաւորեալդ ի սուրբս. սքանչելի փառօք՝ որ առնես զնշանս։ Ձգեցեր զաջ քո՝ և եկուլ զնոսա երկիր։ Առաջնոր-

դեցեր արդարութեամբ ժողովրդեան քում այսմ, զոր փրկեցեր. մխիթարեցեր զօրութեամբ քով ի բանակետղ սրբութեան քոյ։ Լուան ազգք՝ և բարկացան, և երկունք կալան զբնակիչս Քանանացւոց։ Յայնժամ տագնապեցան դատաւորք Եդովմայ, և իշխանք Մովաբացւոց. կալաւ զնոսա դողումն, հալեցան ամենայն բնակիչք Քանանացւոց։ Անկցի ի վերայ նոցա ահ և երկիւղ. մեծութեամբ բազկի քոյ քարասցին. մինչև անցցէ ժողովուրդ քո տէր. մինչև անցցէ ժողովուրդ քո այս՝ զոր ստացար։ Տարեալ տնկեսցես զնոսա ի լերան ժառանգութեան քոյ. ի պատրաստութիւն բնակութեան քոյ. զոր արարեր տէր սրբութիւն. տէր զոր պատրաստեցին ձեռք քո։ Տէր թագաւորէ յաւիտեան՝ և յաւիտեան և ևս։ Զի մտին երիվարք Փարաւոնի կառօք և հեծելօք նորա ի ծով. և էած ի վերայ նոցա տէր ջուրս ծովուն. և որդիքն Իսրայէլի գնացին ընդ ցամաք ի մէջ ծովուն։ Եւ էառ Մարիամ մարգարէ քոյր Ահարոնի զթմբուկն ի ձեռն իւր. և ելին ամենայն կանայք զհետ նորա թմբկօք, և պարուք։ Եւ յառաջէր Մարիամ, և ասէր. օրհնեսցուք զտէր՝ զի փառօք է փառաւորեալ. զերիվարս և զհեծեալս ընկէց ի ծով։

*Եւ ապա լուցցեն ջահս և կանթեղս, և տացեն մոմեղէնս ի ձեռս ամենեցուն. և եկեալ միաբան յատեանն՝ սկսանիցեն Շարական ԳՁ։*

Լուսաւորեա՛ Երուսաղէ՛մ զի հասեալ է՛ լո՛յս

քո. զարդա՛րեա զամուրըս քո. և՛ փա՛ռք տեա՜ռն
է՛ վերայ քո ծա՛գեցի՜։ Օրհներգո՛ւթեա՜մբ սա՛ղ-
մոսիւք քեզ վա՛յելէ՜ Աստուա՛ծ օրհնութի՛ւն ի սի-
ովնէ. և՛ քեզ մատո՛ւսցին աղօ՛թք յԵ՜րուսաղէ՜մ։
Գովեա Երուսա՛ղէմ ըզտէր, և օրհնեա՛ զԱստուած
քո. Նոր ժողո՛վուրդ դըշխո՛յ դուստր սիո՛վնի՜։

Աղօթք հանդերձ եայլն։

*Ընթերցուածս յԵսայեայ Մարգարէէ։*
Գլ՝ 60. համ՝ 1։

Լուսաւորեա՛ց՝ լուսաւորեա՛ց Երուսաղէմ. զի հա-
սեալ է լոյս քո. և փառքն տեառն ի վերայ քո ծա-
գեսցին։ Զի ահա խաւար ծածկեսցէ զերկիր՝ և մա-
ռախուղ զհեթանոսս. բայց ի քեզ տէր յայտնեսցի.
և փառք Նորա ի քեզ երևեսցին։ Եւ գնասցեն թա-
գաւորք ի լոյս քո. և հեթանոսք ի ծագել լուսոյ քոյ։
Համբարձ շուրջ զաչս քո. և տես ժողովեալ առ
քեզ զամենայն մանկունս քո. զի եկին՝ հասին ի հե-
ռաստանէ որդիք քո. և դստերք քո ի վերայ ուսոց
նոցա բարձեալք բերիցին։ Յայնժամ տեսցես՝ և
խնդասցես. երկիցես՝ և զարհուրեսցիս ի սրտի քում.
զի փոխեսցի ի քեզ մեծութիւն ծովու. և ազգաց՝ և
ժողովրդոց։ Եկեսցեն ի քեզ երամակք ուղտուց. և
ծածկեսցեն զքեզ ուղտերամակքն Մադիամու՝ և Գե-
փայ. ամենեքեան ի Սաբայէ եկեսցեն, բերել ոսկի
և կնդրուկ՝ և ականս պատուականս. ի փրկութեանն

տեառն առցեն զաւետիս։ Եւ ամենայն խաշինքն Կեդարու ժողովեսցին առ քեզ. և խոյք Նաբէօթայ ածցին. և մատուսցին ընդունելի պատարագք ի վերայ սեղանոյ իմոյ. և տուն աղօթից իմոց փառաւորեսցի։ Ո՞վ են սոքա՝ որք իբրև զամպս թռուցեալք են. և իբրև զաղաւնիս ձագախառն երամովին գան առ իս։ Ինձ ակն ունին կղզիք՝ և նաւք Թարշշի յառաջագոյն ածել զորդիս քո ի հեռաստանէ. զարծաթ և զոսկի ընդ իւրեանս. վասն անուան տեառն սրբոյն. և վասն սրբոյն Իսրայէլի փառաւորելոյ։ Եւ շինեսցեն որդիք այլազգեաց զպարիսպս քո. և թագաւորք նոցա ընծայեսցին քեզ. զի վասն բարկութեան իմոյ հարի զքեզ. և վասն ողորմութեան իմոյ սիրեցի զքեզ։ Եւ բացցին դրունք քո հանապազորդ ի տուէ և ի գիշերի. և մի՛ փակեսցին. կրել ի քեզ զզօրութիւն ազգաց. և զթագաւորս իւրեանց ածցեն առ քեզ։ Զի ազգք և թագաւորք՝ որք քեզ ո՛չ ծառայեսցեն, կորիցեն. և ազգն աւերելով աւերեսցին։ Եւ փառքն Լիբանանու առ քեզ եկեսցեն. սարդիւն և սօսիւ. նոճիւն և մայրիւ՝ առ հասարակ փառաւոր առնել զտեղի սրբութեան իմոյ. և զտեղի ոտից իմոց փառաւորեսցից։

Աղօթք հանդերձ նայլն։

Ընթերցուածս ի Յօբայ։
Գլ՝ 38. Համր՝ 1։

Ո՞վ է դա՝ որ թագուցանէ յինէն զխորհուրդ.

ժողովեալ զբանս ի սրտի· և համարի յինէն թագուցանել։ Պնտեմ իբրև զայր զմէջ քո· հարցից զքեզ՝ և տո՛ւր ինձ պատասխանի։ Ո՞ւր էիր՝ մինչ ես հիմունս արկանէի երկրի· պատմեա՛ ինձ· եթէ խելամուտ իցես հանճարոյ։ Ո՞վ եդ զչափ դորա, թէ գիտիցես· կամ ո՛վ էարկ ի վերայ դորա զլար։ Յո՞յր վերայ հաստատեցան աղխք դորա· ո՞վ է՝ որ էարկ զվէմն անկեան ի դմա։ Յորժամ եղեն աստեղք ծերք՝ ամենայն հրեշտակք աստեղաց օրհնեցին զիս մեծաձայն· և ամենայն հրեշտակք իմ գովեցին։ Փակեցի զծով դրամբք· յորժամ ծընաւ յորովայնէ մօր իւրոյ ելանել։ Եդի նմա զմէգ ի հանդերձ. և զմառախուղ նմա ի խանձարուրս։ Եդի նմա սահմանս՝ եդեալ փականս, և դրունս։ Ասացի՝ ցայդ վայր եկեսցես՝ և այլ մի՛ անցանիցես· այլ այդրէն ի քեզ խորտակեսցին ալիք քո։ Եթէ առ քե՞ւ կարգեցի զլոյսն առաւօտուն· արուսեակն ետես զկարգ իւր։ Հասանել ի վերայ թևոց երկրի· թօթափել զամպարիշտս ի նմանէ։ Կամ թէ քո՞ առեալ զհողն կաւ՝ ստեղծեր կենդանի՝ և խօսուն եդեր զնա յերկրի։ Եւ մերժեցե՞ր զլոյսն յամպարշտաց· զբազուկս ամբարտաւանից խորտակեցե՛ր։ Հասեա՞լ իցես յակն ծովու· և ընդ հետս անդնդոց շրջեցար։ Բանայցեն քեզ ահիւ դրունք մահու· բարապանաց դժոխոց տեսեալ զքեզ սարսեացին։ Խելամուտ իցես լայնութեան առ ի ներքոյ երկնից. ա՛ղէ պատմեա՝ որչափ իցէ։

*Զի՞նչ երկիր իցէ՝ յորում լոյսն ագանիցի՝ կամ զի՞նչ տեղի խաւարի ։ Տանիցիս զիս ի սահմանս Նոցա . եթէ խելամուտ իցես շաւղաց Նոցա ։ Թերևս գիտիցես՝ և ընդ այն ժամանակս ծնեալ իցես . և թիւ աւուրց քոց բազում իցեն ։ Երթեալ իցես ի շտեմարանս ձեան . և զգանձս կարկտի տեսեալ իցես ։ Համբարեալ կայցէ քեզ ի ժամանակս թշնամեաց՝ յօր մարտի՝ և պատերազմի ։ Ուստի՞ ելանիցէ եղեամն . կամ սփռիցի հարաւ ի Ներքոյ երկնից ։ Ո՞ պատրաստեաց զհոսանս սաստիկ անձրևոյ՝ և զճանապարհս ամպրոպաց տեղեալ յերկիր ։ Ուր ո՛չ գոյ մարդ՝ յանապատ յանմարդի ։ Յագեցուցանել զանկոխն , և զանչէն և բղխեցուցանել զբոյս դալարւոյ ։ Ո՞ է հայր անձրևի . և ո՞վ է՝ որ ծնաւ զշաղս ցօղոյ ։ Յո՞յր արգանդէ ելանէ սառն՝ և զեղեամն ո՞ ծնաւ յերկինս ։*

Աղօթք հանդերձ եայլն ։

*Ընթերցուածս ի Յեսուայ որդւոյ Նաւեայ ։*
Գլ՝ 1 . Համ՝ 1 ։

Եւ *եղև յետ վախճանելոյն Մովսիսի ծառայի տեառն . խօսեցաւ տէր ընդ Յեսուայ որդւոյ Նաւեայ պաշտօնէի Մովսէսի՝ և ասէ ։ Մովսէս ծառայ իմ վախճանեցաւ . արդ յարուցեալ անցցես ընդ այդ Յորդանան՝ դու և ամենայն ժողովուրդ քո՝ երկիրն զոր ես տաց որդւոցն Իսրայէլի ։ Յամենայն տեղիս յոր հասանիցեն գնացք ոտից ձերոց՝ ձեզ տաց զնա՝ որպէս խօսեցայ ընդ Մովսիսի ։ Զանապատն . և ըզ-*

Լիբանաներն . մինչև ցգետն մեծ՝ ցգետն Եփրատ . զամենայն երկիրն Քետացւոց մինչև ցծովն վերջին ի մտից արևու՝ ձեզ լիցին սահմանքն ։ Եւ ոչ՛ք կացցէ ընդդէմ ձեր զամենայն աւուրս կենաց քոց . և որպէս էի ընդ Մովսէսի՝ նոյնպէս եղէց և ընդ քեզ . և ո՛չ թողից զքեզ՝ և ո՛չ անտես արարից զքեզ ։ Զօրացի՛ր , և քա՛ջ լեր . զի դու բաժանեսցես ժողովըրդեանդ այդմիկ զերկիրն՝ զոր երդուայ հարցն քոց տալ դոցա ։ Արդ զօրացի՛ր՝ և քաջ լեր յոյժ . պահել և առնել ըստ ամենայն օրինացն որպէս պատուիրեաց քեզ Մովսէս ծառայ իմ . և մի՛ խոտորիցիս ի նոցանէ յաջ կամ յահեակ . զի խելամուտ լիցիս ամենայնի զինչ և գործեսցես ։ Եւ մի՛ մերժիցես զգիր օրինացըս այսորիկ ի բերանոյ քումմէ . և խոկասցես ի դա ի տուէ և ի գիշերի՝ զի իմասցիս առնել զամենայն գրեալսդ ի դմա . և ապա յաջողեսցիս և ուղղեսցես զճանապարհս քո . և ապա խելամուտ լինիցիս ։ Ահա պատուիրեմ քեզ . զօրացի՛ր՝ և քա՛ջ լեր՝ մի՛ զանգիտիցես . և մի՛ երկնչիցիս՝ զի ընդ քեզ է տէր Աստուած քո յամենայն տեղիս ուր և երթայցես ։

Աղօթք հանդերձ նայլն ։

*Ընթերցուածս ի Չորրորդ Թագաւորութեանց ։*
Գլ՝ 2 . հմ՛ 1 ։

Եւ եղև ի վերացուցանել տեառն զԵղիա շարժմամբ յերկինս . և գնացին Եղիա և Եղիսէէ ի Գաղգաղայ ։ Եւ ասէ Եղիա ցԵղիսէէ . նի՛ստ դու աստ .

զի տէր առաքեաց զիս ի Բեթէլ. և ասէ Եղիսէէ. կենդանի է տէր. և կենդանի է անձն քո՝ թէ թողից զքեզ. և եկին ի Բեթէլ: Եւ եկին որդիք մարգարէիցն՝ որք ի Բեթէլ՝ առ Եղիսէէ. և ասեն ցնա. եթէ գիտիցես. զի այսօր առնու տէր զտէրդ ի գլխոյ քումմէ. և ասէ. գիտեմ և ես. լուռ լերուք: Եւ ասէ Եղիա ցԵղիսէէ. Նիստ դու աստ. զի տէր առաքեաց զիս յԵրիքով. և ասէ. կենդանի է տէր. և կենդանի է անձն քո՝ եթէ թողից զքեզ. և եկին յԵրիքով: Եւ մատեան որդիք մարգարէիցն որք յԵրիքով՝ առ Եղիսէէ. և ասեն ցնա. եթէ գիտիցես՝ զի այսօր առնու տէր զտէրդ ի գլխոյ քումմէ. և ասէ. գիտեմ և ես. լուռ լերուք: Եւ ասէ ցնա Եղիա. Նիստ դու աստ. զի տէր առաքեաց զիս ի Յորդանան. և ասէ Եղիսէէ. կենդանի է տէր. և կենդանի է անձն քո՝ թէ թողից զքեզ. և գնացին երկոքեան: Եւ յիսուն այր յորդւոցն մարգարէից. և կացին ի հանդիպոյ ի բացեայ. և երկոքին կացին յեզերն Յորդանանու: Եւ էառ Եղիա զմաշկեակն իւր. և ծալեաց. և եհար զջուրն. և բաժանեցաւ ջուրն յայսկոյս և յայնկոյս. և անցին երկոքեան ընդ ցամաք: Եւ եղև ընդ անցանելն նոցա. ասէ Եղիա. Ե՛ղիսէէ, խնդրեա՛ զինչ արարից քեզ մինչչև վերացեալ եմ ի քէն. և ասէ Եղիսէէ. եղիցի կրկին ոգի քո ի վերայ իմ: Եւ ասէ Եղիա. դժուարինս խնդրեցեր. բայց թէ տեսցես զիս յամբառնալ իմում ի քէն. եղիցի այնպէս. ապա թէ ո՛չ՝ մի՛ եղիցի: Եւ եղև մինչդեռ

գնային նոքա. երթային, և խօսէին. և ահա կառք հրեղէնք և երիվարք հրեղէնք, անջրպետեցին ի մէջ երկոցունց. և վերացաւ Եղիա շարժմամբ յերկինս։ Եւ Եղիսէէ հայէր. և աղաղակէր. հա՛յր. հա՛յր. կառքդ Իսրայէլի և հեծեալք նորա. և այլ ոչ ևս ետես զնա. և բուռն եհար զհանդերձից իւրոց, և պատառեաց յերկուս ծուէնս։ Եւ էառ Եղիսէէ զմաշկեակն Եղիայի զոր ընկէց ի վերայ նորա. և դարձաւ Եղիսէէ. և եկաց առ եզերն Յորդանանու։ Եւ էառ զմաշկեակն Եղիայի. զոր ընկէց ի վերայ նորա. և եհար զջուրն՝ և ասէ. ո՞ւր ես տէր Աստուած Եղիայի ափփով. և եհար զջուրսն. և բաժանեցան յայսկոյս յայնկոյս. և էանց Եղիսէէ։ Իբրև տեսին որդիք մարգարէիցն, որք յԵրիքով ի հանդիպոյն՝ և ասեն, հանգեաւ ոգին Եղիայի ի վերայ Եղիսէի. և եկին ընդ առաջ նորա՝ և երկիրպագին նմա ի վերայ երկրի։ Եւ ասեն ցնա. ահաւասիկ են ընդ ծառայս քո որդիք զօրութեան արք յիսուն. երթիցեն՝ և խնդրեսցեն զտէրն քո. գուցէ էառ զնա հոգին տեառն. և ընկէց զնա առ Յորդանանու՝ կամ ի վերայ միոյ ուրուք լերանց. և կամ ի վերայ միոյ ուրուք բլրոց. և ասէ Եղիսէէ. մի՛ առաքէք։ Եւ բռնադատեցին զնա՝ մինչև ամաչէր. և ասէ՝ առաքեցէ՛ք. և առաքեցին յիսուն արս. և խնդրեցին զերիս աւուրս՝ և ոչ գտին զնա։ Եւ դարձան առ նա. և նա նստէր յԵրիքով. և ասէ ցնոսա Եղիսէէ. ո՞չ ասացի ձեզ՝ թէ մի՛ երթայք։ Եւ ասեն արք քաղաքին ցԵղիսէէ. ա-

հաւասիկ բնակութիւն քաղաքիս բարի է, որպէս և տէրդ իսկ տեսանէ. և ջուրքս չար. և երկիրս անզաւակ: Եւ ասէ Եղիսէէ. առէ՛ք առ իս կուժ մի նոր. և դի՛ք այդր. և բերին առ նա: Եւ ել Եղիսէէ յականս ջրոցն՝ և էարկ անդ աղ. և ասէ՝ այսպէս ասէ տէր. բժշկեմ զջուրս զայսոսիկ. և մի՛ ևս լինիցի այդ ի մահ և յանզաւակութիւն: Եւ բժշկեցան ջուրքն մինչև ցայսօր ըստ բանին Եղիսէի. զոր խօսեցաւ:

Աղօթք հանդերձ նայլն:

Ընթերցուած յԵրեմիայ Մարգարէէ:
Գլ՝ 31. Համ՝ 31:

Ահաւասիկ աւուրք գան ասէ տէր. և ուխտեցից տանդ Իսրայէլի՝ և տանդ Յուդայ ուխտ նոր: Ո՛չ ըստ ուխտին զոր ուխտեցի ընդ հարս նոցա՝ յաւուր յորում առի զձեռանէ նոցա՝ հանել զնոսա յերկրէն Եգիպտացւոց. զի նոքա ո՛չ կացին յուխտին իմում, և ես անփոյթ արարի զնոցանէ՝ ասէ տէր: Այլ այս է ուխտ՝ զոր ուխտեցից տանդ Իսրայէլի յետ աւուրցըն այնոցիկ՝ ասէ տէր. տաց զօրէնս իմ ի միտս նոցա՝ և ի սիրտս նոցա գրեցից զնոսա. և եղէց նոցա յԱստուած. և նոքա եղիցին ինձ ի ժողովուրդ: Եւ մի՛ ևս ուսուցանիցեն իւրաքանչիւր զընկեր իւր. իւրաքանչիւր զեղբայր իւր ասել՝ թէ ծանի՛ր զտէր. զի ամենեքեան ծանիցեն զիս ի փոքրկանց նոցա մինչև ի մեծամեծս՝ ասէ տէր. զի քաւիչ եղէց անիրաւութեանց նոցա. և զմեղս նոցա ո՛չ ևս յիշեցից:

Աղօթք հանդերձ հայլն:

Ընթերցուածս յԵզեկիէլէ Մարգարէէ:
Գլ՝ 37. Համ՝ 1:

Եւ եղև ի վերայ իմ ձեռն տեառն. և եհան զիս ոգւով տեառն. և եդ զիս ի մէջ դաշտին. և այն լի էր ոսկերօք մարդկան: Եւ շրջեցոյց զիս շուրջ զոսկերօքն. և ահա բազում յոյժ էին ի վերայ երեսաց դաշտին. և ցամաքեալք յոյժ: Եւ ա́սէ ցիս՝ որդի մարդոյ՝ իցէ թէ կենդանի լինիցին ոսկերք այդոքիկ. և ասեմ, տէ́ր տէ́ր՝ դու գիտես զայդ: Եւ ասէ ցիս. որդի մարդոյ մարգարէա́ց ի վերայ ոսկերացդ այդոցիկ՝ և ասասցես ցդոսա. ո́սկերք ցամաքեալք՝ լուա́րուք զպատգամս տեառն: Այսպէս ասէ տէր տէր ցոսկերսդ ցայդոսիկ. ահաւասիկ ես ածեմ ի վերայ ձեր շունչ կենդանի: Եւ տաց ի ձեզ մարմինս. և ածից ի վերայ ձեր մարմինս. և ձգեցից ի վերայ ձեր մորթ. և տաց զոգի իմ ի ձեզ. և լինիցիք կենդանիք. և ծանիջիք, եթէ ես եմ տէր: Եւ մարգարէացայ որպէս և հրաման ետ ինձ. և եղև բարբառ ի մարգարէանալն իմում. և ահա շարժումն. և մերձեցաւ ոսկր առ ոսկր. առ իւրաքանչիւր յօդս: Եւ տեսի՝ և ահա ջիլք՝ և մարմինք պատէին. և ձգիւր ի վերայ նոցա մորթ. և շունչ ո́չ գոյր ի նոսա: Եւ ասէ ցիս, մարգարէա́ց որդի մարդոյ՝ մարգարէա́ց ի վերայ շընչոյն. և ասասցես ցշունչն. այսպէս ասէ տէր տէր. ե́կ շունչ ի չորից հողմոց. և փչեա́ց ի մեռեալս յայ-

սոսիկ՝ և կեցցեն։ Եւ մարգարէացայ՝ որպէս և հրաման ետ ինձ տէր․ և եմուտ ի նոսա շունչ․ և եղեն կենդանիք․ և կանգնեցան՝ կացին ի վերայ ոտից իւրեանց, ժողովք բազումք յոյժ յոյժ։ Եւ խօսեցաւ ընդ իս տէր․ և ասէ․ որդի մարդոյ․ ոսկերքդ այդոքիկ ամենայն տունդ Իսրայէլի են․ և գոքա ասեն․ չորացան ոսկերք մեր՝ հատաւ յոյս մեր՝ և մեռաք։ Վասն այդորիկ մարգարէացի՝ և ասասցես ցդոսա․ այսպէս ասէ տէր տէր․ ահաւասիկ ես բացից զգերեզմանս ձեր․ և հանից զձեզ ի գերեզմանաց ձերոց ժողովուրդ իմ․ և տարայց զձեզ յերկիրն Իսրայէլի․ Եւ ծանիջիք՝ թէ ես եմ տէր․ ի բանալ ինձ զգերեզմանս ձեր՝ և հանել զձեզ ի գերեզմանաց ձերոց ժողովուրդ իմ։ Եւ տաց զոգի իմ ի ձեզ․ և կեցջիք կենդանիք․ և եդից զձեզ յերկրին ձերում․ և ծանիջիք թէ ես եմ տէր․ խօսեցայ՝ և արարից․ ասէ տէր տէր։

**Աղօթք հանդերձ եայլն։**

*Եւ ապա երգէ մինն ի բեմն․ և ի վերայ բեմին ընթերցցի զվէրքս։*

*Ընթերցուած ի Դանիէլէ Մարգարէէ։*
Գլ՝ 3. համ՝ 1.

Յամին ութուտասներորդի Նաբուգոդոնոսորայ արքայի․ արար պատկեր ոսկի․ բարձրութիւն նորա վաթսուն կանգուն․ և լայնութիւն նորա կանգուն վեց․ և կանգնեաց զնա ի դաշտին Դէերայ յաշխար-

հին Բաբելացւոց ։ Եւ արձակեաց ժողովել զզօրավարսն՝ և զզօրագլուխս՝ և զկուսակալս՝ զպետս՝ և զբըռնաւորս՝ և զգործակալս՝ և զամենայն իշխանս աշխարհաց գալ ի նաւակատիս պատկերին՝ զոր կանգնեաց արքայն Նաբուգոդոնոսոր ։ Եւ ժողովեցան կուսակալք՝ զօրավարք՝ և զօրագլուխք՝ պետք՝ և բռնաւորք․ մեծամեծք՝ և գործակալք՝ և ամենայն իշխանք աշխարհաց․ գալ ի նաւակատիս պատկերին՝ զոր կանգնեաց արքայն Նաբուգոդոնոսոր․ և կային առաջի պատկերին՝ զոր կանգնեաց արքայն Նաբուգոդոնոսոր ։ Եւ քարոզ կարդայր զօրութեամբ՝ և ասէր՝ Ձեզ ասի ազգք՝ և ազինք՝ և լեզուք ։ Յորժամ լսիցէք զձայն փողոյ՝ սրնգի՝ թմբկի՝ և քնարի՝ տաւղի և երգոց միաբանութեան՝ և ամենայն ազգաց արուեստականաց․ անկանիջիք՝ և երկիրպագանիջիք պատկերին՝ զոր կանգնեաց Նաբուգոդոնոսոր արքայ ։ Եւ որ ոչ անկեալ երկիրպագանիցէ՝ ի նմին ժամու ընկեսցի ի հնոց հրոյն բորբոքելոյ ։ Եւ եղև իբրև լըւան ազգքն զձայն փողոյն՝ սրնգին՝ տաւղի՝ և նուագարանաց․ և ամենայն ազգաց արուեստականաց, անկանէին ամենայն ազգք և ազինք՝ և լեզուք, և երկիրպագանէին պատկերին ոսկւոյ․ զոր կանգնեաց արքայն Նաբուգոդոնոսոր ։ Յայնժամ մատեան արք Քաղդէացիք՝ և եղեն չարախօսք զՀրէից, առ Նաբուգոդոնոսոր ։ Նա ասեն․ արքայ՝ յաւիտեան կաց ։ Դու հրաման ետուր ամենայն մարդոյ՝ որ լուիցէ զձայն փո-

ղոյ՝ և սրնգի՝ և քնարի՝ և տաւղի՝ և նուագարանաց․ և ամենայն ազգաց արուեստականաց։ Եւ որ ո՛չ երկիրպագանիցէ պատկերին ոսկւոյ՝ անկցի ի հնոց հրոյն բորբոքելոյ։ Արդ՝ են աստ արք Հրէայք․ զորըս կացուցեր ի վերայ գործոց աշխարհիս Բաբելացւոց․ Սեդրաք․ Միսաք․ և Աբեդնագով․ որք ո՛չ հնազանդեցան հրամանի քում արքայ․ և զդիս քո ո՛չ պաշտեն․ և պատկերիդ ոսկւոյ՝ զոր կանգնեցեր՝ երկիր ո՛չ պագանեն։ Յայնժամ Նաբուգոդոնոսոր սրտմտութեամբ և բարկութեամբ հրամայեաց ածել զՍեդրաք՝ զՄիսաք՝ և զԱբեդնագով․ և ածին առաջի թագաւորին։ Պատասխանի ետ Նաբուգոդոնոսոր՝ և ասէ ցնոսա․ թէ արդարև Սեդրաք՝ Միսաք՝ և Աբեդնագով․ զդիս իմ ո՛չ պաշտէք՝ և պատկերին ոսկւոյ՝ զոր կանգնեցի, երկիր ո՛չ պագանիցէք։ Բայց եթէ պատրաստք լինիցիք․ զի յորժամ լսիցէք զձայն փողոյ սրնգի՝ և թմբկի․ և քնարի․ և զմիաբանութիւն ամենայն ազգաց արուեստականաց․ անկանիցիք՝ և երկիրպագանիցէք պատկերին՝ զոր արարի ապա թէ ո՛չ պագանիցէք երկիր, ի նմին ժամու անկցիք ի հնոց հրոյն բորբոքելոյ․ և ո՞վ է Աստուած՝ որ փրկեսցէ զձեզ ի ձեռաց իմոց։ Պատասխանի ետուն՝ Սեդրաք՝ Միսաք՝ և Աբեդնագով․ և ասեն ցարքայ Նաբուգոդոնոսոր․ ո՛չ ինչ է պիտոյ վասն բանիդ այդորիկ տալ քեզ պատասխանի։ Զի է մեր Աստուած յերկինս՝ զոր մեքն պաշտեմք․ կարող է փրկել զմեզ

ի հնոցէ հրոյդ բորբոքելոյ. և ի ձեռաց քոց, արքայ, ապրեցուցանել զմեզ։ Ապա թէ ո՛չ՝ այս ինչ յայտնի լիցի քեզ արքայ. զդիս քո մեք ո՛չ պաշտեմք. և պատկերին ոսկւոյ՝ զոր կանգնեցեր՝ երկիր ո՛չ պագանեմք։ Յայնժամ Նաբուգոդոնոսոր լի՛ եղև սրտմտութեամբ. և գոյն երեսաց նորա շրջեցաւ՝ ի վերայ Սեդրաքայ՝ Միսաքայ՝ և Աբեդնագովի. և ասէ՝ ջեռուցէ՛ք զհնոցն եօթնապատիկ՝ զի մինչև ի վախճան այրեսցին։ Եւ արք հինգ զօրաւորք զօրութեամբ՝ կապեցին զՍեդրաք՝ զՄիսաք՝ և զԱբեդնագով՝ արկանել ի հնոց հրոյն բորբոքելոյ։ Յայնժամ արքն այնոքիկ կապեցան պատմուճանօք՝ և վարտեօք. արտախուրակօք՝ և զանկապանօք իւրեանց. և ընկեցան ի մէջ հնոցի հրոյն բորբոքելոյ։ Զի հրաման թագաւորին սաստկանայր. և հնոցն բորբոքիւր եօթնապատիկ առաւել յոյժ։ Եւ երեքին նոքա՝ Սեդրաք՝ Միսաք՝ և Աբեդնագով, անկան ի մէջ հնոցին կապեալք։ Եւ գնային ի մէջ հրոյն. օրհնէին՝ և գովէին զտէր Աստուած։ Յարեաւ Ազարիա. և եկաց յաղօթս այսպէս. եբաց զբերան իւր ի մէջ հրոյն՝ և ասէ։ Օրհնեա՜լ ես տէր Աստուած հարցն մերոց. գովեալ՝ և փառաւորեալ է անուն քո յաւիտեան՝։ Զի արդար ես յամենայնի՝ զոր ածեր ի վերայ մեր՝ և ամենայն գործք քո ճշմարիտ են. և ուղիղ են ճանապարհք քո՝ և ամենայն դատաստան քո ճշմարտութիւն։ Եւ իրաւունս ճշմարտութեան արարեր՝ ըստ ամենայնի՝ զոր արարեր մեզ.

ի միջոջէ բերանոյ. օրհնէին՝ և գովէին՝ և փառաւոր առնէին զԱստուած՝ և ասէին։ Օրհնեա՜լ ես տէր Աստուած հարցն մերոց. գովեալ՝ և առաւել բարձրացեալ յաւիտեան։ Եւ օրհնեալ է անուն սուրբ փառաց քոց. գովեալ և առաւել բարձրացեալ յաւիտեան։ Օրհնեալ ես ի տաճարի փառաց սրբութեան քոյ. գովեալ՝ և առաւել բարձրացեալ յաւիտեան. Օրհնեալ ես՝ որ հայիս յանդունդս. և նստիս ի քերոբէս. գովեալ՝ և առաւել բարձրացեալ յաւիտեան։ Օրհնեալ ես ի վերայ աթոռոյ արքայութեան քոյ. գովեալ՝ և առաւել բարձրացեալ յաւիտեան։ Օրհնեալ ես ի վերայ հաստատութեան երկնից. գովեալ՝ և առաւել բարձրացեալ յաւիտեան։

*Եւ յորժամ եկեսցէ յայն տունն յորում ասէ՝*
*Օրհնեցէք ամենայն գործք տեառն. զտէր օրհ"։*
*Սկսանիցին դպիրքն երգել քաղցր ձայնիւ.*
*Օ՛րհնեցէ՜ք գովեցէ՛ք և բա՜րձր արարէ՜ք զնա յաւիտեա՜ն։*

Օրհնեցէ՜ք ամենայն գործք տեառն զտէր. օրհնեցէ՛ք՝ և բարձր արարէ՛ք զնա յաւիտեան։ Օրհնեցէ՛ք երկինք զտէր. օրհնեցէք՝ և բարձր"։ Օրհնեցէ՛ք հրեշտակք տեառն զտէր. օրհնեցէք՝ և բարձր"։ Օրհնեցէ՛ք ջուրք ամենայն, ի վերոյ քան զերկինս զտէր. օրհնեցէք՝ և բարձր"։ Օրհնեցէ՛ք ամենայն զօրութիւնք տեառն զտէր. օրհնեցէք՝ և բարձր"։ Օրհնեցէ՛ք արեգակն և լուսին զտէր. օրհնեցէք՝ և բար-

ձըր"։ Օրհնեցէ՛ք ամենայն աստեղք երկնից զՏէր. օրհնեցէ՛ք՝ և բարձր"։ Օրհնեցէ՛ք ամենայն անձրևք և ցօղք զՏէր. օրհնեցէ՛ք՝ և բարձր"։ Օրհնեցէ՛ք ամենայն հողմք զՏէր. օրհնեցէ՛ք՝ և բարձր"։ Օրհնեցէ՛ք հուր և տապ զՏէր. օրհնեցէ՛ք՝ և բարձր"։ Օրհնեցէ՛ք ցուրտ և տօթ զՏէր. օրհնեցէ՛ք՝ և բարձր"։ Օրհնեցէ՛ք եղեամն և ձիւնաբեր զՏէր. օրհնեցէ՛ք՝ և բարձր"։ Օրհնեցէ՛ք սառն և պարզ զՏէր. օրհնեցէ՛ք՝ և բարձր"։ Օրհնեցէ՛ք պաղ և ձիւն զՏէր. օրհնեցէ՛ք՝ և բարձր"։ Օրհնեցէ՛ք տիւք և գիշերք զՏէր. օրհնեցէ՛ք՝ և բարձր"։ Օրհնեցէ՛ք լոյս և խաւար զՏէր. օրհնեցէ՛ք՝ և բարձր"։ Օրհնեցէ՛ք ամպք և փայլատակունք զՏէր. օրհնեցէ՛ք՝ և բարձր"։ Օրհնեսցէ՛ երկիր զՏէր. օրհնեսցէ՝ և բարձր արասցէ"։ Օրհնեցէ՛ք լերինք և բարձունք զՏէր. օրհնեցէ՛ք՝ և բարձր"։ Օրհնեցէ՛ք ամենայն բոյսք երկրի զՏէր. օրհնեցէ՛ք՝ և բարձր"։ Օրհնեցէ՛ք աղբիւրք զՏէր. օրհնեցէ՛ք՝ և բարձր"։ Օրհնեցէ՛ք ծովք և գետք զՏէր. օրհնեցէ՛ք՝ և բարձր"։ Օրհնեցէ՛ք կէտք և ամենայն կայտառք՝ որք ի ջուրս զՏէր. օրհնեցէ՛ք՝ և բարձր"։ Օրհնեցէ՛ք թռչունք երկնից զՏէր. օրհնեցէ՛ք՝ և բարձր"։ Օրհնեցէ՛ք ամենայն գազանք՝ և անասունք զՏէր. օրհնեցէ՛ք՝ և բարձր"։ Օրհնեցէ՛ք որդիք մարդկան զՏէր. օրհնեցէ՛ք՝ և բարձր"։ Օրհնեսցէ՛ Իսրայէլ զՏէր. օրհնեսցէ և բարձր արասցէ"։ Օրհնեցէ՛ք քահանայք զՏէր. օրհնեցէ՛ք՝ և բարձր"։

Օրհնեցէ՛ք ծառայք տեառն զտէր. օրհնեցէք և բարձըր”: Օրհնեցէ՛ք հոգիք և շունչք արդարոց զտէր. օրհնեցէք՝ և բարձր”: Օրհնեցէ՛ք սուրբք և խոնարհք սրտիւք զտէր. օրհնեցէք՝ և բարձր”: Օրհնեցէ՛ք Անանիա՝ Ազարիա՝ և Միսայէլ զտէր. օրհնեցէք՝ և բարձր արարէք զնա յաւիտեան: Զի փրկեաց զմեզ ի դժոխոց՝ և ի ձեռաց մահու ապրեցոյց զմեզ. և փրկեաց զմեզ ի հնոցէս. և ի միջոյ բորբոքեալ բոցոյս. և ի միջոյ հրոյս փրկեաց զմեզ: Գոհացարո՛ւք զտեառնէ՝ զի քաղցր է՝ զի յաւիտեան է ողորմութիւն նորա: Օրհնեցէ՛ք ամենայն պաշտօնեայք տեառն զԱստուածն աստուծոց. օրհնեցէ՛ք՝ և գոհացարո՛ւք՝ զի յաւիտեան է ողորմութիւն նորա:

*Ապա՝ բացցեն զսեղանն. և սարկաւագն քարոզեսցէ բարձր ձայնիւ, Օրհնեա տէր, և ժամարարն՝ Օրհնեալ թագաւորութիւն Հօր և Որդւոյ”:*

*Ճաշու ժամամուտ:*

Քրիստոս յարեաւ ի մեռելոց. մահուամբ զմահ կոխեաց. և յարութեամբն իւրով մեզ զկեանս պարգեւեաց. նմա փառք յաւիտեանս ամէն:

Փոխ

Գովեա երուսաղէմ զտէր:
Եւ օրհնեա զԱստուած քո սիոն:

*Ճաշու շարական ԱՉ:*

Յարեաւ Քրիստոս ի մեռելոց. ալէլուիա:

Ծնկայք ժողովուրդք, երգեցէ՛ք տեառն. ալէլու-իա՛։ Ցարուցելո՛յն ի մեռելոց ալէ՛լուիա. որ զաշ-խարհս լուսաւո՛րեաց. ալէլու՛իա՛։

*Զկնի՝ սարկաւագն ձայնեացէ, Պռօսխումէ. և ըն-կամնեցէն ասել զաւագ Սուրբ Աստուածն՝ որ յարեար ի մեռելոց։*

*Ճաշու Ընթերցուածք։*

*Սաղմոս կցորդ։*

Քեզ վայելէ օրհնութիւն Աստուած ի սիօն, և քեզ տացին աղօթք յերուսաղէմ։

*Պօղոսի Առաքելոյն ի Կորնթացւոց Առաջին Թղթոյն է ընթերցուածս։*

Գլ՝ 15. հմր՝ 1։

Ցուցանեմ ձեզ եղբարք զաւետարանն իմ, զոր աւետարանեցի ձեզ. զոր և ընկալարուք. յոր և հաստատեալ էք։ Որով ապրեցայքն. որով բանիւ աւետարանեցի ձեզ՝ թէ ունիցիք. բայց եթէ ի զուր ինչ հաւատացիք։ Զի ես ձեզ զայն նախ աւանդեցի՝ զոր և եսն ընկալայ. թէ և Քրիստոս մեռաւ վասն մեղաց մերոց, ըստ գրոց։ Եւ զի թաղեցաւ. թէ և յարեաւ յաւուր երրորդի ըստ գրոց։ Եւ թէ երևեցաւ Կեփայի. և ապա մետասանիցն։ Ապա երևեցաւ աւելի ևս քան զհինգհարիւր եղբարց միանգամայն. յորոց բազումք կան մինչև ցայժմ, և ոմանք ննջեցին։ Եւ ապա երևեցաւ Յակոբայ. ապա առաքելոցն ամենեցուն։ Հուսկ յետոյ քան զամենեսին

իբրև անարգի միոջ՝ երևեցաւ և ինձ։ Զի ես իսկ եմ տրուպն առաքելոց. որ չեմ իսկ արժանի թէ կոչեցայց առաքեալ. զի հալածեցի զեկեղեցին Աստուծոյ։ Այլ շնորհօքն Աստուծոյ եմ, զինչ և իցեմ. և շնորհք Նորա՝ որք յիս՝ ընդունայն ինչ ո՛չ եղեն. այլ առաւել քան զնոսա ամենեսին վաստակեցայ. և ո՛չ եթէ ես՝ այլ շնորհն Աստուծոյ՝ որ ընդ իս։ Արդ՝ եթէ ես՝ և եթէ նոքա՝ այսպէս քարոզեցաք. և դուք այսպէս հաւատացիք։

Ալէլուիա ալէլուիա։

Յարեաւ Աստուած և ցրուեցան ամենայն թշնամիք Նորա. փախեան ատելիք Նորա յերեսաց Նորա։

Սրբոյ Աւետարանիս Յիսուսի Քրիստոսի՝ որ ըստ Մատթէոսի։

Գլ՝ 28. համր՝ 1։

Վասն Յարութեան Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի։

Եւ յերեկոյի շաբաթուն յորում լուսանայր միաշաբաթին. եկն Մարիամ Մագդաղենացի, և միւս Մարիամն տեսանել զգերեզմանն։ Եւ ահա շարժումն մեծ եղև. զի հրեշտակ Տեառն իջեալ յերկնից՝ մատուցեալ ի բաց թաւալեցոյց զվէմն ի դրանց անտի. և նստէր ի վերայ նորա։ Եւ էր տեսիլ նորա իբրև զփայլակն. և հանդերձ նորա սպիտակ իբրև զձիւն։ Եւ յահէ անտի նորա խռովեցան պահապանքն։ և եղեն իբրև զմեռեալս։ Պատասխանի ետ հրեշտակն և ասէ ցկանայսն. մի՛ երկնչիք դուք. գիտեմ զի զՅի-

տուս զխաչելեալն խնդրէք։ Չէ աստ. քանզի յարեաւ, որպէս ասացն. եկա՛յք և տեսէ՛ք զտեղին՝ ուր կայր։ Եւ վաղվաղակի երթա՛յք ասացէ՛ք աշակերտացն Նորա թէ յարեաւ՝ և ահա յառաջանայ քան զձեզ ի Գալիլեայ. անդ տեսանիցէք զնա. ահա ասացի ձեզ։ Եւ ելեալ վաղվաղակի ի գերեզմանէ անտի ահիւ և խնդութեամբ բազմաւ՝ ընթանային պատմել աշակերտացն։ Եւ ահա պատահեցաւ Նոցա Յիսուս և ասէ՝ ո՛ղջ էք. և Նոքա մատուցեալ կալան զոտս Նորա՝ և երկիրպագին Նմա։ Յայնժամ ասէ ցնոսա Յիսուս՝ մի՛ երկնչիք. երթա՛յք ասացէ՛ք եղբարցն իմոց՝ զի երթիցեն ի Գալիլեայ՝ և անդ տեսցեն զիս։ Իբրև Նոքա գնացին, ահա ոմանք ի զօրականացն եկին ի քաղաքն՝ և պատմեցին քահանայապետիցն զամենայն որ ինչ եղեն։ Եւ Նոքա ժողովեալ հանդերձ ծերովքն, խորհուրդ առեալ՝ արծաթ յոյժ ետուն զօրականացն։ Եւ ասեն. ասասջի՛ք՝ եթէ աշակերտքն Նորա եկեալ գիշերի, գողացան զնա՝ մինչ մեք ի քուն էաք։ Եւ եթէ լուր լիցի այդ առ դատաւորն, մեք հաճեսցուք զնա՝ և զձեզ անհոգս արասցուք։ Եւ Նոցա առեալ զարծաթն՝ արարին որպէս ուսանն. և ել համբաւս այս ի Հրէից մինչև ցայսօր։ Իսկ մետասան աշակերտքն գնացին ի Գալիլեայ, ի լեառնն ուր ժամադիր եղև Նոցա Յիսուս։ Իբրև տեսին զնա՝ երկիրպագին Նմա. և ոմանք երկուացան։ Եւ մատուցեալ Յիսուս խօսեցաւ ընդ Նոսա և ասէ. տուաւ ինձ ամենայն իշխանութիւն յերկինս և յերկրի. որ-

որպէս առաքեաց զիս Հայր, և ես առաքեմ զձեզ։ Գնացէք այսուհետև՝ աշակերտեցէք զամենայն հեթանոսս. մկրտեցէք զնոսա յանուն Հօր՝ և Որդւոյ՝ և Հոգւոյն Սրբոյ։ Ուսուցէք նոցա պահել զամենայն՝ զոր ինչ պատուիրեցի ձեզ. և ահաւասիկ ես ընդ ձեզ եմ զամենայն աւուրս, մինչև ի կատարած աշխարհի։

Եւ ապա Հաւատամք ի մի Աստուած։ Սրբասացութիւնն՝ Ով է որպէս Տէր։

Իսկ զկնի արձակման պատարագին՝ սկսանիցեն Նախատօնակ ասել անպատճառ. Շարական ԱԶ, Այսօր յարեաւ. իւր սարքն։ (Տես ի վաղուեան աւուր)։

Զկնի փոխոց. Խնդրեսցուք։ Կեցո տէր՝ յոյժն։

Աղօթք. Թագաւոր խաղաղութեան։

Տես ի Թիւն. 114:

Եւ արձակին ի խաղաղութիւն։





# ԶԱՏԻԿ ԿԻՐԱԿԷ

## ԿԱՆՈՆ

## ՅԱՐՈՒԹԵԱՆ ՏԵԱՌՆ ՄԵՐՈՅ ՅԻՍՈՒՍԻ ՔՐԻՍՏՈՍԻ



Ի գիշերին հսկումն է. և տիւն զբերումն ի վերայ ծածկոցին յատենին: Կանոնագլուխ՝ ոչ. Դատեա տէր զայնոսիկ". (Տես ի Ըսկ. 16):

*Հանգստեան Շարական՝ Ա.Զ. Քեզ վայելէ Աստուած:*
*(Տես ի 28 էն ց 31. Թիւն):*

*Սաղմոս*

*Տէր ո՞վ կացցէ ի խորանի քում, կամ ո՞վ բնակեսցէ ի լեառն սուրբ քո:*

*Որ գնայ անբիծ գործէ զարդարութիւն, խօսի ըզճշմարտութիւն ի սրտի իւրում:*

*Որ ոչ նենգաւորեաց լեզուաւ իւրով, և չար ընկերի իւրում ոչ արար:*

*Նախատինս ի մերձաւորաց նա ոչ առնու. արհամարհեալ է առաջի նորա չարագործն:*

Զերկիւղածս տեառն՟ փառաւոր առնէ, որ երդնու ընդ ընկերի իւրում և ոչ ստէ։

Զարծաթ իւր ի վարձու ոչ տայ, և կաշառս ի վերայ իրաւանց ոչ առնու. որ զայս արասցէ՝ նա մի՛ սասանեսցի յաւիտեան։

Ալէլուիա Օ՛րթէ

Խաղաղութիւն ամենեցուն

Եւ ընդ հոգւոյդ քում. Երկիւղածութեամբ լուարուք։

Սրբոյ Աւետարանիս Յիսուսի Քրիստոսի՝ որ ըստ Յոհաննու։

Գլ՝ 10. հմր՝ 22։

Փառք քեզ Տէր Աստուած մեր. Պռօսխումէ. Ասէ Աստուած։

Ի ժամանակի Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի։

Եղեն յայնժամ նաւակատիքն յԵրուսաղէմ, և ձմեռն էր. և շրջէր Յիսուս ի տաճարին՝ ի սրահին Սողոմոնի։ Շուրջ եղեն զնովաւ Հրէայքն և ասեն. մինչև յե՞րբ թափես զոգիս մեր, եթէ դու ես Քրիստոսն՝ ասա՛ մեզ համարձակ։ Պատասխանի ետ նոցա Յիսուս և ասէ. ասացի ձեզ՝ և ո՛չ հաւատայք ինձ. զգործսն զոր ես գործեմ յանուն Հօր իմոյ՝ նո-

քին իսկ վկայեն վասն իմ։ Այլ դուք ո՛չ հաւատայք, զի չէ՛ք յոչխարաց անտի իմոց։ Ոչխարք իմ ձայնի իմում լսեն, և ես ճանաչեմ զնոսա, և զկնի իմ գան. և ես տամ Նոցա զկեանսն յաւիտենականս. և մի՛ կորիցեն ի յաւիտեան. և մի՛ ոք յափշտակեսցէ զնոսա ի ձեռաց իմոց։ Հայրն իմ՝ որ ետ ինձ զնոսա, մեծ է քան զամենայն, և ոչ ո՛ք կարէ յափշտակել ի ձեռաց Հօր իմոյ։ Ես և Հայր իմ մի եմք։ Վէմս առին Հրէայքն՝ զի քարկոծ արասցեն զնա։ Պատասխանի ետ Նոցա Յիսուս. բազում գործս բարիս ցուցի ձեզ ի Հօրէ իմմէ. վասն որո՞յ գործոյ ի Նոցանէ քարկոծ առնէք զիս։ Պատասխանի ետուն Նմա Հրէայքն. վասն բարւոյ գործոյ ո՛չ առնեմք զքեզ քարկոծ, այլ վասն հայհոյութեան. և զի դու մարդ ես, և զանձն քո Աստուած առնես։ Պատասխանի ետ Նոցա Յիսուս. ո՞չ յօրէնս ձեր գրեալ է. ես ասացի թէ աստուածք իցէք. իսկ եթէ զնոսա աստուածս ասէ, առ որս բանն Աստուծոյ եղև. և չէ՛ մարթ եղծանել զգրոյն։ Իսկ զոր Հայր սրբեաց՝ և առաքեաց յաշխարհ, դուք ասէք՝ թէ հայհոյես. զի ասացի՝ թէ Որդի Աստուծոյ եմ։ Եթէ ո՛չ գործեմ զգործս Հօր իմոյ, մի՛ հաւատայք ինձ։ Ապա թէ գործեմ, թէև ինձ ո՛չ հաւատայք, սակայն գործոցն հաւատացէ՛ք. զի գիտասջիք և ծանիջիք՝ եթէ Հայր յիս և ես ի Հայր։ Դարձեալ խնդրէին զնա ունել, և ել ի ձեռաց Նոցա։ Եւ գնաց միւսանգամ յայնկոյս Յորդանանու՝ ի տե-

զէն, ուր էր Յովհաննէս զառաջինն՝ և մկրտէր, և անդ լինէր: Եկին բազումք առ նա՝ և ասեն. զի Յովհաննէս նշան ինչ ոչ արար: Բայց զամենայն, զոր ասաց Յովհաննէս վասն նորա, ճշմարիտ էր. և բազումք հաւատացին ի նա անդ:

Երգ՝ Ուրախ գործեալ: (Տես ի Թիւն. 34):

ԵՐԳ

Ուրախացան ազգք մարդկան. յորժամ լուան զքո յարութիւնդ. նորափեսուր զարդարեցան ի յարութեան սուրբ Միածնիդ. ողորմած տէր ողոր":

ՄԱՂԹԱՆՔ

Հոգւոցն հանգուցելոց: Եւ ևս խաղաղ.
Քրիստոս Որդի: (Տես ի Թիւն. 36):



Օրհնեալ Տէր մեր Յիսուս Քրիստոս ամէն:
Հայր մեր որ յերկինս ես":



ՄԱՂԹԱՆՔ

Տէր Յիսուս Քրիստոս. Հրաշափառ Յարութեանդ շնորհիւ". (Տես ի Թիւն. 37):

ՔԱՐՈԶ

Եւ ևս խաղաղութեան": Օրհնութիւն և փառք":

*Եւ զգեցցին միաբան քահանայքն և եկեսցեն յառ-աւտնն. և սկսանիցեն Օրհնութիւն ԱՁ:*

Այսօր յարեաւ ի մեռելոց փեսայն անմահ և երկնաւոր. քեզ աւետիք խնդութեան հարսն ի յերկրէ եկեղեցի. օրհնեա ի ձայն ցնծութեան զԱստուած քո սիովն: Այսօր անճառ լոյսն ի լուսոյ լուսաւորեաց զմանկունս քո, լուսաւորեալ Երուսաղէմ, քանզի յարեաւ լոյս քո Քրիստոս. օրհ": Այսօր խաւարն անգիտութեան հալածեցաւ երրեակ լուսովն. և քեզ ծագեաց լոյս գիտութեան յարուցեալն ի մեռելոց Քրիստոս. օրհ":

Այսօր զատիկ մեր զենմամբ Քրիստոսի. արասցուք տօն ցնծութեամբ նորոգեալքս ի հնութենէ մեղաց ասելով, Քրիստոս յարեաւ ի մեռելոց:

Ընդ լուսանալ միաշաբաթին կանխեցին կանայքն ի գերեզմանն, ի խնկել զանապական մարմինն: Եւ գտին զվէմն բարձեալ ի դրանց գերեզմանին, և լուեալ բարբառ ի հրեշտակէն, եթէ յարեաւ Քրիստոս և խափանեաց զմահ: Եւ հանդիպեալ քո տէր առաքելոցն, և տուեալ զողջոյն կենդանարար, առաքեցեր զնոսա ի փըր-

կութիւն տիեզերաց։

Փառք յարութեան քո տէր։ Պատրանօք նախաստեղծին մերկացաք ի լուսոյն. իսկ յարութեամբ միածնիդ զգեցաք զանմահութիւն. փառք"։ Խաբանօք փայտին ճաշակեցաք զմահ. իսկ ի փայտէն կենաց նորոգեցաք ամենեքեան. փառք"։

Ընդ կանանցն իւղաբերօն առ քեզ առաւօտեմբք կենդանիդ յաւիտենից Քրիստոս, ընկալ և զմերս փոխանակ խնկոցն զօրհնաբանութիւնս։ Փոխանակ սուրբ աւետաւոր զուարթնոյն զգթութիւն քո մեզ հանդիպեսցի յուսով գիտութեան, մխիթարել զհոգիս և լուսաւորել։ Ընդ նոսին աւետարանութեամբ քարոզեսցուք ըզքո միայն զըսքանչելիսդ. որ յարեար ի մեռելոց ամենազօր թագաւոր անմահ։

Որ անճառ էութեամբ Հօրդ ես փառակից. չարչարիլ մարմնով յանձն առեր վասն մեր. մշտընջենաւոր օրհնութեամբ ի հրեշտակաց օրհնեալ ես տէր։ Որ էակդ ես ընդ Հօր և Սուրբ Հոգւոյն, խաչեցար և թաղեցար կամաւ Հօր վասն մեր.

մըշտընջե"։ Որ միասնգամ գալոց ես հայրենի փառօք, շնորհելով Աստուածապէս յարութիւն տիեզերաց. յամենայն արարածոց յաւիտենից օրհ"։

Հոգ. Որ ի քրովբէական կառսըդ հանգչիս, այսօր իջեր յերկնից ի դաս առաքելոցըն Սուրբ Հոգի. օրհնեալ ես թագաւոր անմահ։ Որ գընաս ի վերայ թեւոց հողմոց, այսօր ի հրեղէն լեզուս բաժանեալ հանգեար յառաքեալսըն Սուրբ Հոգի. օրհ"։ Որ խնամես տեսչութեամբ զքո զարարածս, այսօր եկիր ի հաստատել զեկեղեցի քո Սուրբ Հոգի. օրհ"։

Զհոգիս ծառայից քոց Քրիստոս, ընկալ ի դաս անդրանկաց գրելոց յերկինս։ Ընկալ վասըն սոցա ըզբանաւոր պատարագս ի մէնջ. եւ շնորհեա նոցա ըզթողութիւն գտանել յաւուրն յետնում։ Հաշտեա ի ձեռըն սուրբ մարմնոյ եւ արեան քո տէր. եւ պարգեւեա նոցա դասել յաջակողմեանըն քո։

Ցարուցելոյն ի մեռելոց բնակարան մայր եւ կոյս, որ ըզնընջեցեալըն յԱդամայ կենագործէ անապական. զքեզ մեծացուցանեմք որ օրհնեալդ ես ի կանայս։ Արարողին երկնի եւ երկրի ե-

զեր տաճար և առագաստ, որ ընդընծեցեալ լոյն մայր հրեղէն Նորոգէ. գքեզ մեծ"։ Կերակրողդ տիեզերաց արքունեցեր ընդ քո սուրբ ընդկեաքեն, որ ընդընջեցեալ յուն մեր վերընտիր Նորոգէ. գքեզ"։

Որ զանարատ բազուկս քո ի խաչին տարածեցեր Քրիստոս Աստուած, և նշան յաղթութեան եղուր մեզ. սովաւ ընդկեանըս մեր պահեա։ Որ զաշխարհակեցոյց բազկատարածութիւն խաչի քո Քրիստոս Աստուած զաւազան զօրութեան եղուր մեզ. սովաւ"։ Որ ընդմտեալ ի ճաշակմանէ փայտին յանցանաց, կենաց փայտիւն կենագործեցեր. սովաւ"։

Փառք Հօր եւ Որդւոյ եւ Հոգւոյն Սրբոյ.

Այսօր հրեշտակըն լուսափայլ ի յերկնից իջեալ զարհուրեցոյց ըզպահապանսն, և սուրբ կանանցըն քարոզէր ասելով. Քրիստոս յարեաւ ի մեռելոց։

Այժմ եւ միշտ եւ յաւիտեանս յաւիտենից ամէն:

Այսօր Նոր Իսրայէլ կոչեցեալք ի Քրիստոս. ազատեալք արեամբ գառինն Աստուծոյ, պարեացուք ընդ երկնայնոցն ասելով. Քրիստոս"։

ՄԱՂԹԱՆՔ

Փառք հրաշափառ Յարութեանդ"։ (Տես ի թիւն. 42)

Քարոզ՝ Վասն ի գիշերի։ Յաղօթք՝ Ի գիշերի և ի. (Տես ի Թիւն. 42):

Ալէլուիա. ալէլուիա. ալէ՛լուիա։

Ողորմութեա՜մբ տեառն լի եղև երկիր. և բանիւ տեառն երկինք հաստատ՜եցան։ Եւ հոգւո՜վ բերանոյ նորա ամենայն զօրութի՛ւնք նոցա՜։

Ալէ. Յարեա՜ւ Աստուած և ցրուեցան ամենայն թշնամի՛ք նորա։ Փախեա՜ն ատելիք նորա յերեսա՛ց նորա՜։

Փա՜ռք և եր”. Ա՜յժմ և միշտ և”։

Դա՛սք հրեշտակաց օրհնեն ըզքեզ Քրիստոս ալէ՛. լուիա՜. մարդկա՜ն ազգ սաղմոսեն քեզ. ալէլո՛ւ. իա՜. ալէ՛լո՜ւիա՜։

Մաղթանք՝ Ի գիշերի և ի տուն։ (Տես ի Թիւն. 45):

---

*Կարգաւորութիւն հասարակաց աղօթից առաւօտու ժամուն։ Որ կատարի ի դէմս Որդւոյն Աստուծոյ. որ երևեցաւ իւղաբերիցն։*

---

Օրհնեալ Տէր մեր Յիսուս Քրիստոս. ամէն։
Հայր մեր որ յերկինս ես”։

Լցաք առաւօտու ողորմութեամբ քով. ցնծացաք և ուրախ եղաք զամենայն աւուրս կենաց մերոց։

Ուրախ եղաք փոխանակ ։ (Տես ի Թիւն . 46) ։

ՀԱՐՑ Գ. Կ ։

Ա՛յսօ՛ր մեծ աւե՛տի՜ք աղամա՛յ նախա՛ստեղծի՜ն ա՜ւա՜ւ . արի որ նը՛նջե՜ս լուսատո՛ւ եղև քեզ յա՛-րուցեա՜լըն Քրի՛ստո՛ս . Աստը՛ւա՜ծ հա՛րցըն մե-րո՜ց ։ Ա՛յսօ՛ր ձայն աւե՛տե՜աց յեւայի՛ գոչե՜ն ըր-ստլի՜ս գը՛ստեղըն իւղա՛բե՜րք . տեսա՛ք յարուցեա՛լ ըզյարութի՛ւնըն քո՜ ըզՔրի՛ստո՛ս . Աստը՛ւա՜ծ ” ։ Ա՛յսօ՛ր հրեշտակք յե՛րկնի՜ց ի՛ջեա՛լ տան զաւե՛տի՜ս մա՜րդկա՜ն . յա՛րեաւ խաչե՛լեա՜լն և յարո՛յց ըզձե՜զ ընդ ի՛նքեա՛ն . Աստը՛ւա՜ծ հա՛ր ” ։

Գ . Ըզտէր օ՛րհնեցէ՜ք և՛ բարձր արա՛րէ՜ք ըզնա՛ յա՛ւիտեա՜ն ։

Փառք Հօ՜ր եւ Որդւո՜յ եւ Հոգւոյն Սրբոյ:

Ա՛յսօր տէրըն մե՜ր յա՛րեա՜ւ . ե՛կա՛յք պարե-ցո՛ւք ընդ հրեշտա՜կս յաղթական ե՛րգո՛վ . օ՛րհ ” ։

Այժմ եւ մի՜շտ եւ յաւիտեանս յաւիտենից . ամէն :

Ա՛յսօր սիւն լուսո՜յ ծա՛գեա՜ց սո՛ւրբ եկե՜ղե՜ց-ւո՜յ յարուցեա՛լն ի մեռելոց Քրի՛ստո՛ս ։ օ՛րհ ” ։

ՔԱՐՈԶ

Եկեալքս ամենեքեան ի սուրբ ։ (Տես ի Թիւն . 52):

Մեծացուսցէ Գ. Կ ։

Ա՛ստուածածի՛ն տաճա՜ր լո՛ւսոյ որ մարմնո՛վ

պա՛րագրեալ անճառա՛բար ծընա՛ր ըզբանն Ա՛ստը-ւա՛ծ զքե՛զ բարեբա՛նեա՛լ մեծա՛ցուցանե՛մք։ Ուրա՛խ լեր և բերկրեա մա՛յր և՛ կոյս. քանզի ծընեա՛լն ի՛ կուսէդ ա՛յսօր վե՛րըստի՛ն յարութեամբ ծընա՛ւ ի կոյս գերե՛զմա՛նէ՛ն. զքեզ"։

Փառք Հօր եւ". Այժմ եւ միշտ":

Ցընծա՛ և զուարճացի՛ր հարսն ի յերկրէ՛ ե՛րկ-նից. քանզի այսօ՛ր ե՛րկնայնոցն իջեա՛լ տային քեզ զա՛ւետիս յա՛րութեան միածնի ո՛րդւո՛յ քո՛. զքե՛զ"։

*Քարոզ՝ Վասն սուրբ տեղւոյս. և այլն յիւղաբերից Աւետարանն. (Տես ի 135 էն ց 136. Թիւն։)*

Սրբոյ Աւետարանիս Յիսուսի Քրիստոսի՝ որ ըստ Յօհաննու։

Գլ՝ 20. համ՝ 1։

*Վասն Յարութեան Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի։*

Եւ ի միաշաբաթոջն Մարիամ Մագդաղենացի գայ առաւօտուն ընդ արշալուսն ի գերեզման անդր, և տեսանէ զվէմն բարձեալ ի դրանց գերեզմանին։ Ապա ընթանայ՝ և գայ առ Սիմոն Պետրոս և առ միւս աշակերտն՝ զոր սիրէրն Յիսուս, և ասէ ցնոսա. բարձին զտէր ի գերեզմանէ անտի, և ոչ գիտեմ՝ ուր եդին զնա։ Ել Պետրոս և միւս աշակերտն՝ և գային ի գերեզմանն։ Ընթանային երկոքեան ի միասին. և միւս աշակերտն յառաջեաց ընթացաւ վաղագոյն

քան զՊետրոս՝ և եկն նախ ի գերեզմանն: Եւ խոնարհեալ տեսանէ՝ զի կային անդ կտաւքն, բայց ի ներքս ոչ եմուտ: Եկն և Սիմոն Պետրոս՝ որ գայրն զկնի նորա. և եմուտ ի գերեզմանն, և տեսանէ ըզկտաւսն՝ զի կային անդ. և վարշամակն որ էր ի գըլուխ նորա՝ ոչ ընդ այլ կտաւսն կայր, այլ ուրոյն ծալեալ ի մի կողմն: Յայնժամ եմուտ և միւս աշակերտն, որ եկեալն էր յառաջագոյն ի գերեզմանն, ետես և հաւատաց. զի չև ևս գիտէին զգիրս՝ թէ պարտ է նմա ի մեռելոց յառնել: Չոգան դարձեալ առ միմեանս աշակերտքն: Բայց Մարիամ կայր արտաքոյ գերեզմանին՝ և լայր. և մինչդեռ լայր՝ խոնարհեցաւ ի գերեզմանն, և տեսանէ երկուս հրեշտակըս ի սպիտակս, զի նստէին մի ի սնարից և մի յանոտից՝ ուր կայր մարմինն Յիսուսի: Եւ նոքա ասեն ցնա. կին դու զի՞ լաս. ասէ ցնոսա. զի բարձին զտէրն իմ ի գերեզմանէ աստի, և ոչ գիտեմ՝ ուր եդին զնա: Զայս իբրև ասաց, դարձաւ ի թիկունս կոյս, և տեսանէ զՅիսուս զի կայր. և ոչ գիտէր թէ Յիսուս իցէ: Ասէ ցնա Յիսուս. կին դու՝ զի՞ լաս, զո՞ խնդրես. Նմա այսպէս թուեցաւ՝ թէ պարտիզպանն իցէ, ասէ ցնա. տէ՛ր՝ եթէ դու բարձեր զնա՝ ասա ինձ ուր եդիր զնա, զի ես առից ըզնա: Ասէ ցնա Յիսուս. Մարիամ, և նա դարձաւ, և ասէ ցնա Եբրայեցերէն. Ռաբունի, որ թարգմանի՝ Վարդապետ: Ասէ ցնա Յիսուս, մի՛ մերձենար յիս, զի չև ևս ելեալ եմ առ Հայր իմ. այլ երթ դու առ

եղբարսն իմ, և ասա ցնոսա. ելանեմ ես առ Հայրն իմ՝ և առ Հայր ձեր, և Աստուածն իմ՝ և Աստուած ձեր։ Գայ Մարիամ Մագդաղենացի՝ և պատմէ աշակերտացն, եթէ տեսի նա զտէր, և զայս ինչ ասաց ցնա։

## ԵՐԳ

Փառք յարութեան քոյ տէր. ոչ դադարեսցայց Քրիստոս օրհնել զքեզ զամենայն աւուրս կենդանութեան իմոյ։

Փառք յարութեան քո տէր. ոչ դադարեսցայց Յիսուս գովել զքեզ զամենայն աւուրս կենդանութեան իմոյ։

Ես ոչ դադարեսցայց փրկիչ փառաւորել զքեզ զամենայն աւուրս կենդանութեան իմոյ։

Ի գիշերի համբարձէք ըզձեռս ձեր ի սըրբութիւն. և օրհնեցէք ըզտէր։

Աստ օրհնեցէք ամենայն ծառայք տեառն զտէր ի սըրբութիւն. և օրհնեցէք ըզտէր։

Լուսապայծառ հրեշտակըն նըստեալ ի կենդանատու գերեզմանին։ Եւ աւետէր կանանցն յարեաւ Աստըւած։

Քարոզ՝ Զուարճացեալքս։ Աղօթք՝ Ամենակեցոյց։
(Տես ի Թիւ. 138)։

Ողորմեա Դկ։

Այսօր ըզգաստեք չարչարանացն ելից իսրայէլի փոխեցեր ի փըրկութիւն հոգւոց զամենայն սուրբ յարութեամբ քո Քրիստոս։ Այսօր ընդ արեանցն օրինակին անբան զառանցն զենմանց պարգեւեցեր մեզ զառն Աստուծոյ զարիւնըդ քո փըրկական։

Փառք Հօր եւ". Այժմ եւ միշտ":

Այսօր ընդ անդրանկացն ազատութեան ազատեցեր ըզգերեալսն. պտուղ կենաց նընջեցելոց, եւ անդրանիկ մեռելոց։

ՔԱՐՈԶ

Երկրպագեմք քեզ տէր։ (Տես ի Թիւն. 58):

Իսկ յորժամ զՏէր յերկնիցն յետին տունն ասասցեն. ամենեքեան համբուրեսցեն զմիմեանս ասելով՝ Ձեզ և մեզ մեծ աւետիք. Քրիստոս յարեաւ ի մեռելոց։

Տէր յերկնից Դկ։

Այսօր հրեշտակք ի բարձունս ուրախանան ընդ մարդկան. որք իջեալ ի յերկնից տան զաւետիս աշխարհի. ցընծացէք այսօր, Քրիստոս յարեաւ ի մեռելոց։ Այսօր զուարթունն ի վիմին խընկաբերից սուրբ կանանցն փողէր ձայնիւ ցընծութեամբ պատմել աչակերտացն ասելով. ցընծա-

ցէ՛ք այսօր, Քրիստոս”: Այսօր վէմին հաւատոյ և Յովհաննու սիրելւոյ ընդ հակառակս ընթացեալ ի գերեզման յարուցելոյն. զոր տեսեալ պատմէին, Քրիստոս”:

Փառք Հօր եւ”. Այժմ եւ միշտ”:

Այսօր և մեք զուարճացեալք պայծառացուք տօնիւս. ընդ հաշտութեանն Աստուծոյ միմեանց արկցուք զիրկս սիրով. և միաբան գոչեսցուք, Քրիստոս”:

Փառք ի բարձունս: (Տես ի Թիւն. 61):

Առաւօտու երգ:

Զյարութիւն ըզփրկչին օրհնեսցուք. զփրկչին մերոյ օրհնեսցուք զյարութիւն:

Ցարեաւ Աստուած. և ցրուեցան ամենայն թըշնամիք նորա:

## ՔԱՐՈԶ

Ասասցուք: (Տես ի Թիւն. 108):

## ԱՂՕԹՔ

Գոհանամք զքէն: (Տես ի Թիւն. 64):

Սուրբ Աստուած՝ որ յարեար ի մեռելոց”:

Զմաղթանք և զՔարոզ: (Տես ի Թիւն. 65):

*Ու զգեցցին միաբան քահանայքն՝ և ելցեն ի Թափօր Խաչիւ և Աւետարանաւ, խնկօք և մոմեղինօք և ամենայն զարդուք, ասելով Շարական՝ ԱՁ։*

Այսօր յարեաւ ի մեռելոց փեսայն անմահ և երկնաւոր. քեզ աւետիք խնդութեան հարսն ի յերկրէ եկեղեցի. օրհնեա ի ձայն ցնծութեան զԱստուած քո Սիոն։ Այսօր անճառ լոյսն ի լուսոյ լուսաւորեաց զմանկունս քո, լուսաւորեալ Երուսաղէմ, քանզի յարեաւ լոյս քո Քրիստոս. օրհ՝՝։ Այսօր խաւարն անգիտութեան հալածեցաւ երրեակ լուսովն. և քեզ ծագեաց լոյս գիտութեան յարուցեալն ի մեռելոց Քրիստոս. օրհ՝՝։

Քեզ վայել է օրհնութիւն Աստուած ի Սիոն. և քեզ տացին աղօթք յԵրուսաղէմ։

*Ընթերցուածս ի Գործոց Առաքելոց ։*
Գլ՝ 1. համ՝ 1։

Զբանն առաջին՝ զոր արարի վասն ամենայնի, ո՛ Թէոփիլէ. զոր սկսաւ Յիսուս առնել և ուսուցանել։ Մինչև յօրն պատուիրելոյ առաքելոցն ի ձեռն Հոգւոյն Սրբոյ. զորս ընտրեացն, և վերացաւ։ Որոց յանդիման կացոյց զինքն կենդանի յետ չարչարանաց իւրոց ի բազում արուեստս՝ յաւուրս քառասուն երևիլ նոցա՝ և ասել վասն արքայութեան Աստուծոյ։ Եւ ի հաղորդիլ ընդ նոսա հացիւ, պատուէր տայր նոցա

յԵրուսաղէմէ մի՛ մեկնել. այլ սպասել աւետեացն Հօր, զոր լուարուքն յինէն։ Զի Յօհաննէս մկրտեաց ի ջուր. այլ դուք մկրտեսջիք ի Հոգին Սուրբ, ո՛չ յետ բազմաց ինչ աւուրցս այսոցիկ։ Եւ նոքա մատուցեալ հարցանէին զնա՝ և ասէին. տէ՛ր՝ եթէ ի ժամանակի աստ յայսմիկ հաստատանելո՞ց իցես զարքայութիւնն Իսրայէլի։ Ասէ ցնոսա. ո՛չ է ձեզ գիտել զժամս և զժամանակս, զոր Հայր եդ յիւրում իշխանութեան։ Այլ առջիք զզօրութիւն ի հասանել Հոգւոյն Սրբոյ ի վերայ ձեր. և եղիջիք ինձ վկայք յԵրուսաղէմ, և յամենայն Հրէաստանի, և ի Սամարիա. և մինչև ի ծագս երկրի։

Ալէլուիա ալէլուիա։

Հաստեալ կային ոտք մեր առ դրունս քո Երուսաղէմ։

Ալէլուիա օ՛րհ՛։

Սրբոյ Աւետարանին Յիսուսի Քրիստոսի՝ որ ըստ Մարկոսի։

Գլ՝ 16. համ՝ 2։

Վասն Յարութեան Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի։

Եւ ընդ առաւօտս միաշաբաթուն, գան ի գերեզմանն ընդ արեգագալն։ Եւ ասէին ցմիմեանս, ո՞վ թաւալեցուսցէ մեզ զվէմն ի դրանց գերեզմանին։ Եւ հայեցեալ տեսին՝ զի թաւալեցուցեալ էր վէմն ի գերեզմանէն. քանզի էր մեծ յոյժ։ Եւ մտեալ ի ներքս ի գերեզմանն՝ տեսին զերիտասարդ մի, զի

նստէր ընդ աջմէ կողմանէ, զգեցեալ պատմուճան սպիտակ. և զարհուրեցան: Եւ նա ասէ ցնոսա. մի՛ երկնչիք՝ զՅիսուս խնդրէք զՆազովրեցի զխաչելեալն, յարեաւ. չէ՛ աստ. ահաւադիկ տեղին, ուր եդին զնա: Այլ երթա՛յք ասացէ՛ք ցաշակերտս նորա, և ցՊետրոս, թէ ահա յառաջագոյն երթայ քան զձեզ ի Գալիլեա. անդ տեսանիցէք զնա, որպէս ասաց ձեզ: Եւ իբրև լուան, ելին և փախեան ի գերեզմանէն, քանզի զահի հարեալ էին. և ո՛չ ումեք ինչ ասացին. զի երկնչէին:

*Եւ ապա ասասցեն շարական. և ընթեռնուցուն զչորեսին Աւետարանսն դէպ ի չորս կողմունսն աշխարհի: Առաջին Շարական՝ ԱՁ:*

Ընդ լո՛ւսանա՛լ մի՛աշա՜բա՛թի՜ն կա՛նխեցի՛ն կա՜նայքն ի՛ գերեզմանն, ի՛ խընկե՜լ զա՛նապա՛կա՞ն մարմի՜նն: Եւ զտի՛ն ըզվէ՛մըն բարձեալ ի դրա՛նց գերե՜զմա՛նի՜ն, և լըւեա՛լ բա՜րբառ ի՛ հրեշտակէն, եթէ՛ յարեա՜ւ Քրի՜ստոս և խափա՛նեա՞ց ըզմա՜հ: Եւ հանդիպեա՛լ քո տէ՛ր առա՜քե՛լո՜ցն, և տը՛ւեա՛լ զո՜ղջոյն կե՛նդանարար, առաքեցե՛ր զնոսա ի փըր-կութիւն տի՛ե՞զերա՜ց:

Դէպ յարևելս: Ո՜րթիւ:

Սրբոյ Աւետարանիս Յիսուսի Քրիստոսի՝ որ ըստ Յօհաննու:

Գլ՝ 19. հմր՝ 38:

*Վասն Թաղման Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի ։*

Յետ այսորիկ աղաչեաց զՊիղատոս Յովսէփ, որ յԱրեմաթեայ էր աշակերտ Յիսուսի ի ծածուկ՝ վասն ահին Հրէից. զի բարձցէ զմարմինն Յիսուսի. և հրամայեաց Պիղատոս. եկն և եբարձ զնա ։ Եկն և Նիկոդիմոս՝ որ եկեալն էր առ Յիսուս ի գիշերի զառաջինն, և եբեր զմուռս խառն ընդ՛ հալուէս, իբրև լտերս հարիւր ։ Առին զմարմինն Յիսուսի, և պատեցին կտաւովք և խնկովք հանդերձ. որպէս օրէն էր Հրէից պատել ։ Եւ էր ի տեղւոջն՝ յորում խաչեցաւ՝ պարտէզ. և ի պարտիզի անդ գերեզման նոր. յորում ոչ ոք երբէք էր եդեալ ։ Անդ վասն ուրբաթուն Հրէից՝ զի մօտ էր գերեզմանն՝ եդին զՅիսուս ։

*Դէպ յարեւմտեան կողմն ասելով Շարական՝ Ակ ։*

Առաքեցա՛ր ի Հօրէ բա՜նդ Ա՛ստուած ի՛ փրրկութի՛ւն ազգի մարդկան. օրհնե՛մք ըզքե՜զ սո՜ւրբ Ա՞ստո՛ւա՜ծ ։ Ի գերեզմա՛ն իջե՜ր թագաւոր անմահ և ի Հօրէ՛ ոչ մե՛կնեցար. օրհ" ։ Ի յերրո՛րդ աւուր յարեար Ա՛ստուածապէս և ի յերկինըս համբա՛րձա՞ր. փա՛՜ռք յա՛րութեան քո տէր. օրհ" ։

Ո՜րթիւ ։

Սրբոյ Աւետարանիս Յիսուսի Քրիստոսի՝ որ ըստ Ղուկասու ։

Գլ՝ 23 . համր՝ 50 ։

Վասն Թաղման Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի։

Եւ ահա այր մի անուն Յովսէփ, որ էր նախարար՝ այր բարեգործ և արդար. սա չէր միաբանեալ ընդ խորհուրդս և ընդ գործս նոցա. յԱրեմաթեայ քաղաքէ Հրէից. որ և ինքն իսկ ակն ունէր արքայութեան Աստուծոյ։ Սա մատուցեալ առ Պիղատոս՝ խնդրեաց զմարմինն Յիսուսի։ Եւ իջուցեալ զնա՝ պատեաց պաստառակալաւ. և եդ ի կռածոյ գերեզմանին. ուր չէր բնաւ զոք եդեալ։ Եւ օրն էր ուրբաթ. և շաբաթ լուսանայր։ Եւ երթային զհետ նորա կանայք՝ որք եկեալ էին ընդ նմա ի Գալիլեէ. տեսին զգերեզմանն, և որպէս եդաւ մարմին նորա։ Դարձան, և պատրաստեցին խունկս և իւղս. և ի շաբաթուն հանդարտեցին վասն պատուիրանին։

Դէպ ի հարաւային կողմն տեսլով Շարական՝ ԲԶ։

Ի գերեզման քո կանխեցին կանայքն, զիւղս և զխունկս բերին ի պատիւ թաղման քո, զի զմեզօք ըզհողացեալս վերածեր ի կեանս։ Փոխանակ իւղոյն զհաւատս անբիծս և զաղաչանս մեր ընդ առաւօտեան կանանցն ընկալ. որք զողջոյն կենաց լըւան եւայի ունկամբն։ Ետուն աւետիս առաքելոցն յարեաւ յարուցիչըն մեր աւերեաց ըզդըժոխս, և զթըշնամին կապեաց ի յանլոյծ կապանս։

Ո՛րթն ։

Սրբոյ Աւետարանիս Յիսուսի Քրիստոսի՝ որ ըստ Մարկոսի ․

Գլ՝ 15 ․ համր՝ 42 ։

Վասն Թաղման Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի ։

Եւ իբրև երեկոյ եղև՝ քանզի ուրբաթ էր՝ որ է շաբաթն մտանէր ։ Եկեալ Յովսէփ՝ որ յԱրեմաթեայն էր ․ այր պարկեշտ նախարար, որ և ինքն իսկ ակն ունէր արքայութեանն Աստուծոյ ․ համարձակեցաւ՝ եմուտ առ Պիղատոս ․ և խնդրեաց զմարմինն Յիսուսի ։ Եւ Պիղատոս զարմացաւ, թէ այնչափ վաղ մեռաւ ․ և կոչեալ առ ինքն զհարիւրապետն, եհարց զնա, և ասէ՝ թէ արդարև այնչափ վաղ մեռաւ ։ Եւ իբրև ստուգեաց ի հարիւրապետէ անտի, շնորհեաց զմարմինն Յովսեփայ ։ Եւ Յովսէփ գնեաց կտաւ՝ և իջուցեալ զնա՝ պատեաց կտաւովն ․ և եդ ի գերեզմանի ․ որ էր փորեալ ի վիմէ ․ և թաւալեցոյց զվէմ մի ի դուռն գերեզմանին ։ Իսկ Մարիամ Մագդաղենացի ․ և Մարիամ Յակոբայ՝ և Յովսեայ, տեսին զտեղին՝ ուր եդաւ ։ Եւ իբրև էանց շաբաթն՝ Մարիամ Մագդաղենացի՝ և Մարիամ Յակոբայ և Սաղոմէ, չոգան պատրաստեցին խունկս ․ զի եկեսցեն և օծցեն զնա ։

Եւ դէպ է հիւսիսային կողմն ասելով Շարականն՝ ԲԿ ։

Քո՛ յա՛րո՞ւթեանդ փա՛ռք վայելէ՛ երկա՛յնա՛-

մի՞տ տէ՜ր ։ Օ՛րհնեալ է քո յա՛րութիւնդ Աստո՜-ւա՜ծ , ո՞ր ըղձա՜հ մահո՛ւ ծանուցեր քո՛յի՞ն կամաւո՛ր մահուամբդ . քո՜ յա՜” ։ Գո՛չումն ա՛հեղ հրեշտա՛կին ի վի՜մին որ քարոզէ՛ր առ սուրբ կանայսն , յա՛րեա՞ւ տէրն ի՛ մեռելոց . քո՜ յա՜” ։

## Ո՜րթիւ ։

### Սրբոյ Աւետարանիս Յիսուսի Քրիստոսի՝ որ ըստ Մատթէոսի ։

### Գլ՝ 27 . համր՝ 57 ։

*Վասն Թաղման Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի ։*

Եւ իբրև երեկոյ եղև՝ եկն այր մի մեծատուն յԱրիմաթեայ՝ որում անուն էր Յովսէփ . որ աշակերտեցաւ իսկ Յիսուսի ։ Սա մատուցեալ առ Պիղատոս՝ խնդրեաց զմարմինն Յիսուսի , յայնժամ Պիղատոս հրամայեաց տալ զմարմինն ։ Եւ առեալ զմարմինն Յովսէփ՝ պատեաց սուրբ կտաւօք ։ Եւ եդ ի նոր գերեզմանի՝ զոր փորեաց ի վիմի . և թաւալեցուցեալ կափարիչ դրան գերեզմանին վէմ մի մեծ՝ և գնաց ։ Անդ էր Մարիամ Մագդաղենացի՝ և միւս Մարիամն , նստէին հանդէպ գերեզմանին ։ Եւ ի վաղիւ անդր՝ որ է յետ ուրբաթուն . ժողովեցան քահանայապետքն և փարիսեցիք առ Պիղատոս ։ Եւ ասեն . տէր , յիշեցաք զի մոլորեցուցիչն այն ասէր , մինչ կենդանին էր . թէ յետ երից աւուրց յառնեմ ։ Ա՜րդ՝ հրամայեա զգուշանալ գերեզմանին մինչև ցերիս աւուրս ,

զուցէ եկեալ աշակերտքն գիշերի՝ գողանայցեն զնա՝ և ասիցեն ժողովրդեանն թէ յարեաւ ի մեռելոց. և լինիցի յետին մոլորութիւնն չար քան զառաջինն։ Ասէ ցնոսա Պիղատոս. ունիք զզօրականս. երթայք զգուշացարուք՝ որպէս և գիտէք։ Եւ նոքա երթեալ զգուշացան գերեզմանին. և կնքեցին զվէմն հանդերձ զօրականօքն։

*Եւ ապա երգեսցեն յառեանն՝ ասելով Շարական Ա.Զ։*

Որ զանարատ բա՛զուկս քո՛ ի խաչի՛ն տարա՛ծեցեր Քրի՛ստո՛ս Աստուա՛ծ, և նշա՛ն յա՛ղթութեան ե՛տո՛ւր մեզ. սովաւ ընկեա՛նըս մեր պա հեա՛։ Ո՛ր զաշխարհակե՛ցոյց բազկա՛տարածութիւն խա՛չի՛ քո Քրիստո՛ս Աստո՛ւած զաւազա՛ն զօրութեան ե՛տո՛ւր մեզ. սովաւ"։ Որ ընմեռեա՛լն ի ճաշա՛կմանէ փայտի՛ն յանցանա՛ց, կե՛նա՛ց փա՛յտիւն կենագործե՛ցեր. սովաւ"։

*Ալէ՛լուիա ալէ՛լուիա*

ԿՑ. Նշանեցաւ առ մեզ լոյս երեսաց քոց, և ետուր ուրախութիւն սրտից մերոց։
Փխ. Ի կարդալ իմում լուար ինձ Աստուած ըստ արդարութեան, ի նեղութենէ ինձ անդորր արարեր. ողորմեա ինձ և լուր աղօթից իմոց։

Որդիք մարդկան՝ մինչև յե՞րբ էք խստասիրտք. ընդէ՞ր սիրէք զնանրութիւն, և խնդրէք զստութիւն.

Ծաներո՛ւք զի աքանչելիս արար տէր սրբոց իւրում. և տէր լուիցէ ինձ ի կարդալ իմում առ նա։

Բարկանայք՝ և մի՛ մեղանչէք. զոր ինչ ասէք ի սիրտս ձեր, յանկողինս ձեր զղջացարուք։

Մատուցէ՛ք պատարագս արդարութեան, և յուսացարո՛ւք ի տէր։

Բազումք ասէին՝ թէ ո՛ ցուցցէ մեզ զբարութիւն տեառն. Նշանեցաւ առ մեզ լոյս երեսաց քոց, և ետուր ուրախութիւն սրտից մերոց։

Ի պտղոյ ցորենոյ՝ գինւոյ՝ և ձիթոյ իւրեանց լցուցեր զնոսա։

Խաղաղութեամբ յայս և ի սոյն ննջեսցուք և զարթիցուք. զի դու տէր միայն առանձին յուսով քո բնակեցուցեր զմեզ։

Ալէլուիա օ՜րթի։

Սրբոյ Աւետարանիս Յիսուսի Քրիստոսի՝ որ ըստ Յօհաննու։

Գլ՝ 19. համր՝ 16։

Վասն Խաչելութեան Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի։

Յայնժամ ետ զնա ի ձեռս նոցա, զի ի խաչ ելանիցէ։ Եւ նոքա առեալ տանէին զնա. և բարձեալ էր ինքնին զխաչափայտն. և ելանէր ի տեղին՝ որ անուանեալ էր գագաթն. և կոչիւր Եբրայեցերէն Գողգոթա։ Ուր և ի խաչ իսկ հանին զնա. և ընդ նմա երկուս ևս այլս աստի և անտի, և ի միջի ըզՅիսուս։ Գրեաց և տախտակ մի Պիղատոս, և եդ ի

վերայ խաչին․ և էր գրեալ Ցիսուս Նազօրեցի, Թագաւոր Հրէից։ Զայն տախտակ ընթերցան բազումք ի Հրէից․ զի մօտ էր ի քաղաք անդր տեղին՝ ուր խաչեցաւն Ցիսուս․ և էր գրեալ Եբրայեցերէն, Դաղմատերէն․ և Յունարէն։ Ասեն ցՊիղատոս քահանայապետքն Հրէից․ մի՛ գրեր Թագաւոր Հրէից․ այլ թէ նա ասաց՝ Թագաւոր եմ Հրէից։ Պատասխանի ետ Պիղատոս․ զոր ինչ գրեցի՝ գրեցի։

*Այս առի փարող․ Եւ ևս խաղաղութեան։ Վասն ի վերուստ։ Եւ փէտանտգրեոյէն ղանտտապանն։*

*Զչնչ՝ փարող․ Սուրբ խաչիւս։ Աշօքէ․ Պահպանեա․*

(Տես ի 145 էն ց 147․ Թիւսն):

*Եւ ապա սկսանիցեն Ժամամուտ։*

Քանզի յարեաւ ի մեռելոց՝ Քրիստոս Աստուած յաւիտենից՝ արարիչ և յարութիւն ազգի մարդկան․ զոր օրհնեն անդադար զինուորութիւնք հրեշտակաց և ամենայն զուարթունք երկնից։ Ընդ որս գոչելով ասեմք փառք սոսկալի յարութեան քո տէր։

*Շարական՝ Դկ։*

Յիսո՛՜ւս մի՛ածի՛նն․ իւր քաղուածքովն։

(Տես ի Թիւն․ 148):

*Ալէ՜լուիա ալէ՜լուիա*

Եղիցին ականջք քո ի լսել զձայն աղօթից իմոց։

Ի խորոց կարդացի առ քեզ տէր, տէր լո՛ւր ձայնի իմում։

Ալէ՜լուէա օ՜րթէ։

Սրբոյ Աւետարանէս Յիսուսի Քրիստոսի՝ որ ըստ Յովհաննու։

Գլ՝ 11. համ՝ 1։

Վասն փառաց Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի։

Եւ էր ոմն հիւանդ Ղազարոս. (Տես ի Թիւն. 69):

Ձկնի՝ Հոգւոցն հանգուցելոց։ (Տես ի Թիւն. 36:)

Եւ զկնի երգ

Նո°րաստեղծեա՜լ բանն յանէի՛ց իսկզբանէ զերկի՛նս երկնից. և° զերկնայի՜ն զօրս անմարմնո՛ց իմանալեացըն զո՛ւարթնոց. և° զգալի՜ տարերց քառից հակառակաց միաբանից. ո°րով յաւէ՜տ փառաբանի երրորդութիւնն անճառելի՜։

Երե°քսրբեա՜ն մի տէրութիւն միով բնութեամբ Աստուածութիւն. լո°յսն որ անե՜ղ արարչական ասաց լինել լոյս եղական. զո°ր և ծագեա՜ց յօրն առաջին միաշաբաթ կիւրակէին. որո°վ յաւէ՜տ"։

Րա°բունորէ՜ն բացատրեսցուք գծածկեալ խորհուրդըն ծանիցուք. զի° լոյսն անտե՜ս իմանալի մաքուր հոգւոց տեսանելի, ի° սոյն ծագեա՜ց միաշաբա՛թ մեզ յարութեան սուրբ ճառագայթ. ե°կայք փրկեա՜լք ընդ զուարթնո՛յն տուք օրհնութիւն յարուցելո՜յն։

Սէ°րըդ սիրո՜վ խոնարհեցա՛ր ի փրկութիւն մեր մա՛րմնացար. Նո°վին մարմնո՜վըն խա՛չեցար ի գերեզման մահո՛ւ եդար. ա°յսօր յարեա՜ր Աստուածաբա՛ր ի հրեշտակաց քարոզեցար. ե°կայք”։

Երե°ւեցա՜ր խնկաբերի՛ցն յողջոյն կենացն ո՛ւրախալից. և° ի լերի՜նըն Գալիլեայ առաքելոց մետասանից. ա°րժանացո՜ զմեզ ընդ Նոսի՛ն զքեզ տեսանել յօրըն վերջին. ե°կայք”։

Սի°օնի՜ որդիք զարթիք հարսին լուսոյ տուք աւետիք. ե°թէ փեսա՜յն քո յա՛րուցեալ յաղթեաց մա՛հու իշխա՛նութեամբ. զա՜յ պըսակէ՜ զքեզ փառօ՛ք եւ ընդ առաջ պըճնեա՛լ զարդուք. ե°րգեա երգ նո՜ր յա՛րուցելոյն նընջեցելոց կենա՜ց պըտղո՜յն։

Քարոզ. Խնդրեսցուք. Կեցո։ Աղօթք՝ Քում ամենազօր և հրաշալի յարութեանդ։ (Տես ի Թիւն. 75):

Եւ ապա երգեալ զսուրբ Խաչն և զԱւետարանն ի վերայ գըքակալին՝ երկիրպագցեն ամենեքեան. և այլքն պար առեալ եղանակեսցեն Շարական՝ Բկ։

Խաչի քո Քրիստոս։ (Տես ի Թիւն. 467):
Բայց աստ՝ զսուրբ Թաղումնդ քո մեծացուցանեմք, և զսուրբ յարութիւնդ քո փառաւորեմք։ Նոյնպէս, Փառք սուրբ խաչիդ, այլ. սրբոյ Թաղմանդ, այլ. սուրբ յարութեանդ, այլ. և այլն ըստ կարգին։ Ապա Շարական՝ Բկ, Խաչն կենարար”։

Փառք Հօր եւ". Այժմ եւ միշտ":

Յարեար տէ՜ր աւե՜րեցեր ըզդըժոխս, ի յերկինըս համբարձա՜ր և ը՜նդ աջմէ Հօ՛ր նը՜ստա՜ր։

*Եւ եկեալ ք ք. համբուրեսցեն զսուրբ Խաչն և զԱւետարանն, և տասցեն միմեանց՝ Քրիստոս յարեաւ ի մեռելոց, ձեզ և մեզ մեծ աւետիս։*

Ձկնի Քարոզ՝ Սուրբ խաչիւս։ Աղօթք՝ պահպանեա։ (Տես ի Թիւ. 147):

---

Ճաշու ժամամուտ՝ Քրիստոս յարեաւ. և շարական՝ ԱՁ. Յարեաւ Քրիստոս։ (Տես ի Թիւ. 574):

Ճաշու Ընթերցուածք

Սաղմոս Ա։

Երանեալ է այր՝ որ ոչ գնաց ի խորհուրդս ամբարշտաց. ի ճանապարհի մեղաւորաց նա ոչ եկաց, և յաթոռս ժանտից ոչ նստաւ։

Ընթերցուածս ի Գործոց Առաքելոց։
Գլ՝ 1. Համ՝ 15։

Եւ յաւուրսն յայնոսիկ յարուցեալ Պետրոս ի մէջ եղբարցն՝ ասէ. և էր անդ բազմութիւն անուանց իբրև հարիւր և քսանից։ Ա՛րք եղբարք՝ պարտ էր կատարել գրոյն, զոր յառաջագոյն ասաց Հոգին Սուրբ ի բերանոյ Դաւթի՝ վասն Յուդայի. որ եղև առաջնորդ

ունելեացն Յիսուսի։ Զի ի՞ թիւս մերն էր՝ ընդ մեզ. և հասեալ էր նմա վիճակ պաշտամանս այսորիկ։ Սա ստացաւ գեօղ ի վարձուց անիրաւութեան. և ուռուցեալ հերձաւ ընդ մէջ՝ և հեղաւ ամենայն փոր նորա։ Եւ յայտնի եղև ամենեցուն՝ որք բնակեալ են յԵրուսաղէմ. մինչև կոչել գեղջն այնմիկ բարբառովն իւրեանց Ակեղդամայ. այսինքն՝ գեօղ արեան։ Զի գրեալ է ի գիրս սաղմոսաց. եղիցի բնակութիւն նորա աւերակ. և մի՛ ոք իցէ՝ որ բնակիցի ի նմա. և զկարգ նորա առցէ այլ։ Արդ՝ պարտ է յարանցս յայսցանէ՝ եկելոցս ընդ մեզ յամենայն ժամանակի՝ յորում եմուտ և ել առ մեզ տէր Յիսուս։ Սկսեալ ի մկրտութենէն Յոհաննու մինչև յօրն՝ յորում վերացաւ ի մէնջ. վկայ յարութեան նորա ընդ մեզ լինել միում ի սոցանէ։ Եւ կացուցին երկուս. զՅովսէփ՝ որում Բարսաբայն կոչէին. որ անուանեցաւն Յուստոս. և զՄատաթիայ։ Եւ կացեալ յաղօթս՝ ասեն. դու տէր՝ սրտագէտ ամենայնի, յայտնեա՛ զմի ոք՝ զոր ընտրեցեր ի սոցանէ յերկոցունց։ Առնուլ զվիճակ պաշտամանս այսորիկ՝ և զառաքելութեան, յորմէ՛ անկաւ Յուդաս՝ գնալ ի տեղի իւր։ Եւ ետուն վիճակս նոցա. և ել վիճակն Մատաթեայ. և համարեցաւ ընդ մետասան առաքեալսն։

Ալէ՞լուիա ալէ՞լուիա

Գովեա Երուսաղէմ զտէր։

Եւ օրհնեա զԱստուած քո սիոն։

Զի զօրացոյց զնիգս դրանց քոց, և օրհնեաց զորդիս քո ի քեզ։

Որ եդ զսահմանս քո ի խաղաղութիւն. պարարտութեամբ ցորենոյ լցոյց զքեզ։

Առաքէ զբան իւր յերկիր. վաղվաղ ընթանան պատգամք նորա։

Դնէ զձիւն որպէս զասր, և զմէգ որպէս փոշի ցանեաց։

Արկանէ զսառն որպէս պատառս. առաջի ցրտոյ նորա ո՞ կարէ կեալ։

Առաքէ զբան իւր՝ և հալէ զնոսա, շնչեսցեն հողմք՝ և գնասցեն ջուրք։

Պատմէ զբան իւր Յակոբայ, զարդարութիւն և զիրաւունս Իսրայէլի։

Ոչ այսպէս արար ամենայն ազգաց այլոց, և զդատաստանս իւր ոչ յայտնեաց նոցա։

Ալէլուիա օ՜րհնութիւն։

Սրբոյ Աւետարանին Յիսուսի Քրիստոսի՝ որ ըստ Մարկոսի։

Գլ՝ 16. համր՝ 2։

Վասն Յարութեան Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի։

Եւ ընդ առաւօտս միաշաբաթուն, գան ի գերեզմանն ընդ արևագալն։ Եւ ասէին ցմիմեանս, ո՞վ թաւալեցուսցէ մեզ զվէմն ի դրանց գերեզմանին։ Եւ հայեցեալ տեսին՝ զի թաւալեցուցեալ էր վէմն ի

գերեզմանէն. քանզի էր մեծ յոյժ։ Եւ մտեալ ի ներքս ի գերեզմանն՝ տեսին զերիտասարդ մի, զի նստէր ընդ աջմէ կողմանէ, զգեցեալ պատմուճան սպիտակ. և զարհուրեցան։ Եւ նա ասէ ցնոսա. մի՛ երկնչիք՝ զՅիսուս խնդրէք զՆազովրեցի զխաչելեալն, յարեաւ. չէ՛ աստ. ահաւասիկ տեղին, ուր եդին զնա։ Այլ երթա՛յք ասացէ՛ք աշակերտաց նորա, և ցՊետրոս, թէ ահա յառաջագոյն երթայ քան զձեզ ի Գալիլեա. անդ տեսանիցէք զնա, որպէս ասացն ձեզ։ Եւ իբրև լուան, ելին և փախեան ի գերեզմանէն, քանզի զահի հարեալ էին. և ո՛չ ումեք ինչ ասացին. զի երկնչէին։

Սրբասացութիւն. Ողջ է որպէս Տէր։

Եւ արժանի է խաղաղութիւն։





Իսկ ի տասներորդ ժամուն ժողովեալ յեկեղեցին՝ սկսանիցեն սաղմոս Կ՚Ի ։

Քեզ վայելէ օրհնութիւն Աստուած ի սիոն. և քեզ տացին աղօթք յերուսաղէմ ։

Ընթերցուածս ի Գործոց Առաքելոց ։
Գլ՝ 1. համ՝ 1 ։

Զբանն առաջին զոր արարի ։ (Տես ի թիւն. 594) ։

Ալէլուիա ալէլուիա

Դու յարուցեալ գթասցիս ի վերայ սիոնի. ժամանակ գթալոյ նորա հասեալ է ժամ ։

Ալէլուիա օ՜րթի ։

Սրբոյ Աւետարանիս Յիսուսի Քրիստոսի՝ որ ըստ Ղուկասու ։
Գլ՝ 24. համ՝ 13 ։

Յետ Յարութեան Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի ։

Եւ ահա երկուք ի նոցանէ երթային ի նմին աւուր ի գեօղ մի, որ հեռի էր յԵրուսաղէմէ հարիւր և վաթսուն ասպարիսաւ, և էր անուն նորա Էմմաւուս ։ Եւ նոքա խօսէին ընդ միմեանս վասն ամենայն անցիցն անցելոց ։ Եւ եղև ընդ խօսիլն նոցա և ընդ վիճել՝ և ինքն իսկ Յիսուս մերձեցաւ՝ և երթայր ընդ նոսա ։ Եւ նոցա աչք կալեալ էին առ ի

չճանաչելոյ զնա։ Եւ ասէ ցնոսա. զի՞նչ են բանքդ՝ վասնորոյ վիճէք ընդ միմեանս՝ մինչդեռ երթայք, և տրտմեալ էք։ Պատասխանի ետ միումն ի նոցանէ՝ որում անուն էր Կղէոպաս, և ասէ ցնա. դու միայն կաս յԵրուսաղէմ, որ ոչ գիտացեր՝ զինչ գործեցաւ ի նմա յաւուրս յայսոսիկ։ Եւ ասէ ցնոսա. զինչ. և նոքա ասեն. զՅիսուսէ Նազովրեցւոյ. որ եղև այր մարգարէ, հզօր արդեամբք և բանիւք՝ առաջի Աստուծոյ, և ամենայն ժողովրդեանն։ Որպէս մատնեցին զնա քահանայապետքն՝ և իշխանքն մեր ի դատաստան մահու՝ և հանեին զնա ի խաչ։ Մեք ակն ունէաք՝ թէ նա է՝ որ փրկելոց իցէ զԻսրայէլ. այլև հանդերձ այսու ամենայնիւ, այս երրորդ օր է. յորմէհետէ այն գործեցաւ։ Այլ և կանայք ոմանք ի մէնջ զարմացուցին զմեզ. որք կանխեալք ընդ առաւօտս՝ չոգան ի գերեզմանն։ Եւ ոչ գտին զմարմին նորա. եկին, և ասեն. թէ և տեսիլ ևս հրեշտակաց տեսին, որք ասէին զնմանէ թէ կենդանի է։ Եւ գնացին ոմանք ի մէնջ ի գերեզմանն. և գտին նոյնպէս՝ որպէս և կանայքն ասացին. բայց զնա ոչ տեսին։ Եւ նա ասէ ցնոսա. ո՜վ անմիտք և հեղգասիրտք առ ի հաւատալ յամենայնի, զոր խօսեցան մարգարէքն։ Ո՞չ զնոյնս պարտ էր չարչարել Քրիստոսի, և մտանել ի փառս իւր։ Եւ սկսեալ ի Մովսիսէ՝ և յամենայն մարգարէից՝ մեկնէր նոցա որ ինչ յամենայն գիրս գրեալ է զնմանէ։ Իբրև մերձեցան ի գեօղն՝ յոր երթային, և նա պատճառէր հեռագոյն

ևս ուրեք երթալ։ Եւ բռնադատեցին զնա՝ և ասեն. առ մեզ ագիր. զի ընդ երեկս է՝ և տարաժամեալ է օրս. և եմուտ ագանել անդ ընդ նոսա։ Եւ եղև ի բազմելն նորա ընդ նոսա. առեալ զհացն՝ օրհնեաց՝ եբեկ՝ և ետ նոցա։ Եւ նոցա բացան աչք՝ և ծանեան զնա. և նա եղև ի նոցանէ աներևոյթ։ Եւ ասեն ցմիմեանս. ո՞չ իսկ և սիրտք մեր ճմլէին ի մեզ՝ մինչ խօսէրն ընդ մեզ զճանապարհայն. և որպէս բանայր մեզ զգիրս։ Եւ յարուցեալ նոյն ժամայն՝ դարձան յԵրուսաղէմ. և գտին ժողովեալ զմետասանսն. և զորս ընդ նոսայն էին։ Եւ ասեն թէ արդարև յարեաւ տէր՝ և երևեցաւ Սիմոնի։ Եւ նոքա պատմէին. որ զճանապարհայն. և թէ զիարդ ետ ծանօթըս նոցա ի բեկանել հացին։

*Եւ ելցեն խաչիւ և Աւետարանաւ խնկօք և մոմեղինօք և ամենայն զարդուք ի Թափօր, ասելով Շարականն՝ ԱՁ։*

Այսօր զատիկ մեր զենմամբ Քրիստոսի. արասցուք տօն ցընծութեամբ նորոգեալքս ի հնութենէ մեղաց ասելով, Քրիստոս յարեաւ ի մեռելոց։ Այսօր հրեշտակըն լուսափայլ ի յեկնից իջեալ զարհուրեցոյց ըզպահապանսն, և սուրբ կանանցըն քարոզէր ասելով. Քրիստոս”։ Այսօր նոր Իսրայէլ կոչեցեալք ի Քրիստոս. ազատեալք

ա՛րեա՛մբ գառինն Ա՛ստո՛ւծոյ, պարեսցո՛ւք ընդ երկնայնոցն ասե՛լով Քրի՛ստոս"։

Ո՛րթիւ

Սրբոյ Աւետարանիս Յիսուսի Քրիստոսի՝ որ ըստ Յօհաննու ։

Գլ՝ 20. համր՝ 1 ։

Վասն Յարութեան Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի ։

Եւ ի միաշաբաթոջն Մարիամ Մագդաղենացի գայ առաւօտուն ընդ՚՚արշալոյսն ի գերեզման անդր. և տեսանէ զվէմն բարձեալ ի դրանց գերեզմանին ։ Ապա ընթանայ՝ և գայ առ Սիմօն Պետրոս. և առ միւս աշակերտն. զոր սիրէրն Յիսուս. և ասէ ցնոսա. բարձին զտէր ի գերեզմանէ անտի, և ո՛չ գիտեմ, ուր եդին զնա ։ Ել Պետրոս և միւս աշակերտն, և գային ի գերեզմանն ։ Ընթանային երկոքեան ի միասին. և միւս աշակերտն յառաջեաց, ընթացաւ վաղագոյն քան զՊետրոս՝ և եկն նախ ի գերեզմանն ։ Եւ խոնարհեալ տեսանէ՝ զի կային անդ կտաւքն. բայց ի ներքս ո՛չ եմուտ ։ Եկն և Սիմօն Պետրոս՝ որ գայրն զկնի նորա. և եմուտ ի գերեզմանն. և տեսանէ զկտաւսն, զի կային անդ ։ Եւ վարշամակն, որ էր ի գլուխ նորա՝ ո՛չ ընդ այլ կտաւսն կայր. այլ ուրոյն ծալեալ ի մի կողմն ։ Յայնժամ եմուտ և միւս աշակերտն. որ եկեալն էր յառաջագոյն ի գերեզմանն՝ ետես և հաւատաց ։ Զի չև ես գիտէին զգիրս՝ թէ

պարտ է նմա ի մեռելոց յառնել։ Չոգան դարձեալ առ միմեանս աշակերտքն։ Բայց Մարիամ կայր արտաքոյ գերեզմանին, և լայր. և մինչդեռ լայր՝ խոնարհեցաւ ի գերեզմանն։ Եւ տեսանէ երկուս հրեշտակս ի սպիտակս. զի նստէին մի ի սնարից՝ և մի յանոտից՝ ուր կայր մարմինն Յիսուսի։ Եւ նոքա ասեն ցնա. կի՛ն դու՝ զի՞ լաս. ասէ ցնոսա. զի բարձին զտէրն իմ ի գերեզմանէ անտի. և ո՛չ գիտեմ, ուր եդին զնա։ Զայս իբրև ասաց. դարձաւ ի թիկունս կոյս. և տեսանէ զՅիսուս՝ զի կայր. և ո՛չ գիտէր թէ Յիսուս իցէ։ Ասէ ցնա Յիսուս. կի՛ն դու՝ զի՞ լաս. զո՞ խնդրես. Նմա այսպէս թուեցաւ թէ պարտիզպանն իցէ, ասէ ցնա. տէ՛ր, եթէ դու բարձեր զնա՝ պատմ. ինձ, ուր եդեր զնա՝ զի ես առից զնա։ Ասէ ցնա Յիսուս՝ Մարիամ. և նա դարձաւ, և ասէ ցնա Եբրայեցերէն. Ռաբունի. որ թարգմանի Վարդապետ։ Ասէ ցնա Յիսուս. մի՛ մերձենար յիս. զի չև ես ելեալ եմ առ Հայր իմ. այլ երթ դու առ եղբարս իմ, և ասա ցնոսա. ելանեմ ես առ Հայրն իմ, և առ Հայր ձեր. և Աստուածն իմ, և Աստուած ձեր։ Գայ Մարիամ Մագդաղենացի՝ և պատմէ աշակերտացն, եթէ ետես նա զտէր. և զայս ինչ ասաց ցնա։

Եւ սկսանիցին Շարական հանգստեան՝ ԱՁ։

Որ անձառ տնօրէնութեամբ ի փրկութին

ազգի մարդկան խոնարհեցար բանդ Աստուած․ այսօր հանգո և ըզմեր ըզնընջեցեալսն ընդ աուրբըս քո․ որ միայնդ ես մարդասէր։ Որ անչարչարելիդ մարմնով եկիր կամաւ ի չարչարանս, և ի խաչին բևեռեցար, հեղեր զարինդ ի փրկութիւն․ այսօր"։ Որ թաղմամբն երեքօրեայ ըզբըռնութիւն մահու լուծեր, և կոխեցեր զխչխանն մահու, և փրկեցեր ըզնընջեցեալսն․ այսօր"։ Որ հրաւիրեցեր յանմահութիւն զազգըս մարդկան անմահութեանց բաշխող Քրիստոս, աղաչանօք Աստուածածնին․ այսօր"։

Ալէլուիա ալէլուիա

Ի խորոց կարդացի առ քեզ տէր, տէր լուր ձայնի իմում։

Եղիցին ականջք քո ի լսել զձայն աղօթից իմոց։

Թէ զանօրէնութիւնս իմ քննես տէր տէր, իսկ ո՞ կարէ կալ առաջի քո, զի ի քէն է քաւութիւն։

Վասն անուան քո համբերի տէր, համբեր անձն իմ բանի քում, յուսացաւ անձն իմ ի տէր։

Ի պահէ առաւօտու մինչև յերեկոյ, ի պահէ առաւօտու յուսացաւ Իսրայէլ ի տէր։

Ի տեառնէ է ողորմութիւն բազում, ի նմանէ է փրկութիւն, և նա փրկեաց զԻսրայէլ յամենայն նեղութեանց նորա։

Ալէլուիա ձ՟ըլԹի ։

Սրբոյ Աւետարանին Յիսուսի Քրիստոսի՝ որ ըստ Յօհաննու ։

Գլ՝ 5 ․ համր՝ 24 ։

Տէրն մեր Յիսուս Քրիստոս ասէ ։

Ամէն ամէն ասեմ ձեզ․ զի որ զբանն իմ լսէ, և հաւատայ այնմ, որ առաքեացն զիս՝ ընդունի զկեանսն յաւիտենականս․ և ի դատաստան ո՛չ մտանէ, այլ փոխեցաւ ի մահուանէ ի կեանս ։ Ամէն ամէն ասեմ ձեզ․ զի գայ ժամանակ՝ և արդէն իսկ է․ յորժամ մեռեալք լուիցեն ձայնի Որդւոյն Աստուծոյ․ և որք լսիցենն, կեցցեն ։ Զի որպէս Հայր ունի կեանս յանձին իւրում․ Նոյնպէս ետ և Որդւոյ ունիլ կեանս յանձին իւրում ։ Եւ իշխանութիւն ետ նմա դատաստան առնել․ և զի Որդի մարդոյ է, ընդ այն զի՞ զարմանայք՝ զի եկեսցէ ժամանակ․ յորում ամենեքին որք ի գերեզմանս կայցեն, լուիցեն ձայնի Նորա, եւ եկեսցեն արտաքս․ որոց բարիս գործեալ իցէ՝ ի յարութիւն կենաց ։ և որոց զչար արարեալ՝ ի յարութիւն դատաստանաց ։ Ո՛չ կարեմ ես յանձնէ առնել և ոչ ինչ․ այլ որպէս լսեմ, դատեմ․ և դատաստանն իմ արդար է․ զի ո՛չ խնդրեմ զկամս իմ, այլ զկամս այնորիկ՝ որ առաքեացն զիս ։

Շարական՝ ԱԶ ։

Սո՛ւրբ խա՛չն օգնակա՜ն հաւատա՛ցե՛լո՜ց․ կանգ-

նեցաւ ի յերկրի յաղթող թշնամւոյն. եկայք ժողովուրդք երկրպագեսցուք։ Արարիչն Աստուած բարձրացաւ ի խաչին, և զմեռեալս մեղօք փայտին ճաշակմամբն, ի սմա նորոգեալ կենդանացոյց։ Ի միւսանգամ գալստեան Աստուածորդւոյն, սուրբ խաչն երևի և լուսաւորէ. զի նա է յոյս հաւատացելոց։

Ալէլուիա ալէլուիա

Կց. Նշանեցաւ առ մեզ լոյս երեսաց քոց, և ետուր ուրախութիւն սրտից մերոց։

Փխ. Ի կարդալ իմում լուար ինձ Աստուած՝ ըստ արդարութեան։ (Տես ի թիւն, 601):

Ալէլուիա օրհնէ։

Սրբոյ Աւետարանին Յիսուսի Քրիստոսի՝ որ ըստ Յովհաննու։

Գլ՝ 19. համր՝ 31։

Վասն Խաչելութեան Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի։

Իսկ Հրէայքն քանզի ուրբաթ էր, զի մի՛ անդէն ի խաչին ագանիցին մարմինքն մինչև ցշաբաթն. զի էր օր մեծ շաբաթուն այնորիկ. աղաչեցին զՊիղատոս, զի խորտակեսցեն զբարձս նոցա, և բարձցին։ Եկին զինուորքն, և զառաջնոյն խորտակեցին զբարձս. նոյնպէս և զմիւսոյն՝ որ ընդ նմա ի խաչ ելեալ

էր։ Բայց իբրև եկին առ Յիսուս, և տեսին զի այն քնչ մեռեալ էր, ոչ խորտակեցին զբարձս նորա։ Այլ մի ոմն ի զինուորացն տիգաւ խոցեաց զկողս նորա. և վաղվաղակի ել արիւն, և ջուր։ Եւ որ ետեսն, վկայեաց. և ճշմարիտ է վկայութիւն նորա. և Նա գիտէ եթէ ճշմարիտ ասէ. զի և դուք հաւատասջիք։ Այս եղև՝ զի լցցի գիրն, եթէ ոսկր նորա մի՛ փշրեսցի։ Եւ դարձեալ միւս գիր ասէ. եթէ հայեսցին ի Նա՝ յոր խոցեցինն։

Աստ ասէ կարգող. Եւ ես խաղաղութեան։ Վասն ի վերուստ։ Եւ [illegible]։
Ձայնի՝ կարգող. Սուրբ խաչիւս։ Աղօթէ. Պահպանեա.
(Տես ի 145 էն ց 147. Թիւսն):

Ձայնէ՝ քարոզեսցէ սարկաւագն
Եւ ես խաղաղութեան"։ Օրհնութիւն և փառք"։
Եւ ապա սկսանիցին՝ Խոնարհեցո և Ապրեցո։
(Տես ի Թիւն. 101):

ՄԱՂԹԱՆՔ

Օրհնեալ տէր՝ որ բնակեալդ ես։ (Տես ի Թիւն. 176):
Քարոզ և մաղթանք Հասեալքի։ (Տես ի Թիւն. 107):

Մեսեդի։

Տէր կարող և հզօր. տէր կարող ի պատերազմի։ Տեառն է երկիր լրիւ իւրով. աշխարհ՝ և ամենայն բնակիչք նորա։

ՔԱՐՈԶ

Ասասցուք։ (Տես ի թիւն 108.)։

Ազօթք՝ Լոյս ծագեաց և այլն. ցՇարականն Համբարձի. (Տես ի 110 էն ց118 թիւսն)։

Համբարձի ԱԶ։

Ընդ լուսանալ միաշաբաթին կանխեցին կանայքն ի գերեզմանն, ի խնկել զանապական մարմինն։ Եւ գտին զվէմն բարձեալ ի դրանց գերեզմանին, և լուեալ բարբառ ի հրեշտակէն, եթէ յարեաւ Քրիստոս և խափանեաց ըզմահ։

Փառք Հօր եւ». Այժմ եւ միշտ»։

Եւ հանդիպեալ քո տէր առաքելոցն, և տուեալ զողջոյն կենդանարար, առաքեցեր զնոսա ի փրկութիւն տիեզերաց։

ՔԱՐՈԶ

Վասն խաղաղութեան ամենայն աշխարհի, և հաստատութեան սրբոյ Եկեղեցւոյ զտէր աղաչեսցուք։ Ասասցուք ամենեքեան միաբանութեամբ։

Տէր ողորմեա. տէր ողորմեա. տէր ողորմեա։

ԱՂՕԹՔ

Հայր գթած՝ բարերարող՝ արարիչ ամենայն արարածոց. ընկալ զպաղատանս ծառայից քոց ի ժամ երեկոյիս. որ առատդ ես առ ամենեսեան՝ պարգևօք բարերարութեան քո։ Ողորմեա տէր ամենայն աշ-

խարհի, և Եկեղեցւոյ քում սրբոյ․ հիւանդաց՝ վշտացելոց՝ ճանապարհորդաց՝ նաւորդաց՝ խոստովանողաց՝ ապաշխարողաց՝ և հոգւոցն հանգուցելոց։ Զի դու տէր ամենակալ՝ գիտես զպէտս մեր՝ և զկարիս առաւել քան զոր խնդրեմք և իմանամք․ և քեզ ընդ Որդւոյ և ամենասրբոյ Հոգւոյդ վայելէ փառք իշխանութիւն և պատիւ․ այժմ և միշտ և յաւիտեանս․ ամէն” ։

Ալէ՜լուիա ալէ՜լուիա

Գովեա Երուսաղէմ զտէր։ (Տես ի Թիւ. 607):

Ալէլուիա օ՜րթի ։

Սրբոյ Աւետարանիս Յիսուսի Քրիստոսի՝ որ ըստ Յօհաննու ։

Գլ՝ 20. համր՝ 19 ։

Ցեա Յարութեան Տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի ։

Եւ էր երեկոյ ի միաշաբաթոջ աւուրն․ և դրունք փակեալ էին՝ ուր էին աշակերտքն ժողովեալք վասն ահին Հրէից․ եկն Յիսուս՝ և եկաց ի մէջ նոցա․ և ասէ ցնոսա՝ ողջոյն ընդ ձեզ։ Իբրև զայս ասաց՝ եցոյց նոցա զձեռսն և զկողս իւր․ և խնդացին աշակերտքն իբրև տեսին զտէր։ Ասէ ցնոսա դարձեալ․ ողջոյն ընդ ձեզ․ որպէս առաքեաց զիս Հայր իմ, և ես առաքեմ զձեզ։ Եւ զայս իբրև ասաց՝ փչեաց ի նոսա և ասէ․ առէք զՀոգի Սուրբ։ Եթէ ումեք թողուցուք զմեղս՝ թողեալ լիցի նոցա․ և եթէ զուրուք ունիցիք՝ կալեալ լիցի։ Իսկ Թովմաս մի յեր-

կոտասանիցն՝ անուանեալն երկուորեակ, ոչ էր ընդ նոսա՝ յորժամ եկն Յիսուս։ Ասէին ցնա այլ աշակերտքն. եթէ տեսաք զտէր. և նա ասէ ցնոսա. եթէ ոչ տեսից ի ձեռս նորա զնշան բևեռացն, և արկից զմատունս իմ ի տեղիս բևեռացն, և մխեցից զձեռս իմ ի կողս նորա՝ ոչ հաւատամ։

Ձայնք ժողով. Խնդրեսցուք։ Կեցո տէր՝ յոյնիս։

Ասօղէ. Թագաւոր խաղաղութեան։

Տես ի Թիւն. 114։

Եւ արշալոյսն ի խաղաղութիւն։

